Eznikii (saec. V.)

refutatio haeresia-
rum. (In fine
addita sunt eiusdem
dicta moralia).

Venedig 1826.

# ԵԶՆԿԱՅ

## Եղծ Աղանդոց




Ի ՎԵՆԵՏԻԿ

*1826*

# ԵԶՆԿԱՅ

## ԿՈՂԲԱՑԻՈՑ

## ԲԱԳՐԵՒԱՆԴԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ԵՂԾ

## Ա Ղ Ա Ն Դ Ո Ց



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲՆ ՂԱԶԱՐ

ՌՄՀԵ

# ԶԵԿՈՒՑՈՒՄՆ

Չթողացուցանէ չափ մատե-
նիս աւելի քան զկարեւորացս աղ-
դումն կանխաբանել։

Օրինակ տպագրիս ձեռագրեալ
է 'ի Թուին Հայոց ՌԻԹ. յոր
յանխորշելի վրիպակաց տառիցն՝
որ են․ ուրեք յայտնի դուշակելն՝
ուղղեալ, զկարեւորսն՝ որպէս էր
յօրինակին՝ աստղանիշ նշանօք դրոշ-
մեցաք. և զանյօդաւոր զմիահեծ
գրչագիրն տարարաք 'ի գիրս և 'ի
գլուխս։

Յաւելուածն յետոյ մատենիս,
Եգներկայ Վարդապետի Խրատք, 'ի
վարս հարանց՝ Նեղոսի սուրբ հօրն
ընծայի. այլ սա չէք 'ի յոյն բնագիրն,
Թէպէտ և մատենագրութիւնք իսկ
նորա ոչ ամենայնն անկորուստ կան։

# ԵԶՆԿԱՅ

## ՎԱՐԴԱՊԵՏԻ

## ԿՈՂԲԱՑՒՈՅ



## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

# ԵՂԾ

## ԱՂԱՆԴՈՑ ՀԵԹԱՆՈՍԱՑ

Ա. ՅՈՐԺԱՄ զանեղութենէն և զնորին զմշտնջենաւոր զօրութենէն ճառիցէ ոք, քանզի մարթնաւոր լեալ է, պարտի զմիտս յատակել և զխորհուրդս սրբել, ի յոյզս շարժմանց պարզել, զի յայն զոր առաջի եդ՝ համանել կարասցէ ։ Նա և որ ընդ ճառագայթս արեգականն հայել կամիցի, պարտի ընդ-

պղտորութիւն աչացն՝ զաղտն և ըղբիժն 'ի բաց սպառել, զի մի՛ մթարքըն՝ որ զըքօքն շողայցեն, արգել հայելոյ 'ի յստակութիւն լուսոյն լիցին ։

Եւ արդ քանզի մի էութիւնն անքնին է և անհաս բնութեամբ, առ նորա անքննութիւնն ընծայութիւն անգիտութեան մատուցանելի է, և առ էութիւն նորին զաւանութիւն գիտութեան և ոչ քննութեան ։ Զի որ էն՝ պարտի զի մշտնջենաւոր իցէ և անսկիզբն, որոյ ոչ սկիզբն յուրմէքէ առեալ ըննելոյ, և ոչ ունի զոք 'ի վեր քան զինքն, զոր պարտ իցէ նմա պատճառ կարծել կամ իմանալ՝ եթէ 'ի նմանէ իցէ առեալ սկիզբն էանալոյ ։ Զի ոչ ոք է առաջին քան զնա, և ոչ ոք է յետոյ նման նմա, և ոչ ընկեր հաւասար նորին, և ոչ էութիւն հակառակ նմա, և ոչ գոյութիւն ընդդիմակաց, և ոչ բնութիւն հիւթաքեր 'ի պէտս նորա, և ոչ նիւթ ինչ՝ յորմէ առնիցէ զոր առնելոց իցէ. այլ ինքն է

եղէ՝ իւր միայնոյ սեպհականեալ ըզ-
կենդանութիւնն . և անզօր և ապ-
կար, եթէ զանձին եւեթ խորհեցէ
զզօրութիւնն : Եւ ոչ նուազ ՚ի գի-
տութենէ, եթէ ինքեան եւեթ պա-
հեցէ զգիտութիւնն . և ոչ կարօտ
յիմաստութենէ, եթէ յորժամ այ-
լոց բաշխեցէ զիմաստութիւնն իւր,
կարծիք ինչ պակասութեան ՚ի ներ-
քըս մտանիցեն : Այլ կենդանին է
և աղբիւր կենդանութեան . տայ
ամենայնի կենդանութիւն, և ինքն
կայ լի և յանապատ կենդանու-
թեան . և զօրացուցանէ զանզօրս
մեծազօր զօրութեամբ, և ինքն ոչ
թերանայ ՚ի զօրացուցիչ զօրութե-
նէն . և պարգեւէ զգիտութիւն ա-
մենայն անգիտաց, և ինքն բաւա-
կան ունի յինքեան զամենագէտ
գիտութիւնն . և բղխէ յամենեսին
զանսպառական իմաստութիւնն, և ին-
քըն միայն անխախուտ յամենա-
հնար իմաստութեամբն :

Եթէ աղբերք մշտաբուղխք, որք
՚ի նորա հրամանէ կարկաջեցան, հա-
նապազ բղխեն և ոչ պակասեն,

եթէ 'ի բարերարն արարչէն չար ինչ չիք լեալ. և չիք ինչ չար որ բնութեամբ չար իցէ. և ոչ է արարիչ չարաց իրաց, այլ բարեաց ։

Եւ արդ զո՞ր ինչ յարարածոցն բարի կարծիցեն, կամ զո՞ր չար. զի բազում անգամ զոր բարին կարծիցեն, միայն առանձինն՝ առանց ընկերին խառնութեան՝ մնասակար լինի, յանմնեցուանց առ հասարակ մկասյեալ ։ Արեգակն թէ բարի է, և առանց օդոյ խառնուածոյ այրէ և ցամաքեցուցիչ է. Նոյնպէս և լուսին խոնաւական բնութիւն, առանց խառնուածոյ ջերմութեան արեգական, մնասակար և ապականիչ է ։ Եւ օդ, առանց ցօղոյ խառնութեան և ջերմութեան, մնասակար և ապականիչ է. և ջուրք զհող երկրի ողողանեն և ապականեն. և երկիր առանց ջուրց ապառաժի և խորխալի ։ Եւ այսպէս չորեքին բնութիւնքն, ուստի աշխարհս կազմեալ և կայ, առանձինն՝ ապականիչք են միմեանց, և խառնեալ ընդ ընկերին՝ օգտա-

կարգք և շնորհաւորք ։ Եւ զիարդ այսպ-էս է, ամենեցուն յայտնի է՝ որ կամին ուսանել ։

Ապա ուրեմն է ինչ զօրութիւն ծածուկ, որ զապականիչսն մի-մեանց խառնուածովք առնէ օգ-տակարս իրերաց ։ Եւ որ առողջ մտաց ունին, ոչ զշարժութեան՝ այլ զշարժիչն պատճառին փառաւորել ։ և ոչ ընդ արարածական, այլ ընդ վարիչն պատճառին զարմանալ ։ և ոչ ընդ զննութեան, այլ ընդ զննոցու-ցիչն ։ քանզի և նորին իսկ իւրա-քանչիւր փոփոխմանցն յայտ առ-նեն, եթէ է ոմն՝ որ փոփոխէ զնո-սա ։ Արեգակն ծագելովն և մտ-անելով և 'ի մուտս դառնալով ։ և լուսինն աճմամբ լնլով և նուա-զելով ։ և այլք եւս յարարածոցն ըստ իւրաքանչիւր բնութեանց շար-ժելովն և դադարելովն ։ Եւ արդ չէ առողջ մտաց՝ զշարժիչն և զփո-փոխիչն թողուլ, և շարժմանցն և փոփոխելեաց պաշտօն մատնել և եր-կրպագութիւն մատուցանել ։ զի որ շարժին և փոփոխին՝ չէ էական ։

այլ կամ՝ լեալ յուսմքէ և յիմքէ, և կամ՝ հաստատեալ 'ի չգոյէ։ Եւ որ էն և շինործէ զամենայն, նոքին ոչ շարժի և ոչ փոփոխի. քանզի էական է և անշարժական է։

Գ. ԵՒ զի մի էութիւն մշտընջենաւորական է և պատճառ ամենեցուն ընծելոց, այնմ՝ և որ ըղբազմաստուածեան պաշտամունքն մուծին՝ վկայեն, և պատճառեն տայպէս։ Մէք, ասեն, քանզի չեմք բաւական մերձենալ յամենեցունց պատճառն, յէն 'ի Գոյն 'ի մշտընջենաւորն և յանմատոյցն, վասն այնորիկ այլովքն խոնարհագունիւք նմա պաշտօն մատուցանեմք. և որովք նմա զպաշտօնն մատուցանեմք, հարկ է և զնոսա ողորքել զոհիւք և նուիրօք։

Եթէ որպէս վկայենն՝ մի է պատճառ ամենեցուն, և նոյն էական և մշտնջենաւոր, յայտ է թէ այլքն ոչ էականք են և ոչ մշտնջենաւորք. և զխօրզ չէականքն և չմշտնջենաւորք ընդ էականին և ընդ մշտնջենաւորին երկրպագութիւն ատնու-

ցուն ։ Եւ մանաւանդ մարմնաւորք և երեւելիք, որպէս արեգակն և լուսին և աստեղք և հուր և ջուր և երկիր, որ՚ի մոգուց և՚ի հեթանոսաց պաշտին ։

Այլա եթէ ասիցէ ոք յայտնապէսեացն ։ Բարերար է, զի մի էութիւն աստուածա ամենայնի առնէք ։ Արդ եթէ մի էութիւն է՝ որ զամենայն յամենայնի աղբեցուցանէ, և չիք ինչ նման հակառակ, մեզ զերախտաւորն և զբարերարն՝ որ՚ի նմանէ կարգեալ են՝ զհամր հրամայէք անարգել ։

Ասասցուք, եթէ զերախտաւորն և զբարերարս՝ որ՚ի նմանէ կարգեցան՝ մեք ոչ հրամայեմք անարգել ։ բայց դարձեալ և ոչ ըղձպաշտօն արարչին՝ արարածոցն մատուցանել ։ զի չիք ոք բարերար և երախտաւոր, բայց միայն որ արար և ոչ խնայեաց ։ և պահէ կենդանի զբնաւորսն անտերելութեա, և ոչ նախանձի ։ զհրեշտակաց ասեմ և զհոգւոց մարդկան, և զգայականացն անշնչից յիւրաքանչիւր կայանի ։

Արդ բարբառք է արեգականն եւ գե-ղեցիկ բնութեանք, եւ մեզ եւ ամե-նայն արարածոց՝ որ 'ի ներքոյ եր-կնից՝ յօգուտ եւ 'ի զարդարանս, իբրեւ ճրագ մի 'ի մեծի տան 'ի մէջ ձե-ղուանն եւ յատակի լուցեալ՝ առ 'ի զխաւարն եւ զստուերն զերկուց մե-ծացն անօթոց 'ի բաց 'ի միջոյ փա-րատելոյ. բայց ինքն եթէ իցէ եւ ե-թէ չիցէ՝ զայն ոչ գիտէ, զի չէ 'ի բանաւորաց եւ 'ի մտաւորաց. Նոյն-պէս եւ այլքն յանշնչոցն արարա-ծոց ։ Եւ թէ ջուր թէ հուր թէ երկիր թէ օդ, թէ իցեն եւ թէ չի-ցեն՝ զայն ոչ գիտեն, եւ զպարգեւս տրութեանն՝ յոր կարգեցան՝ ան-դադար մատուցանեն, վարելով այնոր՝ որ կազմեացն զնոսա ։ Եւ մեք ոչ անարգեմք զնոսա, եւ ոչ պաշտօն մատուցանեմք նոցա. այլ հայեցեալ ընդ նոսա՝ փառաւորեմք զկարգիչն նոցա եւ զյօրինիչ, զի մեզ 'ի պէտս են, եւ կարգչին իւ-րեանց 'ի փառս ։

Զխոնարհ պաշտօնեցեմք զարեգակն, որ մերթ կոչի հուր եւ զծառայ առ-

՚ի սպասն՝ յոր կարգեցաւ՝ հաստանելոյ, և մերթ երթայ զօղէ խղճիւ զարհուրեալ, և տայ տեղի խաւարին ընտրել զմիջոց ՚ի մեծի տանս. և ընդ ժամանակս ժամանակս ՚ի խաւարար զգաստանոյ՝ առ ՚ի յանդիմանութիւն և յամօթ խղճիցն պաշտօնէից. յայտ արարեալ եթէ չեմ ես արժանի պաշտաման ; այլ այն՝ որ զիս և զամենայն ուխտ լուսաւոր պահէ, և զգայս զօղեցուցանէ. և երբեք երբեք խաւարեցուցանէ՝ և խղճիւ խօսուն բերանով անշշունջն բողոքէ՝ եթէ չեմ արժանի պաշտօն առնլոյ այլ պաշտօն հարկանելոյ : Կամ զլուսինն՝ որ ամսոյ ամսոյ հիւծանի, գրե՛թէ և մեռանի, և ապա սկիզբն առնու կենդանանալոյ, զի քեզ զյարութեան օրինակն նկարեցէ : Կամ զօդ՝ որ մերթ դողեցէ վարագացեալ՝ հրամանաւ, և մերթ սարսէ ՚ի գոչելոյն՝ սաստիւ : Եւ կամ զհուր՝ որում և զքեզ խոկ երկրորդ արարիչ կազմեաց յօրինիչն, զի յորժամ կամիցիս՝ վառեցես, և յորժամ կամիցիս՝ խափանե-

ցանիցես ։ Կամ զերկիր՝ որ համա-
պատ բոլորեալք, և ցանկ կոխեալք, և
զարդք զմեր և զանասնոց մերոց 'ի
նմա հեղումք ։ Կամ զՋուրս՝ զոր հա-
նապազն ըմպեմք, և զանուշու-
թիւն նոցա 'ի ժամանահասութիւն
'ի փորի մերում դարձուցանեմք,
և զներքին և զարտաքին առողջու-
թիւն մեր նոքօք սրբեմք ։

Եւ այսու ամենայնիւ յայտ է՝
թէ զոր առ աստուածոն ունին,
անարգեն շատք և անպատուեն ։
Նա և զողուլն և սոսկումն ունին
զարարածն, յ․րժամ զպատիւ ա-
րարչին ոչ նոցա մատուցանիցէ ․ և
յայտ առնէ երկիր շարժելովն, և
լուսաւորքն խաւարելովն, և օդքն
զժդմելովն և քամմեկելով, և ծով
սաստկութեամբ ալեացն ապա-
ւնելօք ։ Զի թէ ոչ սատա արար-
չին նահանջէր զնոսա, մի մի 'ի նո-
ցանէն բաւական էր զամենեսեան
սատակել՝ առ 'ի խնդրելոյ զվրէժ
անարգանաց հասարակաց արար-
չին ։ Կամ ծով ծածկելով, որ
տկար աւազովն պաշարեալ՝ չելանէ

անցանել ըստ հրամանն ։ Կամ երկիր կլանելով , որ 'ի վերայ ոչընչի կայ հաստատեալ , և յոչինչ դառնալ և դարձուցանել չէ պատշաճ զիւր զբնակիչսն ։ Կամ հողմ պատըտասեցուցանելով , որ կենդանութիւնն է ամենայն շնչաւորաց , և չեշխէ արգելուլ զկենդանութիւնն՝ առանց հրամանի կենդանատուապահին ։ Կամ օդք երբեմն զատուամանիւն շնչելով , և երբեմն զխորշակն բերելով . և լինէր ամենայն ինչ ոչ ինչ ։

Այլ նա առաւելեւ երբեւ զկառաքան լծեալ 'ի չորից երիվարաց զօշախարհս տեսանեմք , 'ի ջերմութենէ 'ի ցրտութենէ 'ի ցամաքութենէ և 'ի խոնաւութենէ . և զօրութիւն իւր ծածուկ կառավար , որ զչորս կազմեցողն ընդ միմեանս 'ի հաշտութեան և 'ի հաւանութեան պահեալ նուաճէր ։ Ամենայն կառք 'ի համազգեաց երիվարաց լծին , բայց միայն այսոց կառաց՝ որ 'ի չհամազգեաց լծեալ են . և որ 'ի համազգեացն լծեալ են՝ երբեմն սայլթաքին , երբեմն օձանն և 'ի տապ-

Նաւակի ղկառաւավարին և զանձինս կա-ցուցանեն. և երբեմն խորտակումն իսկ կառայն գործեն. և յորժամ ողջ կառքն լցեն, և ողջ կառա-վարին, և վարժ երիվարքն, ուշ ե-դեալ 'ի համընդէպ երեսացն եւեթ արշաւին. և այս կառաց զարմանա-լիք 'ի հակառակ և յանձնման երի-վարաց լծեալ և ծածուկ ձեռամբ ուղղեալք, ոչ 'ի մի միայն կողմն 'ի համընդէպ երեսացն եւեթ արշաւին, այլ յամենայն կողմանս վարգէին, և ընդ հանուր արշաւին, և ընդ բնաւս սլանան, և ամենայնի բաւա-կան են: Յորժամ ընդ արեւելս ընթանան, չէ ինչ արգել՝ թէ ընդ արեւմուտս ոչ արշաւեսցին, և յոր-ժամ ընդ հիւսիսի վարգէին, չէ ինչ արգել՝ թէ ընդ հարաւ ոչ սուրաս-ցեն. զի ձեռն կառավարին բաւա-կան է յամենայն կողմանս դիմե-ցուցանել, և ընդ չորս անկիւնս տիեզերաց արշաւեցուցանել:

Դ. ԴԱՐՁԵԱԼ առ այսպիսի ճշմարիտ աստուածս անպատշաճ հարցուածս մատուցանեն. ուստի

իսկ ընտու են , սաստեն , այդպիսի ան-
հարթութիւնք . զի թէ Աստուած
բարեաց արարիչ է և ոչ չարաց ի-
րաց , ուստի՞ է խաւար , ուստի՞ են
չարիք , ուստի՞ են աշխատութիւնք ,
ուստի՞ են ըկանք՝ մերթ 'ի ցրտոյ
մերթ 'ի խորշակէ : Կամ ուստի՞ են
անզգամութիւնք , զի տեսանեմք
երկուս այրս միազգիս ընդ միմեանս
զրգռեալ , միմեանց մահու և ա-
րեան ծարաւի են : Եւ այլք զգե-
րեզմանս կրկնեն , և զթաղեալ մեռ-
եալս ընդ հողոյն մերկացեալ խայ-
տառակեալ՝ արեւու ցուցանեն .
և զմեծարեալ զդին , առ փութի
չծածկելոյ , թերեւս և շանց եւս
կուր արկանեն : Եւ է երբեք զի
մին փախուցեալ երթայցէ անձնա-
պուր ուրեք զկեանս անձինն շա-
հել , և միւսն ցասմամբ բորբոքեալ՝
սրով զկնի ընթացեալ , ոչ դադարէ՝
մինչեւ յագեցուցանէ զպատուհասն .
ուստի՞ է այն անյագ ցասումնն : Եւ
այն մերկանայ զհանդերձս ընկե-
րին , և թէ ընդդէմ դառնայցէ
յարձակէ եւս արկանէ : Եւ ուրումն

՚ի մտի եդեալ գողանալ զայլոց ա-
մուսնութիւն, և ելեալ անօրէ-
նութեամբ յօտար մահիճս, չառայ
լինել հայր որդւոց այնմ՝ որ օրինօքն
ամուսնացեալ իցէ ։ Եւ երբէք եր-
բէք պատերազմունք շարժին, ուր
մեղաւոր և արդար առ հասարակ
կոտորին, և մահք տարաժամք և
ախտք չարաչարք ։ Եւ զի՞ պիտոյ
է մեզ ընդ մի ըստ միոջէ թուել,
այլ համառօտ իսկ ասել՝ թէ ու-
ստի՞ է այս ամենայն, և ո՞վ է սկիզբն
և գործիչ այնպիսի անպատեհից,
բայց եթէ իցէ ինչ չար զօրութիւն՝
որ զայն ամենայն անհարթութիւնս
տայցէ գործել, և ինքն իսկ արա-
րիչ իցէ նոցա. զի զԱստուած ա-
րարիչ ասել այնպիսի իրաց անպատ-
շաճ է. և ոչ ՚ի նմանէ ունել զգո-
յութիւն չարեաց ։ Ձիա՞րդ մարթ
է զայնպիսիսն յԱստուծոյ կար-
ծել. զի Աստուած բարերար է և
լաւութեանց արարիչ, և ՚ի չարու-
թեանց ինչ ՚ի նա ոչ մերձենայ, և
ոչ խնդայ ընդ այն ախորժէ, այլ
և խոտէ եւս զգործսն և զգործե-

լեա․ զի անընտանի են չարիք 'ի բնութենէ նորա ։

Վասն որոյ կարծիս՝ թէ էր ինչ ընդդէմ նմա, որում հիւղն անուն էր՝ որ է նիւթ, և սոսկ զամենայն արարածս արար և զատոյց ամենարուեստն իմաստութեամբ, և զայրզեղեաց վայելչութեամբ. և յայնմ նիւթոյ պատրաստ է կարծել զչարիս, որ անձիրան և անկերպարան էր և խառնն'ի խուռն օժանդակ երթեւեկէր, և կարօտէր Աստուծոյ արուեստագիտութեանն ։ Եւ Աստուած ոչ եթող զնա հանապազ խառն'ի խուռն վարել, այլ եհան յառնել զարարածս, և 'ի յօրութեանցն նորա յաղթուագոյնն զատուցանել կամեցաւ. և այնչափ ինչ արար 'ի նմանէ՝ որչափ Աստուծոյ վայելչէր առնել զարարածս. և որ ինչ մնացախառն էր 'ի նմանէ, և չէր պատշաճ արարչութեանն, զայն եթող. և յայնմ մրրոյ են չարիքս մարդկան ։

Ե․ ՊԱՏԱՍԽԱՆԻ․ արդարեւ իսկ չարիքն որ լինին՝ 'ի տարրակա-

Զի ուր երկու որք 'ի միասին ի-
ցեն, հարկ է թէ լիցի ինչ՝ որ զա-
տանիցէ 'ի միջի։ Արդ զիարդ հա-
մարիցին զԱստուած. իբրեւ 'ի տեղ-
ւոջ ինչ յամենայնի 'ի հիւղին լինել,
եթէ 'ի միում ինչ 'ի մասին նորա։
Եթէ զամենայն զԱստուած յա-
մենայնի 'ի հիւղին լինել ասիցեն, որ-
չափ մեծ եւս ասիցեն զԱստուած,
զատանի հիւղն մեծ քան զնա։ Քանզի
զի յորում լիցի որ, այն յորում
էն, քան զայն որ 'ի նմա էն՝ մեծ
զատանի, զի բաւական եղեւ տանել
բոլոր զնա. եւ եթէ 'ի մասն ինչ մի-
այն 'ի նմանէ, եւ այնպէս բիւրապատ-
տիկ իսկ մեծ քան զնա հիւղն զատա-
նի, զի սակաւ ինչ մասն նորա բա-
ւական եղեւ ընդունել զամենայն
զնա։ Եւ եթէ ոչ 'ի նմա, եւ ոչ 'ի
մասին ինչ նորա, յայտ է՝ թէ այլ
ինչ էր անջրպետ ընդ մէջ երկոցուն,
մեծ քան զերկոսին. եւ ոչ միայն եր-
կու անսկզբնականք զատանին, այլ
երեք. Աստուած, եւ հիւղն, եւ ան-
ջրպետն, եւ մանաւանդ մեծ եւս
անջրպետն քան զերկոսին։

Իսկ եթէ էր երբէք հիւղն ան-
զարդ և անարգ և անկերպարան ,
և զարդարեաց զնա Աստուած ,
քանզի 'ի յատութեանցն նորա 'ի
լաւն դարձուցանել կամեցաւ , ա-
պա ուրեմն էր երբեմն՝ զի յան-
զարդս և յանարգս և յանկերպա-
րանս էր Աստուած , և հարկ էր
թէ լինելու զհիւղն իսկ և նա խառն
'ի խառն վարէր :

Եւ թէ յամենայն 'ի հիւղն՝ որ-
պէս ասենն՝ էր Աստուած , յոր-
ժամ զնա 'ի զարդ և 'ի յարդ և 'ի
կերպարանս ածէր , ինքն յո՞ր մար-
թէր ամփոփել , զի չէր ուրեք մարթ
ամփոփելոյ : Մի՛ թէ և զի՞նքն ընդ
հիւղին 'ի զարդս 'ի յարդս և 'ի
կերպարանս ածէր , քանզի չգոյր
ուրեք տեղի ամփոփելոյ . որ յետ-
նոյ ամպարշտութեանն է :

Ապա թէ ասիցեն՝ թէ հիւղն 'ի
յԱստուած էր , լաւ նմին օրինա-
կի պարտ էր խնդրել՝ որպէս զա՟մ
ինչ * 'ի նմանէ , որպէս զանասունս

* զամինչ :

'ի մէջ օդոյ՝ որք 'ի Նմա են և զատուցեալք 'ի Նմանէ, Թէ իբրեւ 'ի տեղւոջ որպէս և ջուրք յերկրի ։

Եւ զհիւղեայն ասեն՝ Թէ անձեւ է և անզարդ և անարդ և չար էր. եԹէ ըստ Նոցա մտացն իցէ, ապա չարեաց տեղի էր Աստուած. զի անհեդեդքն և անզարդքն 'ի Նմա էին. որ անհնարին անօրէնութիւն է, կարծել զԱստուծոյ Թէ երբեմն ասպնջական չարեաց էր, և ապա արարիչ չարեաց. Նա և բաժանելի եւս՝ Թէ 'ի Նմա իբրեւ 'ի տեղւոջ էր ։

Զ. ԱՐԴ հարկ է 'ի պատճառս չարեացն գալ, և ցուցանել՝ Թէ ուստի՞ լինին չարիքն, և չէ պատճառ չարեաց Աստուած՝ այնու զի առ ընԹեր Նմա զհիւղն գնեն ։

Եւ արդ զո՞ր հիւղ առ ձեռն գնիցեն Աստուծոյ. ո՞չ ապաքէն զայն՝ ուստի զաշխարհս արար. որ անկերպարանն և անզարդ և անարդ էր ։ Զի տեսանեմք զաշխարհս 'ի այսպէս կերպարանեալ և 'ի զարդս և 'ի յարդս. ապա ուրեմն կերպարանաց և զարդուց և արդուց ա-

բարիչ է՝ Աստուած, և ոչ բնութեանց: Իսկ եթէ արարչի այն գործ է՝ զբնութիւնս առնել, և ոչ միայն արդս և զարդս և կերպարանս, յայտ է եթէ աւելորդ է կարծել՝ թէ 'ի նիւթոյ ինչ իմեքէ յընթերակացէ արար Աստուած զաշխարհս, այլ յոչընչէ և 'ի չգոյէ: Նա և զմարդիկ տեսանեմք, զի 'ի չգոյէ առնեն ինչ. որպէս շինօղք ոչ 'ի քաղաքաց քաղաքս առնեն, և ոչ 'ի տաճարաց տաճարս: Նոքա քանզի ամենեքին յոչընչէ չկարեն ինչ առնել, քարինքն՝ զոր 'ի շինածսըն յօրինեն՝ ոչ եւս քարինք կոչին, այլ կամ քաղաքք կամ տաճարք. զի ոչ եթէ բնութեան գործ է քաղաքս կամ տաճարս, այլ արուեստին է՝ որ 'ի բնութեանն: Եւ արուեստն ոչ եթէ յընթերակացէ ինչ իմեքէ՝ որ 'ի բնութիւնսն իցէ՝ առնու զարուեստագիտութիւնն, այլ 'ի դիպացն որ դիպին 'ի բնութեանցըն: Քանզի ոչ եթէ անձնաւոր ինչ յանձնաւորաց զարուեստն կարէ ցուցանել, այլ 'ի դիպացն որք

գիտելեացն · որպէս 'ի զարգանութեանց
դարբինն, և 'ի հիւանդութեանց հիւա-
նդին: Զի մարդ և յառաջագոյն
քան զարուեստն է · բայց արուեստա-
ւորն չէ՝ եթէ ոչ նախ մարդն իցէ ·
ուստի զարուեստն յոչընչէ 'ի մար-
դիկ պատուաստեալ հարկ է ասել:
Եւ եթէ առ մարդկան այսպէս,
որչափ ևս առաւել պատշաճ իցէ
զԱստուծոյ խմանալ՝ թէ ոչ միայն
արգուց և զարդուց և կերպարա-
նաց արարիչ է, այլ յոչընչէ առնել
բաւական է բնութիւնս, և ոչ առ-
գասխ նիւթ՝ յորմէ Աստուած ըն-
տրեաց զբարին 'ի մի թեր, և զչարն
մրրախառն 'ի միւս կողմն, ուստի ջա-
նայ մրրախառն զպատակն պղտորել:

Է · ՁԱՐԻՔՍ որ լինին ուստի՞
իցեն:

Հարցցուք և մեք · չարիքն որք
լինին անձինք խնչ իցեն, թէ ար-
գասիք անձանց:

Ասեն · 'ի դէպ է կարծել՝ եթէ
արգասիք անձանց:

Եւ հիւղն, զոր ասեն անսարգա-
սաւոր և անկերպարան, զիարդ

անզարդաստաւորն և անկերպարանն՝ յայլս կարէր արգելանս ծնուցանելոյ, եթէ ոչ 'ի դիպացն լինիցին չարիքն, և ոչ 'ի նմանէ ։ Զի աղքատութիւնն չէ անձն ինչ, և ոչ չնութիւնն անձն ինչ է, և ոչ դարձեալ այլքն մի ըստ միոջէ 'ի չարեացն ․ այլ որպէս 'ի դադրութենէն դալիր կոչի, և 'ի ճարտարութենէ ճարտար, և 'ի բժշկութենէ բժիշկ, և այն ոչ եթէ անձինք ինչ են, այլ յիրաց անտի առնուն զանուանս, նոյնպէս և չարիքն 'ի դիպացն առնուն զանուանումն ։

Այս եթէ և զայլ ոք իմանայցէն դրդիչ և դրդուիչ՝ որ արկանիցէ 'ի միտս մարդկան զչարիսն, և նա 'ի գործոյն՝ զոր գործէ՝ առնու զանուն չարութեան ։ Բայց զայն պարտ է գիտել, թէ զոր գործէ ինչ ոք՝ ոչ ինքն նոյն է ․ որպէս բրուտն յորժամ անօթս գործիցէ՝ ոչ ինքն անօթ լինի, այլ գործիչ է անօթոցն, ուստի և զանուանումն առաւելական առնու ․ նոյնպէս և չարագործն 'ի չարին գործելոյ առնու-

դարձոյց ՚ի զօրս. և ՚ի կերպարանս, յիրաւի կոչի արարիչ ։

Այդ այնմ նման է, յորժամ ՚ի քարանց որք չինուածս ածանիցէ՝ պատուչաճելոյն և յօրինելոյն միայն արարիչ է, և ոչ բնութեանն ։ Եւ արդ յի՞նչ ինչ արդեօք արար Աս տուած զանկերպարանն. ՚ի բնու ինչ թէ ՚ի յոչէ ։ Եթէ ասիցեն՝ եթէ ՚ի լոյս, զչարիսն՝ որ լինին՝ պատճառին խնդրել, թէ ուստի լինին ։ Ուրեմն արգասիքն ոչ նոյնպիսի մը նացին՝ որպէս և էինն, այլ զի ՚ի լուն դարձեալ՝ լուսաբերութեան երևե ցին ։ Ապա եթէ ՚ի յոչէ ինչ դար ձան, իշխեսցե՞ն ասել՝ թէ չարեացն պատճառ Աստուած է, զի նա զոր դասին ՚ի լոյս անդր դարձոյց ։

Այլ ասեն՝ թէ կյատակն ՚ի մի կազմն ընտրեաց, ուստի զարա րածսն արար, և զմրրախառնն է թող ։

Ասասցուք. որպէս զի թէ կա րող էր և զայն յատակել և զչա րիսն ՚ի միջոյ բառնալ, և ոչ կամե ցաւ զայն ՚ի միջոյ բառնալ, ապա

պատճառս չարեացն պարտ է զնա սպանել. զի 'ի կիսոյն նորա արար բարի արարուածս, և զկէսն նորա եթող նոյնպիսի՝ յապականութիւն լինելոյ բարւոք արարածոցն: Եւ եթէ ճշմարտիւ ոք քննիցէ զիրան՝ գտանէ յանհնարին վտանգս եկեալ զհիւղն քան զառաջին անկարգութիւնն, զի նախ քան զընտրելն և զզգալն զվտանգսն չարեաց՝ յապահովի և յանհոգութեան կայր. և արդ յառնելոյ զազդմունս չարեացն՝ 'ի տագնապի և 'ի տարակուսի կայ: Եւ թէ կամիս՝ 'ի մարդոյ իսկ առօրինակ. զի նախ քան զպատկերանալն և լինել կենդանի, անմասն էր 'ի չարեաց. և յորժամ գայ 'ի չափ հասակի մարդոյ, յայնժամ միտք 'ի չարիս յիւրմէ անձնիշխանութենէ: Նոյնպէս և 'ի բարերարութենէն, զոր ասեն յԱստուծոյ եղեալ հիւղեայն, պատճառ՝ զի 'ի յոռութիւնս եկն:

Ապա եթէ 'ի չկարելոյ Աստուծոյ բառնալ զչարիսն՝ եթող նոյնպիսիս, այնու տկարութիւն ածեն

զԱստուծով՝ կամ թէ բնութեամբ տկար իցէ, կամ թէ առ երկիւղի յաղթեցաւ յայլմէ զօրագունէ քան զնա ։ Եթէ յաղթեալ կայ կածանօք 'ի մեծագունէ քան զնա ասիցեն, հարկ է թէ զչարիսն բըռնադատիչս կամաց նորա գնեն ։ Եւ ընդէ՞ր ըստ նոցա բանիցն չարիքն ոչ լինէին աստուածք, որ Աստուծոյն յաղթել կարէին ։

Ը. ԴԱՄՁԵԱՆ հարցցուք ըզհիւղայն ․ պա՞րզ ինչ բնութիւն իցէ, եթէ յօդուածով ․ զի ազգի ազգի գործուածք իրացն յայսպիսի քննութիւնս ածեն զմեզ ։ Զի եթէ պարզ բնութիւն էր հիւղն, և մենակերպ, և աշխարհս 'ի յօդուածոց և 'ի պէսպէս բնութեանց և 'ի խառնուածոց հաստատեալ է, անհնարին է ասել՝ եթէ հիւղեայն լեալ իցէ ։ Վասն զի չէ մարթ յօդուածոյիցն 'ի միոջէ պարզ բնութենէ ունել զհաստատութիւնն ․ քանզի յօդուածոյքն 'ի պարզական բնութեանցն յօդին ։

Եւ եթէ 'ի պարզական բնու-

Թեանցն յօդեցաւ, ապա էր ժամանակ՝ յորժամ հիւղն իսկ չէր 'ի միջի, զի 'ի պատրաստականացն յօդելոյ եղեւ հիւղն. ուստի լեալ իսկ երեւի հիւղն, և ոչ անարար: Զի եթէ յօդուածով էր հիւղն, և յօդուածոյքն 'ի պատրաստականացն ունէին զանձնաւորութիւն, ապա էր երբեք՝ զի չէր իսկ հիւղն, մինչ չեւ պատրաստականացն 'ի միմեանս յարեալ էր. և եթէ էր ժամանակ՝ յորժամ զի հիւղն չէր, ապա չգոյր ժամանակ յորում չէր անարար: Զի եթէ Աստուած անարար էր, և պատրաստականքն եւս անարարք ուստի հիւղն յօդեցաւ, յայտ է թէ չէին երկոքին միայն անարարք, այլ հինգ:

Եւ արդ ասեցուք, հաւանի՞ք ինչ ընդ մի՛միանս կէին բնութիւնքն, ուստի հիւղն յօդեցաւ, թէ հակառակք իրերաց. Նա առաւել ասանեմք զընութիւնսն միմեանց հակառակս. քանզի ընդդիմակաց է հրոյ ջուր, և լուսոյ խաւար, և ցրտոյ ջերմ, և ցամաքի խոնաւ: Եւ ինքեա՞ն ինչ հակառակ և մեա-

տակայր չէ, բայց ընկերին. և անտի յայտ է՝ թէ չեն 'ի միոջէ նիւթոյ, և ոչ մի նիւթն 'ի չորից հակառակորդաց: Այլ եթէ մինչ էր նիւթն՝ ոչ եթէ ինքեան հակառակ էր, այլ ընկերին. որպէս սպիտակ թխոյ, և քաղցր դառնին:

Թ. ԵՒ արդ զհիւլէային խնդիր թողեալ՝ զոր նիւթն ամենայնի կոչեն, 'ի չարեացն խնդիր եկեսցուք՝ զոր 'ի նմանէն իմանան: Զի յորժամ չարիքն յայս լինիցին՝ թէ չեն անձնաւորք, անտի և հիւղն յանդիմանի՝ թէ ոչ էր երբէք, և ոչ բնութիւն անձնաւոր:

Այլ զմարդկան իսկ չարեաց հարցցուք. արդարև՞ք անձանց իցեն, և եթէ անձինք ինչ չարիքն. զի որ ինչ 'ի մարմինս և 'ի հոգիս շարժմունք խաղան, ոչ մարթի ասել՝ թէ այն մարդ իցէ, այլ կամական շարժմունք. զի մարդն անձնաւոր է, և բարիքն չանձնաւորք, որպէս ապականութիւն կամ շնութիւն՝ որ 'ի բարուցն գործեցին:

Այլ եթէ այնք՝ արարածք ինչ

անձնաւորք իցեն, հարկ է և ըղ-
պատճառն որ զնեն՝ արարած
անձնաւոր կարծել. զի որոյ մասն
ինչ արարած է, յայտ է եթէ նա
ամենևին իսկ արարած է. և որոյ
մասնն չէ արարած, նա ընաւ իսկ
չէ արարած: Ապա ուրեմն էր եր-
բեք՝ զի ընաւ չէր ամենևին ինչ
արարիչ բովանդակ, մինչ չև Աս-
տուծոյ զմարդն արարեալ էր, ուս-
տի չարիքն լինին: Քանզի մասանց
չարեաց պատահի մարդն արարիչ,
ապա յայտ է թէ և բովանդակ
իսկ չարեացն արարիչ Աստուած է,
զոր ամենևին մի՛ երբեք լիցի ասել՝
թէ Աստուած չարեաց պատճառ
իցէ, այլ այն որ իւրով կամօք ըղ-
գործ չարեացն գործիցէ. և յում-
մէ չարն գործի՝ յիւրումն նմին և ա-
նուն չարութեան զնի, որպէս և
յառաջագոյն իսկ ասացաք:

Ժ. ԵԻ արդ եկեսցուք յիրացն
իսկ 'ի քննին, զի յորժամ ճշգրի-
տութիւնք լինիցին՝ դիւրաւ ըզ-
յայտնութիւն ճառիցն յանդիման
կացուցանիցեն:

Արդ զԱստուած բարի՞ և բարերա՞ր ասիցեն ։ Հարկ է թէ բարի և բարերար ասեն, և չարութիւն ինչ 'ի նա ոչ մերձենայ ։ Եւ եթէ այն այնպէս իցէ ։ Նախ զչնութենէ և զպոռնկութենէ հարցցուք, և ապա զայլոցն նոյնպիսեաց ։ Եթէ Աստուծոյ կամօք գործէին այնպիսի չարիք, ընդէ՞ր 'ի գործելեաց չարեացն վրէժս պահանջէ. այլ այնու զի ըստ չարեաց գործոցն վրէժս պահանջիցէ՝ յայտ է եթէ ոչ ախորժէ զչարիսն, այլ ատեայ, և պատիժս պատուհասից 'ի վերայ գործելեացն ածէ. որոց, ըստ իւրեանց անմտութեան, խրատք նորա՝ չարութիւնք կարծին. որպէս և այժմ սպանողք յորժամ 'ի պատիժս մատնեն՝ ոչ բարերարս ըզպատժածուսն կոչեն, այլ չարարարս. քանզի այնպիսի բարք են չարագործաց՝ զիրաւունսն անիրաւութիւն ասել ։ Բայց մեզ մի՛ լիցի այնպիսի ինչ ասել. այլ զչարիսն ոչ անձնաւորս կարծել, այլ կամածինս ։

Ապաքէն՝ պատանկութիւն և շնութիւն՝ 'ի մերձենալոյ 'ի միմեանս ատուն և կնող լինելն. եթէ յիւր կին ոք օրինօք ամուսնացեալ մերձենայցէ վասն որդէծնութեան և զաւակի սերելոյ, բարիոք է մերձաւորութիւնն. ապա եթէ ուրուք թողեալ զիւր կին, զայլոյ ամուսնութիւնն թշնամանիցէ, գործ չարութեան գործէ: Եւ թէպէտ մերձաւորութիւնն նոյն է, և օրինակ մերձաւորութեանն ոչ նոյնակիցի. քանզի մին բուն հայր լինի որդւոց, և միւսն գողունի: Նոյն բանք են և վասն պատանկութեան. եթէ վասն որդէծնութեան ոք մերձենայցէ յիւր կին, յիրաւի է. ապա եթէ առ ցանկութեան օտար մարմնոց ցանկանայցէ, կարի իսկ անիրաւութիւն: Եւ յայտ է՝ թէ խելքն չարք յայնժամ լինին, յորժամ պէտքն օրինօք ոչ վճարեսցին:

Նա և զսպանութենէ նոյն բանք են. յորժամ զմերունեալն 'ի շնութեան ոք սպանանիցէ, պատուհաս 'ի վերայ ածեալ վասն յանդգնու-

թեանն, չառնէ չար ինչ։ Այլա ե-
թէ զանմեղն ոք, որոյ ոչ ինչ 'ի վճռականացն գործեալ իցէ՝ սպանանիցէ, կամ վասն ինչս զերծանելոյ, կամ վասն առացուածս հատանելոյ, չարութիւն գործէ. և գործն նոյն է երկոցունց, բայց օրինակն ոչ նոյնպիսի։

Նա և յինչս առնուլ նոյն բանք են. որ պարգեւ 'ի տեառնէ կամ ձեր 'ի բարեկամէ առնուցու, ոչ ինչ չարութիւն գործէ. իսկ որ բռնաբար յանաւագէն հանիցէ, չարութիւն գործէ. և առնուլն երկոցուն նոյն է, բայց օրինակ առնլոյն ոչ նոյնպիսի։

Նոյնպէս և աստուածպաշտութեան յօրինակէ անտի ցուցանի չարութիւնն. եթէ զճշմարիտն Աստուած ոք պաշտիցէ, գործ առնուական գործէ. այլա եթէ թողեալ զճշմարիտն, քարանց և փայտից՝ որպէս թէ Աստուծոյ՝ պաշտօն մատուցանիցէ, անհնարին վընաս գործէ. զի զօրինակ պատուոյն յանպատեհ իւր դարձոյց։ Եթէ

պատկեր որք գործիցեն, և ոչ միայն անձնոյ անիրաւելոյն՝ որ մնաջուածք յաչացն վրիպեցաւ, կամ միայն զծաղրութիւն ցուցանելոյ, այլ 'ի պաշտօն առեալ երկիր պագանիցէ իբր Աստուծոյ, գործ չարութեան գործէ :

Եւ այսպէս կազմածոյ իրաց ինչ եւս՝ մինչ գործովն գործեն զչարն, որպէս և երկաթ մերթ 'ի բարիս պաշտի, և մերթ 'ի չար . զի եթէ խոփ և գերանդի և մանգաղ որք գործիցէ, 'ի բարւոք իրս պաշտեցաւ . ապա եթէ սուսեր և գեղարդն և աղեղ, և այլ ինչ զէն՝ որ վնասակար մարդկան է, գործ չարութեան գործէ . և պատճառ չարութեանն գործելոյն, և ոչ երկաթն :

ԺԱ. ԻՍԿ մարդիկ, ասեն, յանձանց ինչ ունիցին զայնպիսի շարժմունս, թէ յԱստուծոյ լեալ իցեն, կամ թէ այլ ոք իցէ՝ որ զայն 'ի մարդիկ արկանիցէ :

ՑԱստուծոյ մարդկան այսպիսի ինչ լինել՝ չթուի պատշաճ ասել,

այլ ունել անձնիշխանութիւն և ազատութիւն առաւելոյ մարդոյն եղելոյ յԱստուծոյ, և 'ի նմանէն զնոյն իւրոց պայազատացն ժառանգել։ Եւ արդ առեալ զանձնիշխանութիւնն, ոչ կամի՝ ծառայանալ, որ մեծ շնորհն պարգևեալ է նմա յԱստուծոյ. քանզի այլն ամենայն 'ի հարկէ ծառայէ աստուածական հրամանին. եթէ զերկնից ասիցես, կայ հաստատեալ, և ոչ շարժի 'ի սահմանելոյ նմա ուղւոյն. և եթէ զարեգականն կամիցիս ասել, սակայն և նա կատարէ զդըրուցեալ նմա զշարժումն, և չիշխէ խոտորիլ յընթացիցն՝ այլ 'ի հարկէ ծառայէ աստուածական հրամանին։ Նոյնպէս և զերկիր ասելմացեալ անսասանելիք, և բարձեալ բերէ զհրամանն հրամանատուին. և զայլսն ամենայն համաձայնապէս ծառայեցեալս հրամանաց արարչին, և չիշխեն այլ ինչ քան զայն՝ յոր կարգեցանն՝ գործել. վասն որոյ զամենեքին զնոսա՝ յաղագս զսահմանս հրամանացն պահելոյ։

Բայց մարդոյ առնել զանձնիշխանութիւն, ուր կամի՝ ծառայանայ. ոչ 'ի հարկէ բնութեան բռնադատել, ոչ 'ի զօրութեննէն՝ որ նմա վասն լաւութեանց շնորհեցաւ՝ կասել, այլ 'ի հնազանդութենէ միայն շահի զօգուտն, և յանհնազանդութենէ զվնաս. և զայն ոչ եթէ առ եղեռանէ ինչ լեալ ասեմք մարդոյն, այլ վասն լաւութեանց: Զի եթէ իբրեւ զմի ինչ յայլոցն բնութեանց լեալ էր՝ զոր 'ի հարկէն ծառայեն Աստուծոյ, ապա և վարձս ըստ կամակարութեանն առնլոյ չէր արժանի, այլ իբրեւ գործի մի էր արարչին, զոր թէպէտ 'ի չար վարէր և թէպէտ 'ի բարի, ոչ պարսաւանք ինչ էին նմա և ոչ գովութիւնք, այլ պատճառ այն էր՝ որ զնա այնպէսն վարէր. նա և ոչ զլաւ ինչ գիտէր այնուհետև մարդն, քանզի չէր հմուտ այլ իմիք, բայց այնմ եւեթ՝ յոր պատշաճեալն էր: Այլ Աստուած այնպէս պատուել զմարդն կամեցաւ, զի առ լաւութեանցն

խելամտաւ լինելոյ՝ զանձնիշխա-
նութիւնն պարգեւեաց նմա, ո-
րով կարող իցէ առնել զինչ և
կամեսցի, և զանձնիշխանութիւնն
նորա ՚ի լաւն խրատէ գործածուցա-
նել ։

Որպէս հայր ոք յորժամ զորդի
իւր խրատիցէ՝ որ կարող իցէ ու-
սումն ինչ ուսանելոյ, չծուլալ յուս-
մանէն՝ այլ յառաջադէմ լինել
՚ի լաւն սովորէ. վասն զի գիտէ՝ և-
թէ կարող է յառաջադէմ լինել,
պահանջէ զուսումն՝ յոր աւան-
դեցաւ ։ Նոյնպէս և զԱստուծոյ
պարտ է իմանալ՝ եթէ յօժարե-
ցուցանէ զմարդն առնել հրաման-
նաց նորա. բայց զկամաւոր իշխա-
նութիւնն ոչ հանէ ՚ի նմանէ, ո-
րով կարողն է առնել և չառնել
հրամանացն. այլ խրատէ և յօժա-
րեցուցանէ զմարդն, զի լաւու-
թեանցն ցանկացող լիցի, որովք
արժանաւոր մեծաց պարգեւաց լի-
նիցի, եթէ անսայցէ Աստուծոյ.
այլ զի և չանսալոյն իշխանութիւն
տանիցի. քանզի ոչ եթէ վայրապար

ինչ կամէր Աստուած զայնպիսի պատրաստել տալ, որ յաւիտենական-անեղծութիւնն է. զի վայրապար իսկ էր այնպիսոյն տալ՝ որ ոչ ունէր իշխանութիւն երկոցունց, անտալոյ այնմ՝ զոր Աստուածն կամէր, և չտալոյ այնմ՝ զոր նոյն չախորժէր: Բայց իրաւամբք այն է, յորժամ արժանի ըստ որոց գործեացն ոք ինչ առնուցու:

Եւ արդ զիա՞րդ երևելէր ընտրութիւն գործոցն, եթէ ոչ ունէր մարդն իշխանութիւն երկոցունց, և անսալոյն և չանսալոյն: Եւ արդ յայտ է թէ անձնիշխան եղև մարդն՝ առնել զբարի և ժուժել՚ի չարոյոյ ոչ. եթէ չար ինչ առաջի կայր՝ յոր ժուժել, այլ այն եւեթ առաջի կայր՝ կամ անսալ Աստուծոյ կամ չանսալ, և զնոյն եւեթ պատճառաչարին իմանալ: Քանզի լեալ մարդն առաջին՝ առնոյր պատուէր յԱստուծոյ, և չհնազանդեալ աստուածական հրամանին՝ մտանէր ՚ի չարիս, և անտի լինէր ընկճղէն չարեաց:

Ուստի ոչ ոք կարէ անձնիշխան լինել* և անձնաւոր պէտսն ցուցանել. և զարդարեալ ոչ յարմարիչէն, այլ յան_սաստատութենէ զինելեալ առաւնգա_նողին, և յուրոյք վարդապետու_թենէ դրդեալ. զի ոչ եթէ այնպի_սի լինէ հաստատուեալ բնութեամբ զմարդն ցուցանել կարէ ոք ։ Եթէ այնպիսի լինէ բնութիւն մարդոյն առնեալ էր, ապա ոչ 'ի բնութենէ արարածոյ և յաստուածեղէն զօր_րոց նման վարդապետութիւն ըն_ծայանեալք. որպէս առնէ ուրեք աս_տուածական բարբառն, եթէ 'ի մանկութենէ մարդկէ 'ի խնամս չա_րի մտեալ են. զի ցուցէ թէ որ միտքն՝ կամօք միտի, և ոչ ուրուք բնութեամբ ։

Արդ անստաստութիւն եւեթ՝ որ արարածոց Աստուծոյ կամացն զօր_ծիցի՝ պատճառ չարեաց խնամոցի է. և նմին զայլ ոք վարդապետ ծա_ծուկ հաշուել, դրդէ և ոչ բռնա_դատէ, որ զմարդն 'ի լաւու_

* անկախական ։

թեանցն մերկանալ կամեցաւ։ Ապա եթէ զպատճառն եւս կամիցիս խնդրել, զնախանձն՝ որ առ մարդն եղեւ՝ իմասցիս զպատճառն։ Եւ եթէ զնախանձուէն եւս ճըշդիւք քննիցես՝ թէ ուստի եղեւ, ասասցուք՝ եթէ յառաւելութենէ զմարդն պատուելոյ. քանզի միայն մարդ ըստ պատկերի և ըստ նմանութեան Աստուծոյ եղեւ։ Իսկ եթէ այնու զԱստուած պատճառ չարեաց կամիցիս առնել, անկանիս յիմաստնարար խորհրդոյ։ Եթէ զնորա ինչ համեալ էր, և մարդոյն շնորհեալ, թերեւս յիրաւի պատճառ չարեաց կարծէր ուրուիչն. Ապա եթէ զնա նոյնպէս որպէս եղեւն պահեաց, և զմարդն այսպէս կամեցաւ առնել, պատճառ չարեաց նախանձորդն է։ Քանզի ոչ եթէ յորժամ լիցին ուրուք երկու ծառայք, և զմինն 'ի ծառայութեան ունիցի, և զմիւսն յորդեգիրս գրեցէ, և միոյն յարուցեալ 'ի վերայ զմիւսն սպանանիցէ, մի՛ թէ պատճառ չարեաց զտէրն պարտ է

ցէ իմանալ, որ ոչ եհան ինչ 'ի ծառայէն և շնորհեաց միայն ։

ԺԲ. ԱՐԴ և զայն եւս հարցանեն. եթէ չար ինչ չկայր առաջին, ուստի՞ օձն՝ զոր սատանայ կոչեք՝ իմացաւ զհանգամանս չարին ։

Ասեմք, եթէ սատանայ չար զստուգաբանելն մարդոյն Աստուծոյ իմացաւ, վասն որոյ զմարդն յայն յօժարեցոյց ։ Որպէս յորժամ իցէ ոք ուրուք թշնամի, և թագուցեալ զթշնամութիւնն՝ դաղտ կամիցի վնասել, և չցուցանիցէ զհանգամանս վնասակարութեանն, և շուրջ եկեալ յածիցի հնարս խնդրել. ապա գտեալ ժամանակ՝ յորժամ ոք 'ի բժշկաց թշնամւոյն նորա պատուէր տայցէ յայս ինչ չհայել, և յայս նոյն կերակրոց չճաշակել, ուրով առողջութեանն կարիցէ հասանել, և նորա լուեալ՝ վաղվաղակի 'ի կեղծիս բարեկամութեան կեղծաւորեալ՝ զբժիշկն սպառնալիցէ, և զօգտակարսն նմա վնասակարս թելադրեալ կարծեցուցանիցէ, և հակառակ պատուէրս հրամանաց

բժշկին տայցէ, և այնու առնիցէ նմա վնաս. որ ոչ եթէ յառաջագոյն գիտէր զհանգամանս վնասակարութեանն, այլ՝ ՚ի պատուիրելոյ բժշկին գտեալ հնարս՝ եղև վնասակար: Նոյնպէս կարծի և զսատանայէ՝ նախանձելն նմա ընդ նախաստեղծ մարդոյն, և չգիտել զհանգամանս վնասակարութեանն. քանզի ոչ եթէ չար ինչ առաջի կայր՝ ուստի զհանգամանսն մարթ էր առնուլ. ուսեալ յԱստուծոյ պատուիրանէն՝ որ մարդոյն տուաւ արգելուլ զնա ՚ի ճաշակելոյ ՚ի տնկոյ իմիքէ ՚ի մահաբերէ, զայն յառաջադրեաց մարդոյն. որ ոչ եթէ անպիտան ինչ ՚ի կերակուրս մարդոյ էր, և ոչ բնութեամբ տունկն մահաբեր, և վասն այնորիկ ինչ արգելաւ մարդն ՚ի ճաշակելոյ ՚ի նմանէ, այլ անսաստութիւնն եղև պատճառ մահուան մարդոյն, իբրև յանցաւորի՝ որ անցանիցէ ըզհրամանաւ հրամանատուի՝ որ նմա կարգեալ իցէ:

Արդ ժտեցոյց Թշնամին զմարդն

անցանել զհրամանաւն Աստուծոյ, որպէս զի ոչ եթէ ստուգեալ գիտէր՝ եթէ այնու նմա վնաս ինչ գործել կարիցէ, այլ կարծեօք ՚ի թեթեւս մտացեալ, եթէ լիցի և թէ չլինիցի. և յետոյ յԱստուծոյ պատուհասէն՝ որ առ մարդն եղեւ վասն պատուիրանազանցութեանն՝ իմացաւ եթէ պատուիրանք նորա մահ գործեցին, և յիրաւի պատժեցան և նա և մարդն՝ զոր յօժարեցոյց յանսաստութիւնն, ճաշակել ՚ի փայտէն՝ որ ոչ բնութեամբ մահաբեր էր, այլ յԱստուծոյ սպառնալեացն եղեւ այնպիսի իրաց պատճառ:

Եւ որպէս բժշկի ոչ կարեւոր մեղադիր լինել՝ վասն յառաջագոյնն զգուշացուցանելոյ որով օրինակաւ կարիցէ մարդն առողջանալ, և նորա թողեալ զպատուէրս բժշկին՝ անսայցէ թշնամոյն՝ որ զվնասարար խրատուն տայցէ նմա, որով ոչ ըզպատճառս վնասուն ՚ի բժշկէն՝ որ յառաջագոյնն զգուշակեաց նմա՝ և մանալի է, այլ ՚ի թշնամւոյն որ ՚ի

պատուիրանին բժշկին նմա զվէրսն հնարեցաւ. նոյնպէս և զսատանայէ ասեմք լեալ Թշնամի մարդկան՝ որ չեւ եւս գիտէր զհանգամանս չարեաց, այլ 'ի պատուիրանէն Աստուծոյ ուսեալ՝ կամեցաւ վնասել մարդոյն. որպէս զի եթէ առանց Աստուծոյ կամաց 'ի ծառոյն ճաշակիցէ՝ առնուցու պատիժ զմահ։ Քանզի եթէ յառաջագոյն չէր գուշակեալ Աստուծոյ մարդոյն չուտել 'ի կերակրոյ ծառոյն, և նորա յանցեալ՛կերեալ, չլինէր նմա պատիժ մահ. կամ որպէս թէ առ 'ի չգիտանս եկեր, կամ թէ առ չժուժալոյ 'ի կերակրոյ ծառոյն, չէր ինչ պատժի պարտական։ Քանզի և մանուկ կաթնակեր՝ որ յայլ ինչ կերակուր մտաբերիցէ, ոչ պատժելի է՝ այլ արդահատելի, որպէս թէ առ 'ի չգոյէ կաթին յայն յօժարեաց։ Նա և օձն, որ է սատանայ, յիրաւի պատժեցաւ՝ վասն ընդ անագորոն Թշնամութեան ընդ մարդոյն ունելոյ։

Եւ արդ սկիզբն չարեաց զնա-

խանձն ասեմք, և զնախանձն յառաւել զմարդն պատուելոյ, և զչարեան յանհնազանդութենէն ։ Զի Աստուած այնպէս առաւել զմարդըն պատուեաց, և նորա անսաստեալ՝ զընկէց զպատուիրանն ։ Ուստի զամենայն ինչ որ լինի չար, ոչ բնութեամբ չար գիտեմք, այլ զի առանց կամացն Աստուծոյ գործին իրք ինչ՝ լինին չար ։

Նա և ընդ լինելն իսկ սատանայի յԱստուծոյ, գիտաց՝ եթէ անսաստել ումեք Աստուծոյ՝ չար է և ոչ բարի ․ քանզի ոչ եթէ անմիտ ինչ ոք եղեւ նա յԱստուծոյ՝ եթէ չգիտէր, եթէ որ ինչ ըստ Աստուծոյ կամացն լինի՝ բարի է, և որ ինչ արտաքոյ քան զնորա կամսն՝ այն չար է ․ և վասն այնորիկ յիրաւի տանջէ զնա Աստուած, զի գիտէ նա զբարին, և ոչ առնէ ․ և հմուտ է չարին, և ոչ խորշի ։ Եւ ոչ չար և չարչարիչ հաստատեաց զնա Աստուած ․ և ոչ փորձիչ՝ եթէ նովաւ փորձեալ զարդարս զտեսցէ ․ և ոչ ինքն յանձնէ չար

դաւեալ, և ոչ անարար և հակառակ Աստուծոյ. այլ մանաւոր եղեալ յԱստուծոյ, և հմուտ գիտութեան՝ թէ չար է հակառակ կալ Աստուծոյ հրամանին, և յայն զոր գիտէրն՝ թէ չար է՝ յանդգնեցաւ, զանսաստութենէն ասեմք. և անսաստութիւնն ոչ եթէ անձնաւոր ինչ յառաջագիտ եհաս 'ի գիտութիւնն սատանայի, այլ ինքն զմի ինչ եղեալ 'ի դիպաց կամեցելոյն:

Նա և զմարդոյ յիրաւի, ասեմք, կրել պատուհաս ընդ որոց գործիցէ. քանզի կամաւ երթայ յուսումն այնպիսի իրաց, յորոց յորժամ և կամիցի՝ և մեկնել կարող է. քանզի և կամելոյն և չկամելոյն ունի իշխանութիւն, զորոյ զհետ երթայ և կարելն զոր ինչ կամիցի առնել:

ԺԳ. ՈՐՈՎՀԵՏԵՒ, ասեն, չարեաց արարիչ զԱստուած չկամիք ասել, այլ 'ի մարդկանէ եղեալ թելադրութեամբ սատանայի 'ի հնազանդելոցն նորա և 'ի խաբեցելոց, և յիրաւի կրեն պատիժս. զի կարէին հատանել և ընկենուլ 'ի

բաց ղչարխան, և ոչ կամեցան, և արդ վասն նորին իսկ սատանայի հարցցուք. այնպիսի՞ արդեւք արար զնա Աստուած, եթէ ինքնին այնպիսի չէր՝ և յօժարեաց 'ի չարա-բարել։

Եթէ այնպիսի արարեալ էր զնա Աստուծոյ, պատիժս 'ի նմանէ չէր պարտ պահանջել, զի պահեաց զպայման բնութեանն՝ յոր արարն զնա Աստուած. և որ ոք ոչ կամօք ինչ գործէ, ընդ այնր պատիժ չըպարտի կրել. բայց որ կամօք կարօղ է գործել, և գործ ինչ յոռութեան գործիցէ, յիրաւի պատժի, զի ոչ եկաց յայնմ՝ զոր Աստուածն կամի. ապա եթէ յԱստուծոյ բարւոք եղեւ, և անձամբ յանձնէ դարձոյց զկամսն 'ի չար՝ հեռացուցեալ զինքն 'ի լաւէն, յիրաւի պահանջի ընդ որոց յանդգնեցաւն՝ պատիժս. զի զսատանայ մեք ոչ յԱստուծոյ սատանայ եղեալ գիտեմք. այլ զսատան անունն՝ վասն խոտորելոյն էառ իւր անուն. քանզի սատանայ յեղրորեցող և յԱպրուոց

ընդունէր խոստովանեալ Թարգմանին. այլ
զօրութիւն իմն զգայուն լաւու-
թեանց հաստատուեցաւ յԱստու-
ծոյ, և 'ի Թշնամութենէ ընդ մար-
դոյն ունելոյ՝ իւրն կամօք եղեւ բան-
սարկու. Թողեալ զԱստուծոյ հպա-
տակութիւն՝ սկսաւ ապստամբել, և
հակառակ կալ Աստուծոյ հրաման-
նացն ուսուցանել մարդկան, և իւ-
րեւ զապստամբ յետս կացեալ Թիւ-
րեցաւ յԱստուծոյ: Եւ վկայէ բա-
նիս առաքելական բարբառն, որ
ապստամբ վիշապն կոչէ զնա՝ եԹէ
հրամանաւն սորին զապստամբ վի-
շապն: Եւ արդարեւ իսկ բանն Աս-
տուած սորին զսատանայ, այնու-
ղի կոխելոյն զնա ետ իշխանութիւն:
Արդ ապստամբ կոչէ զնա զիր. և-
Թէ նոյնպիսի՝ որպէս եղեւն յԱս-
տուծոյ՝ կացեալ էր, ապա ոչ ապ-
ստամբ կոչէր զնա. զի որ ապստամբ-
եալ ոք, Թողու զիւր սպայականն՝ ո-
րով ոչ անսպառ իսկ յուսացանի: Զի
եԹէ անսպառ էր, ապա ոչ յիւր-
մէն բնուԹենէն փոխէր. քանզի
չմարԹի բնուԹեան իմիք՝ առանց

կամաց՝ մերթ բարի լինել․ մերթ չար ։

ԺԴ․ ԻՍԿ արդ եթէ ոչ էր անարար, անէն, ըստ ձեզ սատանայ, և ոչ այնպիսի եղեալ յԱստուծոյ, և անձամբ զանձն դարձոյց 'ի բարւէ անտի 'ի չարն, որ է 'ի հնազանդութենէ յանհնազանդութիւն, արդ զայն ասացէք․ գիտէ՞ր Աստուած՝ եթէ այնպէս լինելոց էր, եթէ չգիտէր․ Թէ գիտէր և արար, ինքն է պատճառ՝ նորա 'ի բարութեանցն դառնալոյ․ ապա եթէ ոչ գիտէր, զիա՞րդ առնէր զայն զոր ոչն գիտէր՝ թէ որպիսի ինչ ոք լինելոց իցէ ։

Անգիտութիւն կարծել զԱստուծոյ՝ անհնարին յիմարութիւն է․ քանզի միայն ինքն կանխագէտ է հանդերձելոց ։ Այլ քանզի բարերար էութիւն է Աստուած, ոչ կամեցաւ զազնուականութիւնն իւր ծածկել․ վասն որոյ յառաջագոյն գիտէր զսատանայէ՝ եթէ Թիւրելոց է, և զմարդիկ յանցուցանելոց՝ առ 'ի չունկնդիր լինելոյ

հրամանաց նորա, որով միանգամայն վասն անձնիշխանութեան մարդոյն երևելոյ արար զնա Աստուած. զի առաւելութիւն բարերարութեան նորա յայտնի լիցի մարդկան, վասն թողութեան տալոյ մարդկան յառաջագոյն գործելոցն մեղաց: Զի յորժամ զսատանայ ամպարշտացեալ տեսանիցեն և չբարձեալ 'ի միջոյ, և վասն խաբեանց մեղացն իմանայցեն՝ թէ գոյ հնար թողութեան ապաշխարութեամբ. զի Աստուծոյ բարերարութիւնն ցուցանիցէ, և մարդիկ զշնորհն նորա գիտասցեն. զի եթէ այն այնպէս չէր լեալ, և ոչ բարերարութեանն նորա ոք խելամուտ լինէր:

Նա բնաւ իսկ, ասեն, յետ թիւրելոյն սատանայի և խաբելոյ ըզմարդն՝ ընդէ՞ր իսկ ոչ եբարձ 'ի միջոյ, զի մի՛ զբազումս ապականիցէ:

Ոչ եթէ չէր կարող Աստուած բառնալ զսատանայ 'ի միջոյ, քանզի չիք ամենևին անկարութիւն զԱստուծով. այլ զի չէր ինչ մեծ

գործ Աստուծոյ զսատանայ ինքնին անձամբ ապանանել, և զարարած մի զիւր փոքր յոչինչ դարձուցանել, զի մի կարծիցի՝ թէ վասն չժուժալոյ չարութեանն նորա սպան զնա։ Երկրորդ անգամ՝ զի անծանօթ եւս լինէր առ յապայ մարդկան Աստուծոյ բարերարութիւնն, թէ յառաջագոյն սպանանէր զսատանայ. զի ոչ ոք ունէր նշանակ ինչ յայտնի բարերար կոչելոյ զԱստուած։ Այլ թերեւս և կարծէք ինչ 'ի մէջ մտանէին՝ թէ հաւատար ինչ ոք էր նա Աստուծոյ, և անձապարեաց 'ի միջոյ եբարձ. վասն որոյ պահեաց զնա, և ոչ կորոյս 'ի միջոյ, զի մարդիկ յորժամ լաւութեանցն հրմտուս լինիցին, յաղթեսցեն նմա՝ փոխանակ այնոցիկ՝ որք յառաջնումն յաղթեցան 'ի նմանէ։

Այն իսկ մեծ և զարմանալի է, զի մարդն Աստուծոյ՝ փառաւոր Աստուծոյ օգնականութեամբն, պատերազմեալ յաղթիցէ սատանայի։ Որպէս մարտուցոյց ոք անձնայն հնարիւք հնարեալ զիւր աշակերտ

ղոն թէքէլ, առ ՚ի յուսացանելոյ ըղ-
հանգամանս մարտիցն, որով մար-
թիցեն յաղթել ախոյանից, և ա-
ռաքեսցէ զնոսա ՚ի հրահանգս մրցել
ընդ ախոյանսն, և յաղթութեանցն
ռուչ առնել խոստացէ, մինչև ըղ-
կեանս անգամ արհամարհել. զի
լաւ համարի թէ վասն անուանն բա-
րւոք մեռանիցին, քան թէ կենդա-
նի կայցեն և վատանուն լինիցին:
Եւ նոցա զթելադրութիւնս վար-
դապետին ՚ի մտի եդեալ, և զպար-
գեւս ընդ յաղթութեանն, զոր ՚ի
վերոյ լինիցին ախոյանին, և պա-
կեալ առ վարդապետին հասանի-
ցեն, և՝ նշանակ ճգնութեան ընդ ա-
խոյանին՝ առ նա զպսակն բերիցեն:
Ապա եթէ զմարտուսոյցն զմտա-
ւոչ ածիցեն, և յաղթութեան և
պսակի ոչ ցանկանայցեն, կործա-
նին վատանուն յախոյանէ անտի.
յորում այնուհետև թշնամանին
և տանջին, և մահու պատիժ փո-
խանակ ընդ վատութեանն կրեն:
Նոյնպէս և զԱստուծոյ իմանա-
լի է, թէ իւրովք պատուիրանօք

վասն է զներեցիկ զհնարովին՝ առ 'ի պար-
տակելոյ զյաղթողն, և յանձն թա-
նելոյ զվատացեալն. իսկ եթէ որ
յոչինչ զԱստուծոյ զպատուիրան-
սն համարիցի, յորժամ մտցէ ընդ-
դանսարկուին մարտնչիցի՝ վաղվա-
ղակի կործանի, քանզի չունի զնշա-
նակս յաղթութեանն. և յիրաւի
կրէ պատիժ պատուհասից այնպի-
սին, զի ոչ նմանեաց ընկերին՝ որ
կռուեցաւ և յաղթեաց։

Արդ վասն այնորիկ թողեալ է
Աստուծոյ զսատանայ իբրեւ 'ի հրա-
հանգս կռուանողաց յաշխարհի,
զի յորժամ իւր նահատակեալքն
կռուիցին և յաղթիցեն նմա՝ պար-
ծանք առաւելոյ յաղթութեաննն նո-
րա քակեսցին յայժմուն յայնպի-
սեացն մարդկանէ, որ լաւութեան-
ցըն ցանկութեամբ պարտիցեն զնա,
և նշան յաղթութեան զնահատա-
կութեանն կանգնիցեն։ Քանզի կո-
խան արկեալ ընդ ոտիւք մերով՝
անկեալ դնի մեռեալ, և կործանի՝
առ 'ի լաւութեանցն ցանկութեան
մերոյ 'ի պաշտութիւն մատնեալ։

ԺԵ. ԱՐԴ յետ այսր ամենայնի հաւանութեանց՝ յամառեալ զնոյն 'ի մէջ բերեն. բնութեամբ են՝ ասեն՝ չարիք, և ոչ կամածինք:

Ասեմք. եթէ բնութեամբ իցեն, ընդէ՞ր օրէնք 'ի թագաւորաց դնիցին, և սաստք 'ի յիշխանաց, և պատիժք 'ի դատաւորաց. ո՞չ ապաքէն վասն կործանելոյ չարեացն: Եւս, թէ բնութեամբ իցեն չարիքն՝ ոչ պարտի օրէնսդիրն օրէնս դնել, և ոչ իշխանին պատիժս 'ի վերայ չարագործին ածել: Ընդէ՞ր պատժիցեն զայն՝ որ ոչ կամօքն չար իցէ, որում արգահատելն պարտ էր, և ոչ պատիժս 'ի վերայ հատուցանել:

Եւ արդ այնպիսոյն եթէ կին շնայցէ, չպարտի մեղադիր լինել. քանզի ոչ կամաւ՝ որպէս ասենն՝ յօժարեցաւ 'ի չարն, այլ բնութեամբ բռնադատեցաւ: Եւ եթէ որդւոյ իւրոյ սուր առեալ՝ 'ի վերայ խաղայցէ, մի՛ լիցի նմա մեղադիր. զի ոչ իւր կամաւ երթայ, այլ չարին տանի զնա յայն: Եւ եթէ

'ի դիտացւոյ և 'ի բարեկամէ թշնամանեսցի՝ մի՛ փոխարէն թշնամանեսցէ, այլ առաւել արգահատեսցէ եւս. զի ոչ եթէ նա ինչ թշնամանէ, այլ չարն՝ որ բռնաւոր վարէ զնա ։ Նոյնպէս՝ յորժամ դուստր զմայր անարգեսցէ, և նու զկեսուր իւր, և կին զայր, և ծառայ զտէր, և եղբայր զեղբայր, մի՛ ինչ տարցին ընդ միտ՝ որք անարգեցանն, այլ արգահատեսցեն նոցա որպէս 'ի չարէն բռնադատելոց ։

Իսկ եթէ տեսանեմք՝ թէ թագաւորն զիւրոց օրինաց վրէժս պահանջէ, և պահանջմամբ վրիժուցն զվնասն կարճէ, և դատաւորն ըզգողն և զաւազակն պրկէ և քերէ՝ վասն զվնասակարութիւնն 'ի միջոյ բառնալոյ, և հայր զորդի դժնեայ մահապարտեալ՝ դատաւորաց մատնէ, և այլքն ամենեքեան զիւրաքանչիւր զանցնիւր զանարգանաց վրէժս պահանջեն՝ կամ անձամբ կամ իշխանօք, յայտ է թէ չարեացն որք գործին՝ կամածինք են և ոչ բնականք ։ Բայց ասէ՝ դու ըզ-

կարծին իսկ որք շուայլեալ ցանկու-Թեամբ՝ պղծեալ և մարմնացեալ , անկեալ Թէ ընդ բնաւ ամենեւին գտանիցի ՚ի Նմա յիշատակ ցանկութեանն : Եւ արդարեւ ոչ ինչ ընդ վայր ասա-ցեալ է բանն Իմաստնոյն , Թէ ծա-ռայ որ ընդ ունելին ոչ լսէ՝ ընդ մեծա-Նոյնս տան լսել Նմա :

Նա և յայլուստ եւս մարԹեմք խմանալ , զի մարդոյ բնութիւն բա-րեաց ցանկացող է , և ոչ չարեաց : Զի շունն , որ շնայ , մինչ գեռ իսկ ՚ի գործ շնութեանն իցէ՝ եԹէ ոք շուն կոչէ զնա , ըմբռստանայ . ապա-Նիկն , որ յայտնի աւազակ է , զանուն աւազակութեանն չախորժէ լսել . Նոյնպէս և գողն և աւազակն , և այլ եւս չարագործքն , Թէպէտ և զգործ չարագործութեանն գործեն՝ զանուն չարագործութեանն յան-ձին ոչ կամին առնուլ : Նա և կեղ-ծաւորն կեղծաւորեալ , որ մեղմե-խանօք ընկերին կամիցի մտանս ատա-Նել , Թագուցանէ զկեղծաւորու-Թիւնն , և որպէս Թէ բարւոյ ինչ խորհուրդ առնիցէ՝ Հրապուրեալ որկա

նէ ընդ միաստիւք զանձամբն . և եթէ ոչ զբաւրուոյ զդէմս զդեցեալ մեզմէ-զիցէ , չկարէ ըստերիւրել յիրա-ւանց զիրաւադէսն ։

Նա և յորժամ զխիստ ոք իշխան կամիցի 'ի քաղցրութիւն ածել , չը-կարէ յայս երթալ ասել՝ թէ դու խիստ ես , այլ քաղցրախառն բա-նիւք մատուցեալ ողոքէ՝ թէ դու , տէր , քաղցր ես և բարերար ամե-նեցուն , ամենեքին գոհ են զքէն , բոլորք առ խրատադէտս ունին . և այնպէս կարէ մեղմով քաղցրացու-ցանել զխստութիւն իշխանին , և խոնարհեցուցանել ածել յիրաւն և յարժանն ։ Նոյնպէս և առ ցա-սուցեալն և տրտմեալն և առ նա-խանձոտն քաղցրութեամբ ոք մատ-չի և ցածուցանէ . և անտի յայտ է՝ թէ բարեաց ցանկացող է բնու-թիւն մարդկան , և ոչ չարեաց ։

Եւ եթէ զազանացն զազանու-թիւն չար ինչ բնութեամբ կարծե-ցուցանիցէ նոցա , զխրատացեն՝ զի կէսքն յանասնոցն 'ի պէտս արա-րան , որպէս և արջառ և ոչխար և

ամենայն ինչ որ ուտելի է և կերալի է. և կէսքն վասն երկիւղ 'ի միտս մարդկան ծնուցանելոյ: Զի թէ գազանք ահագինք են, և վիշապք և օձք և այլ ճճիք վնասակարք, և մարդն այնչափ հպարտացեալ է՝ մինչ ըստ Աստուծոյ երկիւղին սահմանս արտաքոյ ելեալ անսաստէ, եթէ այնպիսի զարհուրեցուցիչք չէին՝ ո՞րչափ ևս առաւել չկայր երբէք յականատանի:

Նա և նոքին իսկ, որ չարքն կարծին անմնոաց, երբէք երբէք օգտակարք լինին և զերծուցիչք 'ի մահուանէ: Զի ինչ չար.քան զօձ կայցէ, և ի նմանէ թերիակէ. և 'ի սպանող դեղոց, որք 'ի նենգութենէ մարդկան կազմեցան, չեւ հասուցեալ և անդէն բուժէ: Եթէ բնութեամբ չար ինչ էր օձ, կամ չարի ինչք արարած, ապա չգտանէր ինչ ամենևին 'ի նմա օգտակար, և ոչ զգօնանայր երբէք 'ի գազանութենէ անտի իւրմէ. Նա աւանիկ տեսանեմք 'ի հնարագիտութենէ թոյչաց զգօնացեալ, Ք. ինքնև զշուան

խաղաղէին է՛նոցա, և ընդ որում՝ անդամ ընակեալ 'ի տան՝ չմեղանչէն բնակչացն:

Եւ արդ եթէ հեթանոս իցէ՝ որ չար ինչ բնութեամբ կարծիցէ, յանդիմանեսցի յիւրոց արուեստակցացն օձապաշտացն. որ այնչափ զգօնացուցանել զօձս գիտեն, մինչեւ կոչել յուռութիւք 'ի տունս, և կերակուր մատուցանել, որպէս բաբելացիքն վիշապին՝ զոր պաշտէինն. և սպան զնա Աստուծոյ սիրելին՝ Դանիէլն ընտանեկան կերակրովն:

Եւ եթէ մոգ իցէ, և չարի արարած զգազանսն վասն գազանութեանն ասիցէ, 'ի հասարակաց միտաց փաշաման կրեալ ըմբերանեսցի: Զի եթէ գազանքն չարի արարածք իցեն, և երկիր բարւոյ, զիա՞րդ բարւոյն արարած չարին արարածոց դայեակ մնեալ՝ սնուցիչ լինիցի, որք 'ի նմանէ կերակրին և 'ի ծոց նորա հանգչին. զի երկու հակառակք իրերաց՝ միմեանց ծախիչք են, որպէս խաւարի լոյս, և ջեր սառամանեաց:

Արդ եթէ գաւազանք չարի արարածք էին, և երկիր բարւոյ, ծախել պարտ էր զնոսա երկրի՝ և ոչ մնուցանել, սպառել և ոչ սերել. ապա եթէ երկիր և զգաւազանսն մնուցանէ և ոչ սպականէ, յայտ է՝ եթէ յորմէ արարչէ երկիր լեալ է, 'ի նմանէ և գաւազանքն արարեալ են. և չիք ինչ չար բնութեամբ. քանզի չէք ինչ չար արարիչ բնութեամբ: Եւ մանաւանդ թէ և գազանք իսկ, զորոց ասեն՝ թէ 'ի չարէ արարչէ եղեալ են, ցուցանեն թէ չեն ուստեք՝ այլ յերկրէ, այնու զի յերկրէ կերակրին և 'ի նմա բնակեն, և անդրէն 'ի նոյն շրջեալ հողանան:

Նա թէ և 'ի չարէ ինչ էին չարք արարեալք, ոչ ինչ 'ի նոցանէ օգտակար գտանէր, այլ ամենեքին իսկ վնասակար: Իսկ արդ եթէ տեսանեմք, զի կիսոցն մորթքն պատուարան մերկութեան մերոյ լինին, և կիսոցն ճրագուն դեղնեղի լինի, և այլ ինչ յանդամոցն, որպէս առիւծուն և արջոյ և այլոցն՝ ըստ իւ-

բաղկանչիւր մի բառ միոջէ , յայտ է՝ եթէ 'ի բարւոյ արարչէ լեալ են , վասն միոյ նորին օգտակարին գտանելոյ 'ի նոսա : Զի որ չար ինչ է , նորա և ամենայն ինչ վնասակար է , և մոլոթ և միս . այլ նոցա որպէս զմորթն զգենումք , և ոչ վնասէ , և զմիսն եթէ սնոտ ուրուք առնոյր և ուտէր՝ ոչ վնասէր . որպէս վարազն՝ որ գազանազոյն է քան զամենայն գազանս՝ ուտի միսն , և ոչ վնասէ . նոյնպէս և նոցայն՝ եթէ ուտէր ոք՝ չվնասէր :

Եւ յարջառ , զոր ասեն՝ եթէ 'ի բարւոյ արարչէ արարեալ է , գտանի ինչ վնասակարութիւն : Զցլումիս ուտել՝ գարշելի է մարմնոյ , բայց եթէ զարիւնն ոք ըմպիցէ՝ սատակի : Նոյնպէս և 'ի բանջարս է ինչ՝ որ առանձինն սատակիչ է , և խառնեալ ընդ այլ բանջարս՝ բժշկիչ պէսպէս ցաւոց լինի : Զմանդրագորն եթէ ոք լոկ ուտիցէ՝ սատակիչ է , և խառնեալ ընդ այլ դեղս՝ քնածու լինի քնահատաց : Եւ զհաղբար՝ եթէ 'ի տօթ ժամու

նակն ուտիցէ ոք, քանզի զովացու-
ցիչ է, զտապս 'ի փորոյն փարա-
տէ. և եթէ 'ի հով ժամանակի ու-
տիցէ ոք, մնասէ. և եթէ զՋուրն
քամեալ անապական ըմպիցէ ոք, սա-
տակի. և 'թէ զսերմն աղացեալ՝
Ջրով ըմպիցէ ոք, 'ի ցանկութենէ
արկանէ: Եւ կանեփուկն թուփ
ինչ է, որոյ սերմն նորա դեղ է, և
նոյն դարձեալ կասեցուցիչ ցան-
կութեան: Եւ մոլախինդ, որ ա-
ռանձինն 'ի յայտնի ինչ ժամա-
նակի սպանող է, նովիմբ զմաղձս
հնացեալս հնարին բժիշկք հանա-
նել: Եւ կաղանչանան սողք ինչ՝
առանձինն սպանող է, և խառ-
նեալ ընդ այլ դեղոյ՝ մաղձաթեղ է
բուժիչ 'ի մահուանէ:

Արդ յայսպիսի իրս անհարթա
տու ոչ ուղիղ հայելոյ, կարծեցին
եթէ չար ինչ բնութեամբ իցէ.
բայց Աստուած այսպէս իմաստուն
զմարդն կազմեաց, զի և 'ի դար-
մանիչսն մարթիցէ վայելել. և որք
մտաստակարքն կարծիցեն, և անտի
եւս հնարիւք օգտակարութիւն

կարիցէ գտանել, առ 'ի յանդիմանե-
նելոյ զբարս անմտացն՝ թէ չիք ինչ
որ բնութեամբ չար է ։

ԺԶ. ԲԱՑՑ թէպէտ և նորքա
աստուածական օրինացն ոչ հաւա-
տան, մեք յուղղորդ նպատասխան-
ւոյ զմեր ընտանիս մի՛ զրկեսցուք ։

Այնչափ ինչ չար 'ի գազանացն
բնութեամբ ոչ գոյր, մինչեւ ա-
ծեալ զնորարարսն առ նորաստեղ-
ծըն՝ նմա նոցա անուանս հրամայ-
էր դնել. և եթէ մօտ ոչ գային, զի-
արդ միոյ միոյ ըստ իւրաքանչիւր
ազգաց անուանս յօրինէր. արդ
եթէ մօտ գային, և ընտելութիւն
ընդ մարդոյն ունէին, յայտ է՝ թէ
ոչ չարք էին, և ոչ մարդոյն վնա-
սակարք. այլ յետ յանցանելոյ մար-
դոյն զԱստուծոյ պատուիրանաւն՝
տուան նմա զարհուրեցուցիչք, առ
'ի չհպատականելոյ հողեղինին՝ որ 'ի
հողոյ եղեւ, և 'ի հող դառնալոց էր ։

Եւ առաջնոյ չիշխանականու-
թեան գազանացն մարդոյ՝ այժմու
համբերելոյս և ընտելութիւնս վկայ-
են ։ Զի ամն զգայլոյ կորիւն սնու-

ցանէ, և իբր զչան կորիւնս՝ առընտանելութեան ընդ անձն անկանին։ Եւ միւսն զառիւծու կորիւն սնուցեալ՝ աճէ ՚ի համբոյր և ՚ի քծինս, մինչև պատել զսնուցանելեաւն. և եթէ այլ ոք ՚ի նա հուպ գայցէ, չմոռացեալ զբարս գազանութեանն՝ ՚ի վերայ յարձակի. և նորա սատակեալ գազանին իբր շան, ցածուցանէ յանսասա գազանութենէն։ Եւ այլ ոք զարջոյ թոժիւն սնուցեալ՝ կաքաւիչս ուսուցանէ, և նմանեցուցեալ բարուց մարդկան՝ զգազանաբարոյն ցածուցանէ։ Եւ այլ ոք զկապիկս անասպատակամս ըմբռնեալս՝ հապիտս և ընչապատուկս և ամենաչար ուսուցանէն։ Եւ այլոց զքարբս իգակերպս կալեալ թովչութեամբք յընտանելութիւն մարդկան ածեն, ջրեցուցեալ զթոյնան սպանողս։

Արդ եթէ չար ինչ էին գազանքն բնութեամբ, չէր հնար մատակարարացն ընդ իւրեանց մտաակարին ընտանելութիւն ունել։ Եւ եթէ զխորշակս և զատուածանիս ՚ի

զվնասակարութեանն՝ ՚ի չարէ արարչէ կարծիցեն, գիտասցեն. եթէ ոչ ձիւն և սառնամանիք պնդէին զերկիրս, արմատք խոտոց ոչ պարարէին. և եթէ ոչ տօթ ջեռուցանէր զանդաստանս, պտուղք ոչ հասանէին ։

ԺԿ. ԵՒ եթէ զախտս և զհիւանդութիւնս և զմահս տարաժամս, և զընաւ զմահ խակ ՚ի չարէ ինչ արարչէ իմանայցեն, եթէ աստուածական օրինաց հաւատային՝ անդստին յօրինացն առնէաք պատասխանի ։ Բայց որովհետեւ ՚ի չարէ արարչէ գտնեն զայսպիսի անհարթութիւնս, հարցցուք և մեք ցնոսա. բարեացն արարիչ և չարեացն՝ ո՞ քան զո հարուստ իցեն ։ Եթէ ասիցեն՝ եթէ բարեացն արարիչ հարուստ է, ասեմ. զի եթէ հարուստ ոք էր նա քան զչարեացն արարիչ, ոչ տայր նմա զվնասակարութիւնն յիւր ՚ի բարի արարածսն արկանել. նա և տեղի եւս չէր պատրաստ տալ նմա յիւրում վայրան ։ Զի եթէ կարող ոք ինչ

էր, նախ իւր տեղիս զատ 'ի նմա-
նէ առնէր, և ապա զարարած՝
զինչ և կարող էր առնել։

Արդ զայն ասասցեն․ կարո՞ղ էր
զնա մերժել բարին յիւրոց 'ի բա-
րիոք արարածոցն, եթէ չէր կա-
րող։ Եթէ ասիցեն՝ եթէ կարող
էր, լուիցեն․ եթէ կարող էր մեր-
ժել զչարն և ոչ մերժեաց, ինքն է
պատճառ չարասուն․ և եթէ ոչ էր
կարող մերժելոյ զչարն, գտանի՝
զի հարստագոյն քան զնա էր չարն,
որ բռնաբար նեղէ և ապականէ
զբարիոք արարածս նորա։ Դար-
ձեալ և այն եւս սուտ է, զոր ա-
սենն, թէ 'ի վախճանի յաղթէ
նմա բարին․ զի որ յառաջնումն
չկարաց յաղթել, յայտ է՝ թէ և 'ի
վախճանին չկարէ յաղթել։

Այլ մեք զցաւոց և զմահուան
բազում ինչ պատճառս ունիմք
ճշմարիտ բանիւ 'ի մէջ բերել։ Նախ
այն իսկ՝ զի յորժամ մարդն զԱս-
տուծոյ պատուիրանաւն անց, ա-
պա եղեւ ընդ ցաւովք և ընդ մա-
հուամբ․ քանզի ցկինն ասաց՝ թէ

ցաւովք և տրտմութեամբ որդւոյ ծնջիր. և ցայրն՝ թէ աշխատութեամբ և քրտամբք երեսացքոց կերիցես զհացքո, մինչև լիցի քեզ դարձ անդրէն յերկիր՝ ուստի առար. զի հող էիր, և 'ի հող դարձջիր: Որով յայտ է, զի թէպէտ և բնութիւն մարդոյ՝ քանզի մարմնաւոր է՝ ընդ ցաւովք և ընդ մահուամբ կարծէր, այլ թէ կացեալ էր 'ի պատուիրանին՝ պահէր զնա կենդանարարն կենդանի. որ յոչընչէ չէն կարող եղև զշունչ մարդոյն առնել, և պահէ միշտ կենդանի և անմահ, նոյն և զմարմինն՝ զոր յերկրէ ստեղծ՝ կարող էր պահել կենդանի:

ԺԲ. ԱՅԼ խորև զայս լսեն թըշնամիք ճշմարտութեանն, ապշի ազգի զինուք վասն ընդդէմ սատուգութեանն. զի կէսքն ասեն՝ թէ չէր մարթ մարմնաւորի անմահ կալ. և այլքն ասեն, վասն զի ոչ տեւէր մարմինն ընդ շնչոյն յերկար ժամանակս կեալ, հարկ է անտեւականին մեռանել:

Այլ զառաջինան յանդիմանեն Եղիա և Ենովք, որ ցայժմ կենդանի են. և զայլսն՝ հաստատակաց համա-բէնն յարութիւն: Զի եթէ այժմ վասն զի անտեսական են մարմինք՝ յայն սակս մեռանին, ապա և 'ի յարութեան՝ ըստ նոցա բանին՝ չը-տոնկան ընդ շնչոյն. և այսու յայտ առնեն՝ թէ զյարութիւն իսկ մարմնոյ խափանել կամին, ուր աստուածական գիրք և արարածոց բնութիւնք անդադար վկայեն ըզ-յարութենէ մեռելոց:

Այլ ասեն. թէ ոչ մահկանացու իսկ էր մարմինն, զինչ՞ էր՝ զի վասն դոյզն յանցմանն անկանէր ընդ մահուամբ, և ոչ արդահատէր նմա արարիչն և ներէր յանցմանն:

Զի ներող և արդահատօղ է արարիչն, այն ամենեցուն իսկ յայտնի է. և առաւել յայնմանէ, զի յետ յանցանելոյ մարդոյն՝ իջեալ անմարմինն՝ իբր զմարմնաւոր ըզ-առնաձայն առնէր 'ի դրախտին. և մեղմով և աղերսալից բարբառով ասէր ցյանցուցեալն՝ ո՞ւր ես Ա-

դամ, զի մի՛ տագնապեցուցեալ՝ չտայցէ ուշաբերել նմա ապաշխարութեան. և զի չեկն 'ի զղջումն յանցուցեալն, յիրաւի կրեաց պատիժ զմահ ։

Դարձեալ և այլազգ ես. զի իւրոյ տրարչին յառաջագոյն պատուիրեալ էր նմա՝ թէ յորում աւուր ուտես 'ի պտղոյ ծառոյն, 'ի նմին աւուր մեռանիս. և թշնամին յետոյ եկեալ ասէր՝ ոչ մեռանիս, այլ իբրև զաստուածս լինիս ։ Եւ արդ ո՞յր բանից պարտ էր հաւատատուն լինել, ո՞յնր՝ որ յառաջագոյն զգուշացոյց, և կամէր ունկնդրութեամբ պատուիրանին զնա անմահ պահել, եթէ միւսոյն՝ որ պատրանօք ջանայր զնա մահկանացու առնել ։

Եւ եթէ չէր տրարչին յետ յանցանելոյ զպատուիրանն զմարդն մահկանացու արարեալ, հանապազ մարդն սատանայի հաւատայր, և ոչ Աստուծոյ. զի սա ասաց՝ եթէ ուտես 'ի պտղոյն, մեռանիս. և նա ասէր՝ թէ ուտես, չմեռանիս, այլ իբրև զաստուածս լինիս ։

Այդ եղ մահ 'ի վերայ բնութեանս մարդկան արարիչ բնութեանն, զի իւր բանն հաստատեսցի, և չար խրատուն պարտաւորեալ գտանիցի. զի թէպէտ առ ժամանակ մի վասն այսց երկուց պատճառանաց ընդ մահուամբ անկանիցի, այլ ըստ խոստում կատարութեան յարուսցէ միւսանգամ, և յանսպառ յաւիտեանս կենդանի և անմահ պահեսցէ: Եւ որ զհրեշտակս և զհոգիս մարդկան յոչընչէ արարեալ՝ կենդանիս և անմահս պահէ, նոյն և զմարմինս կարող էր կենդանի պահել՝ թէ չէր առաջնոյ մարդոյն զԱստուծոյ հրամանն զընկեցեալ:

ԺԹ. ԱՅԼ զի Աստուած մահուան չէ պատճառ, վկայեսցէ ամենարուեստ իմաստութիւնն, որ ասէ՝ եթէ Աստուած զմահ ոչ արար, և ոչ խնդայ ընդ կորուստ մարդկան. այլ հաստատեաց Աստուած ըզմարդն յանեղծութիւն պատկերի իւրոյ միջանձնաւորութեանն, և նախանձու բանսարկուին եմուտ մահ յաշխարհ: Եւ փորձեն

ինքն իսկ տայ. Ես ասացի՝ թէ աս-
տուածք իցէք, և որդիք բարձրելոյ ամենեքին: Այսինքն՝ եթէ ես զձեզ անմահս արարի, եթէ կացեալ էիք յիմում հրամանին. բայց որովհետեւ ոչ կացէք յիմում պատուիրանին, դուք խրրեւ զմարդիկ մեռանիք, խրրեւ զմի յիշխանաց անկանիք. եւ ոչ ընդ ձեր մահ կամէի, և ոչ ընդ իշխանին վասն խրատատուին անկանել:

Այլ բնաւ իսկ, ասեն, ընդէ՞ր եմոյծ զնոսա՛ի կռիւս ընդ միմեանս:

Այսու զանձնիշխանութիւնն սատանայի և զմարդոյն կամին խափանել. զի Աստուած՝ որ աննախանձն արար զնոսա անձնիշխանս, ոչ կամէր թէ որպէս զանասունս 'ի հարկէ վարիցին, և ապա անձնիշխանութիւնն այնուհետև չլինէր անձնիշխանութիւն:

Բայց Աստուած թէպէտ և ունէր իշխանութիւն զիւրոյ արարածոյն զհանդէսն տեսանել, այլ ոչ ինքն դրդեաց զնոսա անկանել ընդ միմեանս: Նոյն և: եռեւս զսատանայ

նախախնամու բարբաջեալ, թոյլ եւ
անձնիշխանին ընդ անձնիշխանին
օգտուել. քանզի գիտէր՝ եթէ ոչ ինչ
անկատարագոյն է սորա անձնիշխանու-
թիւնս քան զնորայն. և ոչ նա կան-
խագէտ, և սա ոչ կանխագէտ. և
ոչ նա բռնաւոր, և սա տկար ոք :
Եւ զի չէր բռնաւոր ոք, յայնժա-
մէ յայտ է՝ զի զկինն պատրանօք
մատուցեալ հարցանէր, և ոչ բռնա-
նութեամբ զարհուրեցուցանէր :
Եւ զի չէր կանխագէտ, ասէ. զի՞նչ
է այդ՝ զոր ասաց Աստուած, զի 'ի
նմանէն ուսցի զհանգամանսն :

Դարձեալ և 'ի Յոբայ փորձա-
նացն է ուսանել՝ թէ չէ սատանայ
բռնաւոր և կանխագէտ : Զի եթէ
բռնաւոր ոք լինէր նա, ոչ յԱս-
տուծոյ խնդրեալ առնոյր հրաման, և
ապա մտէր 'ի փորձութիւնն. և
եթէ կանխագէտ էր, ոչ մատչէր
փորձել. քանզի գիտէր՝ թէ յոր-
ժամ ոչ կարէ յաղթել, յամօթ լի-
նելոց է :

Նա և 'ի աւետարանական խօսս 'ի փոր-
ձանացն իմանալի է՝ թէ չէ կան-

խաղէա, այնու զի ասէր ինքն իսկ՝ թէ որդի եմ Աստուծոյ. և յայտ առնէր, թէպէտ և լուեալ էր 'ի մարգարէիցն՝ թէ գալոց է որդին Աստուծոյ, այլ զժամանակ գալըս-տեանն ոչ գիտէր: Եթէ գիտա-ցեալ էր՝ եթէ արդարև որդին Աս-տուծոյ էր այն, որ նմա իբրև ըն-մարդ երևէր, ոչ փորձէր զնա և ոչ յամօթ լինէր. որ թէպէտ և յաս-տուածեղէն զօրութեանցն իմա-ցաւ զգալուստ որդւոյն Աստուծոյ, և տագնապեալ աղաղակէր, թէ գիտեմ զքեզ ով ես սուրբդ Աս-տուծոյ:

Դարձեալ թէ կանխագէտ ինչ ոք էր նա, ոչ զրգռէր զՀրեայսն՝ զնա 'ի խաչ հանել, թէ գիտացեալ էր՝ թէ մահն Քրիստոսի ընկենոյր զնա յիշխանութենէ. ըստ այնմ զոր ասաց Տէրն՝ թէ իշխան աշխարհիս այսորիկ ընկեսցի արտաքս. և դար-ձեալ՝ թէ տեսանէի զսատանայ իբ-րև զփայլակն անկեալ յերկնից. և դարձեալ՝ թէ իշխան աշխարհիս այ-սորիկ արդէն իսկ դատապարտեալ

է. զի ցուցցէ թէ և յիշխանութենէ անկեալ՝ որ աստուածանմանն կամեցաւ, և յաւիտենականն զաստատանեացն արարչական եղեւ :

Ի. ԱՐԴ որովհետեւ վասն մահու և ցաւոց՚ի վերայ մարդոյն գնելոյ ցուցաւ յաստուածատուր զգոյշ՝ թէ վասն անցանելոյ զպատուիրանաւն Աստուածոյ մահին յաշխարհ, ասասցուք և զայլ եւս զպատճառսն՝ վասն որոյ ատարածամ մահ չէք լինելն :

Բազում. անգամ Թերեւս չարիք խնչ մեծամեծք առաւել ի մարդոյն կացցին, կամ նեղութիւնք՝ որոց ոչ կարէ ժուժալ, կամ փորձութիւնք՝ որոց ոչ լինի բաւական տանել, Աստուած կանխագիտէ և մարդասէր զխնայեալ մեր արարչին ծնն՝ ատարժամ մահուամբ վերծուցանէ ըզմարդն յայնպիսի չարեացն . քան այնմ զոր գիտէն ասէ, թէ յառաջ քան զչարին ժողովեցայց արդարոյն :

Դարձեալ և այլ ասացեալ եւս. առանց մահք ատարածամք, զի յամենայն ակն և 'ի բոլոր ժամանակս ապաշ֊ խարանականն մարդոյն զանձնայ՝ չեղե֊

ծիցի յաստուածպաշտութենէ ։

Բայց թէպէտ և յանիծից մասին ցուցք յաշխարհ, սակայն են և այլ ինչ պատճառք ։ Երբեմն վասն մեղաց, ըստ այնմ՝ զոր ցանդամալոյծն ասաց Տէր, թէ ողջացար՝ այսու-հետև մի՛ մեղանչեր ։ Եւ հայե-ցեալ ընդ հաւատս մատուցանե-լեացն, ասէ ցմիւս անդամալոյծն՝ թէ թողեալ լիցին քեզ մեղք քո ․ զի յայտ արասցէ, թէ են ինչ ցաւք՝ որ վասն մեղաց լինին, և են ինչ ցաւք՝ որ ոչ վասն մեղաց ․ որպէս յորժամ աշակերտքն հարցին զՏէր՝ վասն կուրին՝ թէ ո՞յր մեղ է վասն կուրութեանն, դորա՞ թէ ծնողաց իւրոց, և նա ասէ՝ թէ ոչ դորա և ոչ ծնողաց իւրոց, այլ վասն փառ-ացն Աստուծոյ՝ զի փառաւորես-ցի 'ի դմա Աստուած ։ Եւ են ցաւք՝ որ ոչ վասն մեղաց են, և ոչ յԱս-տուծոյ ինչ 'ի փառս, այլ 'ի չկշռե-լոյ խառնուածոցն ։ Քանզի մար-դոյ մարմինն 'ի չորից տարերց խառ-նեալ է, 'ի խոնաւութենէ, 'ի ցա-մաքութենէ, 'ի ցրտութենէ, և 'ի

Ջերմութեանն ։ և թէ մի՛ ինչ պա֊ կասիցէ կամ յաւելիցէ , ցասուս զայր֊ ծէ 'ի մարմինսն ։ և այն կամ 'ի շատ ուտելոյ և յըմպելոյ լինի , կամ 'ի սաստկական պահոց , կամ յանխատոր կե֊ րակրոց , կամ յոյժ 'ի սոթի աշխա֊ տելոյ , կամ կարի 'ի ցրտոյ ըլկելոյ , կամ յայլոց ինչ այնպիսեաց հա֊ կառակորդաց՝ որպէս անհարթու֊ թիւնք 'ի մարմինս գործիցին ։

Եւ պատահարաղնաց անկիրքն յագա֊ հութեանէ մարդկան եղեւ , ուստի յափշտակութիւնք անհամեմատեաց են և դիւղից և օտար քաղաքաց , ըն֊ չից և ստացուածոց ։

Նախանձս և պոռնկութիւնք՝ առ 'ի չկալոյ 'ի սահմանս ամուսնու֊ թեանն , զոր Աստուած 'ի բնէ կար֊ գեաց՝ թէ թողցէ այր զհայր և զմայր իւր , և երթիցէ զհետ կնոջ իւրոյ ։ Զհետ կնոջ իւրոյ՝ ասէ , և ոչ զհետ կանանց ։ զի և զաստուածային ամուսնութեանն հաստատեա֊ ցէ , ասաց Տէր 'ի սուրբ աւետա֊ րանին՝ թէ զոր Աստուած զու֊ գեաց , մարդ մի՛ մեկնեսցէ ։

տել , եղբարքն հարկանէն ստամբքն մեր
խղճիւ զծառայ՝ զանձնատուն մեր , և
եղբարքն զանդս և զայգիս . զի ընդ
այն հայեցեալ՝ մնասցուք ընդ լծով
Աստուծոյ երկիւղին . այլ եթէ
այնու եւս ոչ խրատեսցին , 'ի մեղ
քակ մատուցանէ զատանջանսն , կամ
ցաւովք , կամ խեղդութեամբք , կամ
դիւօք : Տանջին և անմեղք՝ զի 'ի
մտի կալցին այլքն զբան Իմաստա_
նոյն՝ որ ասէ . եթէ արդարոյն հա_
ղիւ կեցցէ , ամպարիշտն և մեղա_
ւորն ո՞ւր գտանիցին : Եւ այն յայն
սակս լինի՝ զի մի՛ արդարոյն յարդա_
րութիւնսն ծուլասցի , և մի՛ մեղա_
ւորն միշտ 'ի մեղսն կայցէ : Եւ չէ
այնմ պատուական Աստուած , այլ
չարիք մարդկան ածեն զԱստուած
այնպիսի տանջանօք խրատել զմար_
դիկ , զի որպէս այլոց հաւատովք
հաստատեաց զանդամալոյծն , և
շնորհեաց նմա թողութիւն մեղաց ,
նոյնպէս և այլոց սակաւուց տան_
ջանօք՝ ածէ յերկիւղ և 'ի խրատ
զգաստուսն , յորժամ դիպիցէ ան_
մեղօք , և յորժամ դիպիցէ մեղա

ւորօք , որպէս ինքն միայն Ճարտար գիտէ ։ Եւ ոչ եթէ 'ի դատապարտա- տութիւն ինչ ոգւոց լինի մարդոյն տանջանքն դիւաց , այլ առաւել եւս յարգահատութիւն . մինչա- ւանդ՝ թէ անմեղ ոք իցէ , և վասն այլոց երկիւղ 'ի միտս արկանելոյ՝ յայնպիսի տանջանս մտանիցի , զոր իբրեւ զմտրակ կախեալ 'ի մեծի տանս՝ ցուցանէ Աստուծոյ անեսչու- թիւնն , զի հայեցեալ ընդ այն բազ- մաց՝ ամփոփեսցին և մնասցեն երկիւ- ղիւ ընդ Աստուծոյ հնազանդու- թեամբ ։

Եւ է երբեք՝ զի վասն մեղաց իւրե ընկնին յայնպիսի տանջանս . և է եր- բեք՝ զի պատուհասք պատահեն , և պատուհասեալք 'ի որոց մարտիրո- սացն 'նշխարս՝ փրկին մարդիկ յայն- պիսի տանջանաց , որով զօրու- թիւնն Աստուծոյ՝ որ 'ի սուրբսն է՝ երեւի , և ինքեանք յոգիս ինչ ոչ վնասին ։

Այլ զի դեւ զդեւ ոչ հանէ , զայն իսկ յայտ արար . թէ սա- տանայ , ասէ , զսատանայ հանէ ,

տալս ուրեմն բաժանեալ է յանձնէ իւրմէ. այլ եւ ասէ հոգւով Աստուծոյ հանեմ զդեւս: Եւ ընդէ՞ր ինքն որ Աստուածն էր՝ ասէր, հոգւով Աստուծոյ հանեմ զդեւս, այլ զի մարդկան ուսուսցէ, եթէ ոչ արժանաւորք շնորհաց՝ հոգւոյն սրբոյ լինիցին, ոչ կարեն հանել զդեւս. որպէս առաքեալքն մինչ ոչ նախ առին իշխանութիւնն՚ի Տեառնէ, ոչ կարէին հանել զդեւս: Նա եւ նմին իսկ, որ ՚ի տանջանս իցէ, եւս իշխանութիւն հանելոյ զդեւն. ասէ, այդ ազգ ոչ ելանէ իւիք՝ եթէ ոչ պահօք եւ աղօթիւք: Ոչ եթէ մի ինչ ազգ իցէ դիւաց՝ որ պահօք եւ աղօթիւք ելանիցէ, եւ այլքն ոչ, այլ ամենայն իսկ դունդքն դիւաց ՚ի պահոց եւ յաղօթից փախստական գնան:

ԻԲ. ԱՅԼ կախարդք, ասեն, յղեն դեւս եւ հանեն զդեւս:

Զի կախարդք զդեւս ոչ կարեն հանել՝ բաւական է մեզ հաւանեցուցանելոյ բանն Տեառն, զոր ասաց՝ թէ սատանայ զսատանայ ոչ

հանել. զի կախարդն եթէ հանէր, տապաքէն գլուխ հանէր. և զդիւէ տայց Քրիստոս՝ թէ դեւ զդեւ ոչ հանէ. ապա յայտ է թէ այլազգ իմն իրք լինին, որպէս 'ի նոցանէն իսկ երեւալ է բանին՝ և ոչ 'ի մէնջ: Ասեն. հանել չկարեն, բայց ան-դէն կապել մարթեն, զի հանապազ խեղդ ընդ անձն հոգւոց մարդոյն դեւն լինիցի: Եւ այն յԱստուծոյ արժանիցն յիրաւի լինի. զի եթող ումն զԱստուած, զսուրբս, զպահս, զաղօթս., և 'ի կախարդն՝ որ և ան-ձինն չկարէ օգնել՝ ապաւինեցաւ. զի ո՞ որ 'ի կախարդաց անցաւ և անդէւ և անմահ եղև: Նա և տե-սանեմք իսկ զկախարդան միշտ ծըմ-կեալս 'ի դիւացն, և մանաւանդ մոլեքն. զի նախ ինքեանք դիւահա-րին, և ապա այլոց իմն իմն խոս-տանան տալ, որ չիցէ 'ի ձեռս՝ ոչ նոցա և ոչ դիւացն, որոց բանիւ-խօսին տալ ինչ ումեք, բայց միայն Աստուծոյ որ արարիչն և տուիչն է:

Եւ արդ. քան անդէն կապել կա-խարդացն զդեւն՝ որպէս ասենն, և

խնդրել ընդ անձին միշտ ողբալոյ մար-դոյն առնել, լաւ էր թէ յայտնէր և սրբոյք աղաչեցեալ զԱստուած՝ օգնականութիւն գտանէր բուժե-լոյ 'ի չարեացն ։

Այլ մեք ասեմք, թէ մեռանելոյ 'ի մարդ չուանի իշխանութիւն՝ ա-ռանց Աստուծոյ թուլացուցանե-լոյ ։ և այնր պէսպէս պատճառք են, որպէս ինքն միայն գիտէ ։ և յայտ անտի է՝ զի յորժամ 'ի խոզ-ղեց երամականն մեռաբերեցին մեռանելը ոչ կարացին մեռանել՝ եթէ ոչ նախ 'ի Քրիստոսէ առին հրաման ։ Եւ յորժամ զՅոբն կամեցաւ փորձել սատանայ, ոչ իշխեաց ժանել՝ եթէ ոչ նախ յԱստուծոյ առ հրաման փորձելոյ ։ Եւ զՅուդայէ ասէ՝ թէ ընդ պատառոյն եմուտ սատանայ ։ Զի թէ չէր Քրիստոսի թուլացու-ցեալ և սատանայի՝ որ գրգռէրն, և Յուդայի՝ որ վասն կծծութեան եկն յայն, ոչ իշխէր մտանել 'ի նա ։ այլ վասն յանդիմանելոյ զանձնիշ-խանութիւն երկոցունց՝ թուլացոյց ըստ կամաց երկոցունց ։

Նա և մինչ դեռ տանջէին խակ ամանք ՚ի գիւղն, եթէ ոչ յԱստուածոյ առաջնորդութիւն լինէր նոցա, չարաչար մահուամբ սատակէին։ Նա և զպատշաճաւորութեան իսկ իւրեանց՝ եթէ ոչ Աստուածոյ տային պահէր, տղայք ազգի խնդրութեամբք խնդրէին, և անհնարին մահուամբք սպանանէին. բայց փառն զի ոչ են ձեռնհաս, ոչ իշխեն յայնպիսի իրս մտաբերել։ Եւ այս յայտ անտի է, զի թէպէտ և կանխաւ գիտէ Աստուած՝ թէ ոմն կռապաշտութեան լինելոց է, ոմն կախարդ, և ոմն սպանող, ոչ արգելու զնկատել ազգմնցն նոցա, և զփչումն հողւոցն նոցա, զի նորա բարերարութիւնն երևեսցի, և նոքա յիւրաքանչիւր անձնիշխանութեամբն պատուհասեսցին։

Եւ յայտ է՝ թէ որպէս առանձնայն ինքն ասէր է, նոյնպէս և ՚ի գործածութիւն վայելեցուցանելոյ, և ՚ի լինելոց չարին ապրեցուցանելոյ. զի ոյք իւր ինչ որք են՝ յիւրն զընդամ և խնայէ. և որ ոչ է իւր, նա զօտարին օգնէ և ցրէ. որպէս ասէ յառակսն

րանին՝ թէ գայր ոչ վասն այլ իրիք գիւղ, այլ զի յաւիտենականեսցէ և ցրուեսցէ. այլ ճշմարտութեան հաստատուցելոց ոչ ստորանայ փորձութեամբքն կարէ սասանել, և ոչ կախարդանք դիւաց. որպէս ինքն Յիսուս ասաց ցիւր աշակերտսն՝ եթէ ահա ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս և զկարիճս, և զամենայն զօրութիւն թշնամւոյն: Եւ դարձեալ՝ թէ նշանք հաւատացելոց այս են. զդեւս հանիցեն, և օձս 'ի ձեռն առցեն, և զդեղ մահու ըմպիցեն, և ոչ մեղանչիցէ: Եւ միանգամայն իսկ առաջեալ, թէ անմեղի ումեք ոչ դեւք մեղանչել կարեն, և ոչ գազանք ապականել յօժարեն. որպէս ոչ Դանիէլի գազանքն վնասեցին, և ոչ երից մանկանցն հուր հնոցին:

Որպէս առաջնոյ մարդոյն՝ մինչ չեւ յանցուցեալ էր՝ հնազանդ էին, և ոչ մեղանչականք. և որպէս առ առաքելովքն վասն թագաւորեալ էր առատանոյ, մինչեւ կատարածացն յահէ նշանաւոյն՝ զոր առնէին՝ քարոզել զգիրս կախարդականացն զձանդա-

դինն՝ և այրել առաւօլի առաջնեկացն, և դիւացն աղաղակել՝ թէ դուքա էն ծառայք Աստուծոյ բարձրելոյ: Որոց նշանացն նշխարք՝ և այժմ 'ի սուրբ եկեղեցաստ և 'ի Ճշմարիտ վանականս երևելին. և զայնպ զփորձ ոչ միայն քրիստոնեայք, այլ և հեթանոսք և մողք գիտեն:

ԻԳ. ԲԱՑՑ և զայն եւս պարտիմք գիտել, թէ հրեշտակք և դեւք և ոգիք մարդկան անմարմինք են. զի զհրեշտակաց ասէ՝ արար զհրեշտակս իւր հոգիս, և զպաշտօնեայս իւր բոց հրոյ: Հոգիս կոչէ զնոսա վասն արագութեանն, որպէս զի ասիցէ՝ թէ քան զհողմս թեթեւք են. քանզի ոդւոյ և հողմոյ անուան երբայեցերէն և յունարէն և ասորերէն նոյն է. նա թէ և հայերէն ոք մանր միտ զննիցէ՝ նոյնպէս գըտանէ. յորժամ առաղձնապէս ոք յումեքէ լիցէ՝ ասէ, չէր ոգի կլանել, չէր ոգի առնուլ. և այնպէս զօդոյս՝ զոր միշտ ծծեմք՝ յայտ առնէ: Եւ բոցեղէնս կոչէ զնոսա վասն առաւելութեանն. որպէս այլուր ա-

սէ , հզօրք են զօրութեամբ առաւել զկամս նորա . այլ ոչ եթէ ՚ի բնութենէ հողւոյ և հրոյ են . զի եթէ ՚ի բնութենէ հողւոյ և հրոյ էին , ապա և նոքա յիրաւի մարմնաւորք կոչէին , և ոչ անմարմինք . քանզի որ մարմնաւոր է՝ ՚ի չորից հիւթից յօդեալ է , որպէս մարմինք մարդկան և բնաւ անասնոց . և որ ինչ անմարմին է՝ նա պարզ բնութիւն է , որպէս հրեշտակաց և դիւաց և ոգւոց մարդկան ։

Եւ արդ ո՞ւր իշխեսցեն չընչելու որք ասեն՝ թէ հրեշտակք ընդ կանայս ամուսնացան . զի նոքա հրեղէնք կոչին , և մարդիկ խառնեղէնք ։ Բնաւին յայտ իսկ է՝ թէ հրոյ ընդ խառնոյ ոչ ամուսնութիւն լինի , այլ ծախումն ։ Եւ երկնքեան զօրքս այսպիսիք , քանզի համամարմնեայք են , նմանանուանեայս և նովքին իսկ անուանք անուանին ։ Արդ հրեշտակ ոգի , այլ ոգի հարկաւոր՝ որ է հնազանդեալ և կամակատար . սոյն և դեւ ոգի , այլ ոգի չար վասն անհնազանդութեանն և ապստամբութեանն . զայս

Թէպէտ և 'ի մեր լեզու՝ այս չափ ասեմք, որպէս 'ի խորանաց հարցն մերոց առաջնոց ըստ սովորութեան 'ի մեզ կարգելոյ, այլ գիտեմք՝ եթէ այսն հողմ է, և հոգին՝ ոգի, ըստ յառաջագոյնն ասացելոյ ։ Քանզի յորժամ մեք ասեմք՝ թէ ոգիք շնչէ, տարրնեայք ասեն՝ այս շնչէ ։ և վասն տարածութեանն միայն և արագութեան կոչին հրեշտակք և դեւք և հոգիք մարդկան՝ ոգեղէնք, որ է հողմեղէնք ։ Որպէս վասն աստուածութեանն բացեղէն կոչին հրեշտակք, նոյնպէս և վասն արագութեանն և տարածութեան հողեղէնք, որ է հողմեղէնք ։ բայց բնութիւն նոցա 'ի վեր է քան զհողմ և քան զհուր, նուրբ և արագ քան զմիտս ։

Եւ չեն ինչ զարմանք՝ թէ նոքա մերոց դիտացեաց արարածոց անուանքս անուանին, ուր և նոցա արարիչն ոչ գարշի զայնմանէ անուանս զինքեամբ առնուլ՝ վասն երբեք երբեք տնտեսութեանց ։ Կոչի Աստուած հողմ, այլ կայ ընտրու-

թիւն 'ի միջի. ասէ, Աստուած հոգի կենդանի է. որ է կենարար. կոչի և հուր, ըստ այնմ՝ թէ Աստուած քո հուր ծախիչ է։ Եւ արդ ունեցուք՝ թէ հո՞ւր միայն ծախիչ իցէ Աստուած. նա ամենևին նորին հոգւոյ միւսով մարգարէիւ յայտ արարեալ՝ թէ լոյս է. ըստ այնմ՝ թէ Տէր լոյս իմ և կեանք իմ, ես յումմէ՞ երկեայց։

Եթէ հուր ծախիչ եւեթ էր, զիա՞րդ կոչէր լոյս կենարար. ո՞չ ապաքէն յայտ է՝ թէ ուր սաստկութիւնն ախտոյ է, անդ հուր կոչի. և ուր քաղցրութիւն՝ անդ լոյս կենարար, այս ինքն 'ի վեր է քան զհուր և քան զլոյս. և այլ ինչ բազում անուանս առնու զինքեամբ վասն պէսպէս դարմանից։

Եւ յորժամ երևել սրբոց իւրոց կամէր, ոչ այլով իւիք կերպարանօք՝ այլ միայն մարդոյ կերպարանօք, զոր ըստ իւրում պատկերին արար, յայտնէր. և այն ոչ փայլատակող ինչ լինէր, այլ զի ցուցանել սէրն իւր՝ զոր ընդ մարդ-

կան ունէր՝ ցուցանիցէ. և ՚ի դար-
ձեալ՝ զի յառաջագոյն կրթեսցէ
զմարդիկ ածել ՚ի գիտութիւն. զի
յորժամ զորդին իւր իբրև զմարդ
յաշխարհ առաքեսցէ, մի՛ օտարա-
ցի ինչ զնորան համարեսցին. մանա-
ւանդ զի գիտիցեն՝ թէ ինքն իսկ
այն կերպարանօք յայտնէր: Որ-
պէս իջեալ ՚ի դրախտն առ Ադամ՝
տնտեսական իբրև զմարդ առնէր:
Եւ եկեալ Որդւոյ առ Աբրահամ
երկուք հրեշտակօք, արժանի առ-
նէր ճաշ ՚ի վրանի նորա ուտելոյ:
Եւ ՚ի խօսս մատուցեալ ՚ի լերինն
ընդ Աբրահամու, զերկուս պա-
տանիս իւր՝ զհրեշտակս մարդկա-
կերպեալս՝ ՚ի Սոդոմ առ գեղեցիկ
ապականչականն առ Ղովտ արձակէր:
Եւ հրացուցեալ և չայլայլեալ ընդ
հրեշտակն ՚ի մորենւոջն, ՚ի մարդ-
կեղէն բարբառ ածեալ, տայր ընդ
նախընծայացելոյ առն Աստուծոյ
ընդ Մովսէսի խօսել: Եւ այրա-
կերպեալ զզօրավարն իւր զՄի-
քայէլ, զօրագլխին իւրում Յեսու-
ւայ ՚ի դաշտին ցուցանէր: Եւ ա-

առաքեալ հրեշտակ 'ի տուն Մանուէի խօսել ընդ նմա, մարդկօրէն ընծայեցուցանէր։ Եւ երբեք երբեք գրեն թէ մարդացեալ իսկ՝ բերան 'ի բերան և ձեռն 'ի ձեռն ընդ բարեկամին իւրում ընդ Մովսէսի խօսէր։ Եւ առնն Թագաւորի ըստ սրտի իւրում գտելոյ, Թաղծելոյ 'ի հարուածոցն, հրեշտակ 'ի կերպարանս մարդոյ սուսեր 'ի ձեռն ցուցանէր։ Եւ Եզեկիէլի հրատեսիլ և բոցալեզու 'ի կառս ազգի ազգի կերպարանօք յօդեալ, և կառավար մարդկակերպարան երեւեցուցանէր. և քերոբէս ազգի ազգի գազանօք յօդեալ, և ձեռն ձգեալ իբրեւ զմարդոյ քրոբէի 'ի միջոյ քրոբէից ցուցանէր։ Եւ իւր իսկ երբեմն իբրեւ զհինօրեայ, երբեմն իբրեւ զմատաղօրեայ, վասն այլ և այլ տնօրէնութեանց կերպարանեալ՝ ցանկալւոյ առնն երեւէր։ Եւ այնպէս իւր և իւրոց ծառայիցն նոյնգունակ երեւելով՝ զառաւել սիրոյն, զոր ընդ մարդոյն ունէր, յայտ առնէր։

Այս ամենայն ասացաւ, զի ցուցցի թէ որ ինչ երեւի՝ մարմնաւոր է, և որ ինչ ոչ երեւի՝ անմարմին. և ՚ի մարմնաւորացն են որ թանձրամարմինք են, և են որ նուրբ մարմինք. որպէս Առաքելոյն ասէ, թէ այլ մարմինք երկնաւորացն, և այլ մարմինք երկրաւորաց: Երկրաւորաց՝ մարդկան և անասնոց, թռչնոց և սողնոց. և երկնաւորաց՝ արեգական և լուսնոյ և աստեղաց: Եւ զի զնոցանէ ասէ, և ոչ զհրեշտակաց, անդէն զնովիմբ ածեալ ասէ՝ թէ այլ փառք արեգականն են, և այլ փառք լուսնի:

Եւ միանդամայն իսկ ասացեալ, թէ որ ինչ ՚ի զգայնոցս շօշափի կամ զննի կամ ազդի՝ այն մարմնաւոր է, և որ զգայնոց ոչ ազդի՝ անմարմին: Նուրբ է տարր լուսոյ, այլ զի ակամբ զննի՝ մարմնաւոր է. նուրբ է տարր օդոյ, այլ զի ցրտութեամբն ազդի մարմնոյ՝ մարմնաւոր է. նուրբ է տարր հրոյ, այլ զի ջերմութեամբն ազդի մարմնոյ

մարմնաւոր է. նոյնպէս և ջրոյ՝ որ
քան զծանուծոյն նրբագոյն է, և
քան զթեթեւան թանձրագոյն ։

ԻԴ. ԵՒ արդ քանզի անմար-
մինք են հրեշտակք և դեւք, յայն
տակս և ծնունդք ոչ գոն նոցա ։

Այլ, ասեն, համբարուաց ծը-
նունդք գոն և մեռանին ։

Նախ զայն տեսցուք, թէ բնաւ
գոյցե՞ն այլ ինչ արարածք բանա-
ւորք քան զհրեշտակս և զդեւս և
զմարդիկ. և ապա եկեսցուք յայնր
'ի քննին, թէ իցե՞ն 'ի դիւաց կէսք
մարմնաւորք և կէսքն անմարմինք ։
Զի չիք ինչ արարած բանաւոր ար-
տաքս քան զայս երիս ջոկս, ըզ-
հրեշտակաց, զդիւաց և զմարդկան,
յամենայն աստուածատուր գրոց
և 'ի բնութենէ արարածոց յայտ-
նի է ։ Բայց թէպէտ և ասին ինչ
անուանք 'ի գրոց յուշկապարկաց
կամ համբարուաց կամ պարկաց,
ըստ կարծեաց մտաց մարդկան ա-
սին, և ոչ ըստ բնութեան. քանզի
դիւաց է կերպարանս կերպարանս
ցուցանել, և մարդիկ ըստ կերպա-

բանիցն անուանս դնեն. որպէս յորժամ քաղաքք և գիւղք աւերեցին, և անդ դեւք բնակիցեն, և կեղծս 'ի կեղծս յայտնիցին, և մարդկան ըստ կեղծեաց նոցա անուանս եդեալ՝ զոմն յուշկապարիկ, զոմն պարիկ, զոմն համբարու կոչիցեն. նոյնպէս և գրոց ըստ մարդկան կարծեացն եկեալ՝ առ 'ի նշանակելոյ զաստուածութիւն աւերածի աշխարհին, յուշկապարկաց ասեն բնակել յաւերակսն, զոր յոյն լեզու իշացուլս ասէ։

Արդ ցուցցեն թէ գտանիցի՞ն իշացուլք 'ի Բաբելոնի. ապա ուրեմն յայտ է՝ եթէ անուանք առանց անձանց են յուշկապարկաց և իշացլուց. և գիրք ըստ սովորութեան մարդկան կարծեաց եկեալ, նոյնպէս անուանեցին՝ առ 'ի զաւերն Բաբելոնի նշանակելոյ. իբրեւ զծովացուլն՝ զոր 'ի կովէ ելեալ ասեն, և զղայլն իմն 'ի մարդկանէ, և զառլեւն 'ի շանէ. և այն ոչ եթէ անձինք ինչ են, այլ անուանք զբանեգտանաց, և բանջա

զանք մոլորելոց մնաց 'ի դիւաց : Զի 'ի մարմնաւորէ աններեւոյթ ինչ ոչ ելանէ, որպէս ոչ յաններեւութէ իմեքէ մարմնաւոր. ոչ երբէք 'ի մարմնականէ ելեալ այսն՝ եթէ առ երեւս արարած իցէ, և ոչ 'ի կովուց ծովացուլն ելեալ՝ եթէ 'ի ծովակս բնակիցէ : Զի մարմնաւորին չէ հնար՝ թէ 'ի ջուրս կեցցէ, որպէս և ոչ ջրականին՝ թէ 'ի ցամաքի կեցցէ. և ոչ 'ի շանէ ինչ ելեալ, եթէ ընդ աններեւոյթ զօրութիւնս ինչ կեցցէ, և յորժամ վերաւոր ոք անկեալ 'ի պատերազմի գնիցի՝ թէ լիզիցէ և ողջացուցանիցէ, զոր արալէզն կոչեն. այլ ամենայն՝ առասպելք են, և պառաւաց դղրդջիւնք, և մանաւանդ թէ 'ի դիւաց իսկ մոլորութեանէ :

ԻԵ. ԱՅԼ և վիճեալ եւս ալընտրին 'ի բանիցն վերայ : Մինն ասէ՝ թէ 'ի մերում գեւղ ծովացուլ զկով գործեաց, և զգոչիւնն հանապազ մեք լսեմք ամենեքեան : Եւ միւսն ասէ. զայն իսկ իմ աչօք տեսեալ է :

Մի՛թէ և զարարիչդէ՞ն եւս որք կարիցէ ասել՝ թէ և զայն ուրուք տեսեալ իցէ . և թէ յառաջին ժամանակին արարեդք լինելին ըղձիրաւորս և ողջացուցանելին, արդընդէ՞ր ոչ լինիցեն և ողջացուցանիցեն . ո՞չ նոյն պատերազմունք են, և նոյնպէս ձիրաւորք անկանին :

Ասէ յայնժամ, ասեն, դիւցազունք էին :

Եւ մեք զդիւցն իսկ պահանջեսցուք 'ի նոցանէ : Մարմնաւո՞րք էին արդեւք դիքն, թէ անմարմինք : Եթէ մարմնաւորք էին, յայտ է թէ մարդիկ էին, և զմարդկան ուրուականս 'ի պաշտօն առեալ՝ դիս անուանեին . ապա եթէ անմարմինք էին, չէր մարթ անմարմնոցն ընդ կանայս մարմնաւորս ամուսնանալ : Զի եթէ այնմ հնար լինէր, ոչ երբէք դադարէր սատանայ 'ի կանանց սատանայածինս ծնուցանել . զի որ անմարմին որք է, նա և անսերմն է . վասն զի սերմն մարմնաւորաց է, և ոչ անմարմնոց . և

տուանց սերման 'ի կնոջէ ծնանել միութիւն եւեթ մարթ եղեւ՝ որ արարիչն է բնութեան մարմնոյ . և որպէս կամեցաւ, կարող եղեւ 'ի կուսէ ծնանել առանց ամուսնութեան ։

Ուստի ամենայն իմաստնոց արտաքնոց յիւրաքանչիւր գլխոյն տկարութիւն հայեցեալ, չիշխեցին ասել՝ թէ 'ի կնոջէ ոք առանց ամուսնութեան ծնաւ ։ Եւ որպէս ոչ գոն ծնունդք դիւաց, նոյնպէս և ոչ մահ . Թէպէտ և անմահ բնութեամբ Աստուածութիւնն եւեթ է՝ որ մշտնջենաւորն է, և ոչ յումեքէ առեալ սկիզբն լինելոյ . այլ և սկզբնաւորացն և բանաւորաց պարգեւեաց աննախանձ զանմահութիւն, զհրեշտակաց և զդիւաց ասեմ, և զոգւոց մարդկան ։ Յորոց մարդիկ, քանզի յերկուց բնութեանց են՝ 'ի մարմնաւորաց և յանմարմնոց, յիրաւի սերին ծննդեամբ, և գան յաճումն ամուսնութեամբ . և մեռանին մարմնովք, և ոչ ոգւովք, վասն պատուիրանազանցութեանն ։

Այլ հրեշտակք և դեւք ոչ յաւելուած ծննդեամբ առնուն, և ոչ պակասութիւն մահուամբ. այլ որպէս հաստատեցանն՝ նոյնպէս և նովին թուով կան, առանց յաւելուածոյ և նուազութեան։ Եւ ոչ այլ ինչ արարած գոյ՝ որ կարիցէ 'ի կերպարանս կերպարանս լինել, որպէս զվիշապացն և զնհանգացն համբաւեն. այլ միայն հրեշտակք և դեւք՝ որք կարող են զօդս պնդել և պարզել, և ազգի ազգի կերպարանս երեւեցուցանել։

Այլ և վիշապք, առեն, և նհանգք կեղծս 'ի կեղծս լինին. յորոց մին անձնաւոր է, և միւսն ոչ անձնաւոր։

Վիշապն՝ որ մարմնաւոր է, զիւր կերպարանսն ոչ կարէ փոխել։ Զի եթէ հնար ինչ էր մարմնաւորաց ըզկերպարանս փոփոխել, նախ մարդ՝ որ առաւել քան զնոսա է՝ փոխէր զկերպարանսն յինչ և կամէր. այլ որպէս մարդոյ ոչ է հնար փոխել 'ի կերպարանս ինչ՝ յոր և կամիցի, նոյնպէս և ոչ վիշապին։

Նա և ոչ նեհանգ ինչ անձնաւոր գոյ, բայց եթէ դեռ 'ի տեղիս բնա-կեալ իցէ, և մերթ կերպարանի-ցի, և մերթ միաս գործիցէ : Եւ ոչ վիշապք զատոհմականս արդեանց կրեն, և ոչ գ,րաստ գոյ նոցա՝ եթէ զարդիւնս 'ի կալոց ուրեք կրիցեն ; և 'ի զուր է կամ կամն ասել ումեք 'ի կալս՝ և ոչ առա առ : Զի վիշապն որ ինքն դրաստ է, այնու զի անա-սուն և անխօսուն է, զիա՞րդ՝ որ ինքն գրաստ է՝ զայլ գրաստ վարի-ցէ . զի վիշապի այլազգ ինչ բնու-թիւն չէ՝ եթէ ոչ օձի, այն յայտ իսկ է : Եւ զօձ յաղթանդամ, կամ զգազան ինչ ծովածին, կո-չեն գիրք վիշապ . որպէս զմարդ յաղթանդամ հսկայ անուանեն. ; նոյնպէս և զօձ ցամաքային ան-ձուն, և զգազանն ծովական լեռնաձեւ, զկիտացն ասեմ և զդելփինաց, վիշապս անուանեն . ըստ այնմ՝ թէ դու ջախջախեցեր զգլուխս վիշապացն 'ի վերայ ջուրց . և ետուր կերակուր ժողովրդոց ե-թովպացւոց :

Տեսանեմս, զի զձկունս մեծա_
մեծս ծովածինս՝ վիշապս կոչեն
գիրք. և յայտ անտի է՝ թէ զձը_
կանց ասէ, այնու եթէ եաուր կե_
րակուր ազգաց եթովպացւոց. թէ_
պէտ և սաստ այլք 'ի սատանայ ա_
ռակեցին զվիշապն, որպէս և զայն՝
զոր Յոբն գրեալ է: Եւ այլ ինչ ոչ
են վիշապք՝ բայց կամ օձք մեծա_
մեծք ցամաքայինք, կամ ձկունք
անարիք ծովականք. զորոց ասեն,
թէ լեռնաբերձք և մեծամեծք են.
և որս և կերակուր նոցա մանր ձը_
կունք են, որպէս և օձից մեծա_
մեծաց մանր մանր ինչ ճճիք կամ
անասունք: Եւ ոչ որս երբէք՝ որ_
պէս մարդկան՝ արարեալ են վիշա_
պաց, կամ առնիցեն. և ոչ սա_
ճայք իբրեւ մարդկան են նոցա 'ի
բնակութիւն. և ոչ զօք 'ի թագա_
ւորազգեաց և 'ի դիւցազանց ու_
նին կապեալ առ իւրեանս կենդա_
նի. զի կենդանիք 'ի մարմնաւորաց
երկու եւեթ կան, Ենովք և Եղիա:

Այլ որպէս զԱղեքսանդրէ խա_
բէին դեւք՝ թէ կենդանի կայցէ,

տոց ըստ եգիպտական հնարողութեանն կապեալ տրկեալ կախարդանօք զդեւ 'ի շիշ, կարծեցուցանէին թէ Աղեքսանդրոս կենդանի էցէ և մահ խնդրիցէ. և զարուեստն Քրիստոսի խայտառակեաց զխաբէութիւնն, և եբարձ 'ի միջոյ զդայթակղութիւնն: Նոյնպէս և մոլորութիւնն դիւաց խաբեաց զդիւցապաշտս Հայոց, եթէ զոմն Արտաւազդ անուն արգելեալ իցէ դիւաց, որ ցայժմ կենդանի կայ, և նա ելանելոց է և ունելոց զաշխարհս, և 'ի սնոտի յոյս կապեալ կան անհաւատք. որպէս և Հրեայք՝ որ 'ի զուր ակնկալութեան կապեալ կան, եթէ Դաւիթ գալոց է՝ շինել զԵրուսաղէմ և ժողովել զՀրեայս, և անդ թագաւորել նմա նոցա:

Եւ այնպէս ջանայ սատանայ՝ զի զամենայն ոք 'ի բարուոք ակնկալութենէ վրիպեցուսցէ, և 'ի սնոտի յոյս կապիցէ: Մեծացուցանէ յաչս մարդկան զվէշապս, զի յորժամ ահագինք երեւեսցին ոմանց՝ առնուցուն զնոսա 'ի պաշտօն:

կարծեցուցանէ թէ և նհանգք ինչ իցեն գետոց, և շահաւէտք վայրաց. և յետ կարծեցուցանե-լոյ՝ ինքն կերպարանի կամ 'ի վի-շապի կերպարանս կամ 'ի նհանգս իմն և 'ի շահաւէտս, զի այնու զմարդն յիւրմէ արտաքսէ թիւրեա-ցէ: Զի եթէ էր ինչ նհանգն անձ-նաւոր, ոչ երբեմն 'ի կնոջ կերպա-րանս երեւէր, և երբեմն փոկ լի-նէր և լուղորդաց ընդ ոստս ան-կեալ՝ հեղձուցանէր. այլ կամ կինն կին կայր, կամ փոկն փոկ:

Նոյնպէս՝ և զոր շահապետ վայ-րաց կոչէին, ոչ մերթ մարդ երեւէր և մերթ օձ, որով և զօձապաշտու-թիւնն հնարեցաւ յաշխարհ մու-ծանել: Նոյնպէս և վիշապն ոչ մի անգամ օձաձեւ երեւէր, և միւս անգամ մարդակերպ, որպէս յա-ռաջագոյնն իսկ ասացաւ՝ թէ որ մարմնաւոր ինչ է, յայլ կերպա-րանս չկարէ փոխել:

Այլ թէ 'ի կալս ջորիք և ուղտք երեւեցին՝ դիւաց կերպարանք են այն, և ոչ վիշապաց. և եթէ 'ի

դաշտս երադաղանք ձգիցին , և հեծեալք իբրեւ զմտորդիկ զհետ երեկոյ արշաւիցեն , կեղծիք դիւաց են և ոչ ճշմարտութիւն ինչ իրաց . և եթէ 'ի գետս 'ի կանաց ինչ 'ի կերպարանս երեւիցին, սատանայի կերպարանք են : Քանզի նհանգ ինչ անձնաւոր չէք , և ոչ 'ի մարդ իբրեւ զդեւ մտանէ վիշապ . որպէս ոմանք 'ի շշէլոյ դիւ ահարին կարծեցին . քանզի մարմնաւորի 'ի մարմնաւոր չէ հնար մտանել : Եւս եթէ բառնայցի 'ի վեր այնպիսի վիշապն , ոչ եթէ եզամբք ինչ անուանելովք՝ այլ ծածուկ զօրութեամբ իւիք յԱստուծոյ հրամանէ , զի մի շոգին մարդոյ կամ անասնոյ վեզանիցէ . որպէս որ բասիլիսկոսն կոչի ազգ ինչ օձից՝ հայելով միայն սպանանէ զմարդ կամ զանասուն . ուստի յորժամ 'ի ջրհորս գտանիցի՝ ճրագ առեալ իջանեն 'ի ներքս ըմբռնել, զի հայեցեալ ընդ ճրագն՝ ոչ վեղանիցէ մարդոյն օձն :

ԻԶ. ԱՅԼ մեք ըստ գրոց սրբոց՝ զհրեշտակս աթոռանեակս գիտեմք

յօժարականութիւն մարդկան, ազգաց և թագաւորութեանց. ըստ այնմ զոր ասէն՝ թէ կացոյց սահմանս ազգաց ըստ թուոյ հրեշտակացն Աստուծոյ: Եւ դարձեալ այնու զոր ասէ յաւետարանի, թէ մի՛ արհամարհէք զմի 'ի փոքրկանց, զի հրեշտակք նոցա հանապազ տեսանեն զերեսս հօր իմոյ՝ որ յերկինս, այսպէս իմն երեւի՝ թէ իւրաքանչիւր մարդոյ հրեշտակ առանձինն պահապան կայցէ. թէպէտ և այլք զաղօթից կարծեցին ասացեալ 'ի Տեառնէն, որպէս թէ աղօթք նոցա՝ որ հանապազ մտանեն առաջի Աստուծոյ՝ կոչին հրեշտակք: Այլ և Առաքեալն ասէ. ոչ ամենեքեան հոգիք հարկաւորք են առաքելոցուք 'ի սպասաւորութիւն վասն այնոցիկ, որք ժառանգելոց են զփրկութիւն. որ 'ի հարկէ նման կան, և փրկութեան սատարք մեզ լինին:

Իէ. ԱՑԼ թէ սատանայ է, ասեն, գլխաւոր չարեաց, յայլս արարածոցն ընդէ՞ր մալթէ զերկրա-

պարգութիւն հեթանոսութեան ,
և ոչ յինքն միայն կորզիցէ ։

Զի բամբասեալ՝ի չարութենէ սատանայ , այն ամենեցուն յայտնի է ։ Արդ-եթէ իւր միայն խընդրէր զպաշտօնն , վաղվաղակի խըրտուցանէր զպաշտօնեայսն իւր, այնու զի չար և չարաչարիչ կարծիցի նոցա . այլ յօժարեցոյց զնոսա՝ լուսաւորաց երկիր պագանել , և զայլս՝ օդոյ և հրոյ , երկրի և ջրոյ և հասակաց և փայտից և քարանց , մինչեւ օձից և գաղանաց և ձկանց անդամ . զի միայն զնախանձն՝ զոր 'ի մտի եդեալ էր գուալըն ընդ մարդոյն՝ կատարեսցէ ։ Եւ արդ մի՛ ինչ վերուսցին , որ արարածոցն երկիր պագանեն՝ թէ զսատանայի զկամս ոչ առնիցեն . զի արարածոց պաշտօն մատուցանելըն վարդապետ այլ ոք չէր , բայց միայն սատանայ ։

Եւ արդ զի՞արդ կարիցեն նզովել զսատանայ , որք զկամս նորա կատարեն . զի եթէ որք զճշմարիտն Աստուած պաշտեն , և վարուք ինչ զեղծիցին , բամբասին յաստուածա-

կան բարբառոյն՝ եթէ խոստանան գիտել զԱստուած, և գործովք իւրեանց ուրացեալ են 'ի նմանէ, ո՛րչափ եւս առաւել նոքա առանց պատասխանատուութեան են, որոց առեալ զպաշտօն ճշմարտին՝ անշնչոց և անմռնչից արարածոցն մատուցանեն:

ԻԲ. ԲԱՅՑ թէպէտ և պէսպէս զինուք վառեցաւ Թշնամին ճշմարտութեան, Յունաց իմաստնոցն կարծեցուցանելով՝ թէ նիւթ ինչ միշտ առընթերակաց կայր Աստուծոյ՝ ուստի զարարածսն արար: Եւ քանզի նիւթոյ անուն 'ի նոցա լեզու 'ի մրուր * մերձ է, վասն այնորիկ զչարեացն սկիզբն անուն կարծեցին:

Եւ Պարսից քէշին գտիչք առ 'ի տարակուսելոյ՝ թէ ուստի՞ չարիքն լինիցին, ընդ նոյն արահետս վրիպեալք 'ի ճշմարտութենէն՝ ըզնոյն բաջաղանս այլովք պատմութեամբք կարկատեցին, որպէս թէ

* Ὕλη նիւթ. ἰλύς մրուր:

'ի մէտջէ 'ի հօրէ երկու որդիք ծը-
նան . մին բարի՝ և բարեաց արարիչ,
և մին չար՝ և չարեաց գործօն : 'Ի
նոյն խաւարափ անկեալ և աղանդոցն,
զոր Թշնամին իբրեւ զորոմն 'ի մէջ
ցորենոյ սերմանեաց, զի կեսքն երկս
արմատս դնէին, բարւոյ և արդա-
րոյ և չարի . և այլքն երկուս բար-
ւոյ և չարի . և ոմանք եւԹն :

Եւ արդ եկեղեցւոյ Աստուծոյ
գործ այն է, զարտաքինսն. իրօք
ճշմարտուԹեան առանց գրոց յան-
դիմանել, և զկարծեալսն ներքինս
և ոչ ճշմարտեալս՝ գրովք սրբովք
յանդիմանել :

Զհիւղայն կարծիս, որովք Յոյնքն
մոլորեցան, բաւական համարեսջ-
ջուք առաջնոյ բանիցն յանդիմա-
նուԹեամբ վճարել . և ընդ Պար-
սից քէշէին գաօղս, ապաւինեալ 'ի
շնորհսն Աստուծոյ, մատիցուք 'ի
պայքար :

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

# ԽԳԺ

## ՔԷՇԻՆ ՊԱՐՍԻՑ

Ա. ՄԻՆՉ չեւ բնաւ էր ինչ, ամեն, ոչ երկինք և ոչ երկիր և ոչ այլ ինչ արարածք՝ որ յերկինս կամ յերկրի, Զրուան ոմն անուն էր, որ թարգմանի բախտ կամ փառք: Զհազար ամ յաշտ արար՝ զի թերեւս որդի մի լինիցի նմա, որում անուն Որմիզդ, որ զերկինս և զերկիր և զամենայն որ 'ի նոսա՝ արարիցէ. և յետ հազար ամի յաշտ առնելոյ՝ սկսաւ ածել զմտաւ, ասէ. օգո՞ւտ ինչ իցէ յաշտս զոր առնեմ, և լինիցի՞ ինձ որդի Որմիզդ, եթէ 'ի զուր ինչ ջանայցեմ: Եւ մինչ դեռ նա զայս խորհէր, Որմիզդ և Արհմն յղեցան յարգանդի մօր իւրեանց. Որմիզդն 'ի յաշտն առնե-

լոյ, և Արհմն 'ի յերկուանալոյ ան-
տի: Ապա իմացեալ Զրուանայ, ա-
սէ. երկու որդիք են յորովայնի
անդ, որ ոք 'ի նոցանէ վաղ առ իս
հասցէ՝ զնա թագաւոր արարից. և
ծանուցեալ Որմզդի զխորհուրդ ս-
հօրն՝ յայտնեաց Արհմենին. ասէ,
Զրուան հայր մեր խորհեցաւ՝ թէ
ոք 'ի մէնջ վաղ առ նա երթիցէ,
զնա թագաւորեցուսցէ: Եւ զայն
լուեալ Արհմենին՝ ծակեաց զորո-
վայնն, և ել եկաց առաջի հօրն:
Եւ տեսեալ զնա Զրուանայ, ոչ
գիտաց եթէ ո ոք իցէ. և հարցա-
նէր՝ եթէ ո՞վ ես դու: Եւ նա ա-
սէ. ես եմ որդին քո: Ասէ ցնա
Զրուան. իմ որդին անուշահոտ
և լուսաւոր է, և դու խաւարին և
ժանդահոտ ես: Եւ մինչ դեռ նո-
քա զայս ընդ միմեանս խօսէին,
ծնեալ Որմզդ: 'ի ժամու իւրում
լուսաւոր և անուշահոտ, եկն ե-
կաց առաջի Զրուանայ: Եւ տե-
սեալ զնա Զրուանայ, գիտաց՝ ե-
թէ Որմիզդ որդի նորա է, վասն
որոյ զպաշտօն առնէր. և առեալ

զգաստութիւնն՝ զոր 'ի ձեռն իւրում ունէր, որովք զպաշտօն առնէր, եւ ցՈրմիզդ և ասէ. ցայժմ ես վասն քո յաշտ առնէի, յայսմհետէ դու վասն իմ առնիցես: Եւ 'ի տալ Զրուանայ զգաստութիւնն ցՈրմիզդ և օրհնել զնա, մատուցեալ Արհմենի առաջի Զրուանայ՝ ասէ ցնա. ո՞չ այնպէս ուխտեցեր՝ թէ ո ոք յերկուց որդոցն իմոց յառաջ առ իս հասցէ, զնա թագաւոր արարից: Եւ Զրուանն առ 'ի չդրժելոյ զուխտն՝ ասէ ցԱրհմնն. ո՛վ սուտ և չարագործ, տուեալ լիցի քեզ թագաւորութիւնն ինն հազար ամի, և զՈրմիզդ 'ի վերայ քո արքայ կացուցեալ. և յետ ինն հազար ամի Որմիզդ թագաւորեսցէ, և զինչ կամիցի առնել՝ արասցէ: Ցայնժամ սկսան Որմիզդ և Արհմնն առնել արարածս. և ամենայն ինչ՝ զոր Որմիզդն առնէր՝ բարի էր և ուղիղ, և զոր ինչ Արհմնն գործէր՝ չար էր և թիւր:

Բ. ԱՅՍՊԻՍԻ անհաւատ և զանգապաշտանաց բանից տխմարաց մե֊

տուոց կարկատելոց՝ չէր աղտոտ ամե֊նեւին ընաւ առնել պատասխանի. զի բաւական էր իւրեանց իսկ ան֊մտութիւնն յանդիմանել զնոսա անդստին 'ի նոցին բանից՝ որ ընդ֊միմեանս կռուին, և միմեանց հա֊կառակ են : Բայց քանզի այսու իմն մեծարոյ երեւելին առաջնորդք քե֊չին իւրեանց հնազանդեցելոցն, և խեղդ ընդ անձն արկեալ՝ ձգեն զնո֊սա 'ի խորխորատ, հարկ է տալ պատասխանի, և ցուցանել՝ թէ ոչ ինչ աւելի քան զոր Մանի, զոր ինքեանք մոլեցին, ասեն :

Զի նա երկու արմատս բարւոյ և չարի ասէ, և զայն ոչ յղու֊թեամբ և ծննդեամբ, այլ ինքնա֊կացս՝ միմեանց հակառակ. և նոքա զնոյն ասեն՝ անձնջանօք Զրուանայն յղութեամբ և ծննդեամբ : Եւ ե֊թէ նոյն քէշ է երկոցունց, ընդէ՞ր առիցեն մեզ զդանդիկս, եթէ ոչ զի վարուքն զատ են 'ի միմեանց. թէպէտ և կերպարանօք և ոչ ծըն֊մարդութեամբ : Այլ 'ի քէշին մի են երկոքեան. նոքա երկարմա֊

տեանք, և որքա նոյնախոհք. նորա արեւապաշտք, և որքա ծառայք արեգական. նորա ամենայն անշնչոց շունչ կարծեն, և որքա նոյն օրինակ զնոյն իմանան:

Բայց զի Մանի կամեցաւ վերագոյն քան զնոցայն կեղծեօք վարս ցուցանել՝ թէ ամենեւին իսկ ազատ 'ի կարեաց ցանկութեանց իցէ, և ոչ քան զնոցայն միայն՝ այլ և քան զամենայն քեշից, ուստի յանդիմանեալ յաղջկանց խաղաւելոյ՝ մոլ թագերծ մահուամբ պակասեցաւ 'ի կենաց: Որով յայտ է՝ թէ վարուք եւեթ մեկնեալ են 'ի միմեանց. զի նորա կերպարանօղք են, և որքա զեղխք, և յայտ յանդիման անձնագիւրք. այլ կրօնիւք նոյնք և նոյնախոհք:

Գ. ԱՐԴ մեր թողեալ զնոսա, հարցցուք զսոսա: Զորուանն, զոր յառաջ քան զամենայն ինչ ասեն, կատարեա՞լ ոք էր, թէ անկատար: Եթէ ասիցեն՝ եթէ կատարեալ էր, լուիցեն՝ եթէ կատարեալն յումմէ՞ կարօտանայր խնդրել որդի, որ

գոյցէ և զերկինս և զերկիր առնիցէ. զի եթէ կատարեալ էր, ինքն իսկ կարող էր առնել զերկինս և զերկիր: Ապա եթէ անկատար էր, յայտ է՝ թէ էր ոմն 'ի վեր քան զնա, որ զնորա թերակատարութիւնն լնուլ կարէր. և եթէ էր ոք 'ի վեր քան զնա, նմա պարտ էր առնել զերկինս և զերկիր և զամենայն որ 'ի նոսա՝ առ 'ի ցուցանելոյ զիւր զկատարելութիւնն և զօրութիւն. և ոչ Զրուանայ որդւոյ շնորհել, որ զերկինս և զերկիր և զամենայն որ 'ի նոսա՝ առնիցէ:

Այլ, ասեն, փառաց առնել ըզյաշտն:

Հարցցուք. փառքն յումմէքէ՞ աջողեալ էին նմա, թէ վասն զի մշտնջենաւորն էր՝ փառաւորէր: Եթէ յումմէքէ պարգեւեալ էին նմա փառքն, հարկ է կարծել՝ եթէ էր ոմն 'ի վեր քան զնա զօրագոյն և փառաւորագոյն, ուստի 'ի նա փառքն հասին: Ապա եթէ չէր ոք 'ի վեր քան զնա, 'ի զուր էր դյաշտն հազարամեան առնել. զի

փառքն ոչ եթէ անձնաւոր ինչ են, այլ 'ի յաջողութենէ ուրուք անուանելին փառք, որպէս 'ի չաջողութենէ ուրուք անուանի թշուառութիւն. և երկոքեան 'ի դիպաց արգասիք են, և ոչ անձանց հաստատութիւնք։

Եւ այլ եւս. զի եթէ արեգակն և լուսին չեւ եւս էին լեալ, որով ժամքն և աւուրք և ամիսք և տարիք կարգէին, հապա ամն ուստի՞ երեւէր. զի չէին 'ի միջի լուսաւորքն, որք զթիւ աւուրց և ամսոց և տարեաց կարգէին. այլ յայտ է՝ թէ անմտութեամբ լի են բաջաղանքն։

Դարձեալ թէ երկինք և երկիր և որ 'ի նոսայն՝ չէին, ո՞ւր առնէր զյաշտն կամ լի՞ւ։ Յորժամ երկիր չէր և ոչ տունկք ինչ որ 'ի նմանէ, զպարսմունսն ուստի՞ գտանէր ունել 'ի ձեռին. կամ բնաւ զի՞նչ խուկ յաղէր, զի անասունք չեւ եւս էին արարեալ։ Եւ որ քան զամենայն անմտագոյն է, զհազար ամ, ասեն, յաշտ արար. և յետ հա-

զօր ամէն յերկուացաւ, ասէ՝ թէ լինիցի՞ ինձ որդի Որմիզդ, և եթէ չլինիցի, և 'ի զուր ինչ վաստակի-ցիմ: Եւ այնու ցուցանէ՝ թէ տկար էր Զրուանն և կարօտ և առանց գիտութեան. և պատճառք չա-րեացն նոյն է, և ոչ Արհմն: Զի եթէ նորա չէր յերկուացեալ, որ-պէս ասենն, Արհմնն ոչ լինէր՝ զոր չարեացն արարիչ համբաւեն. այլ ինքն երկմտեալ, որ անհնարաւոր է և լի անկարգութեամբ:

Զի ոչ երբէք 'ի միոջէ աղբերէ երկու բղխմունք ելանեն, մինն քաղցր և միւսն դառն. և ոչ 'ի միոջէ ծառոյ երկու պտուղք՝ մին անոյշ և մին դաժան: Արդ եթէ քաղցր գիտեն զԶրուանն, ոչ պարտին զդառն պտուղն զԱրհմն 'ի նմանէ համարել. և եթէ դառն համարին, չէ պատճառ զքաղցր պտուղն զՈրմիզդ 'ի նմանէ դնել: Եւ 'ի դէպ ելանէ նոցա աստուա-ծականն բարբառն, որ ասէ. կամ արարէք զծառն քաղցր, և զպտ-ուղ նորա քաղցր. և կամ արա-

բեք զծառն գառն, և զպտուղ նո-
րա գառն. զի 'ի ծառոյ անտի պը-
տուղն իւր ճանաչի։

Եւ թէ արարածք յիւրաքան-
չիւր յօրինուածս կան, և եր-
բեք զսահմանօքն եղելօք նոցա ոչ
անցանեն, որչափ եւս առաւել
Զրուանն՝ եթէ մշտնջենաւոր ոք
էր, և արարածս առնելոյ հնարս
խնդրէր՝ եթէ անձամբ և թէ այ-
լով և թէ որդւովն՝ որպէս ասենն,
պարտ էր կարգ ինչ ցուցանել և
ոչ անկարգութիւն։

Զի ոչ երբէք տեսաք՝ թէ կովք
էշս ծնան, և էշք եզինս, և ոչ
գայլք մաքիս, և ոչ մաքիք աղուէսս,
և ոչ առիւծք ձիս, և ոչ ձիք օձս.
բայց միայն մի ինչ ծնունդ է՝ զոր
մարդիկ հնարեցան արտաքոյ կար-
գաց բնութեան, ծնուցանել 'ի
ձիոց և յիշոց ջորիս. և նոյնք ան-
սերմն և անծնունդ են. զի ոչ յԱս-
տուծոյ կարգեցան՝ այլ 'ի մարդկա-
նէ հնարողութենէ։ Արդ Զրուանն
եթէ արջառ էր, զկարիճն զԱրհմն
զիարդ ծնանէր. և եթէ գայլ էր,

զդատումն զՈրմիզդ հեմ ծնանէր . ոչ ապաքէն մարդկան մտաց բաղձաղանք են ։

Զի և Զրուանն իսկ մարդ լեալ է, այր մի քաջ առ Տիտանօքն . և որպէս սովոր են Յոյնք և Արիք և ամենայն ազգք հեթանոսաց՝ զքաջս առ դիւցազունս ունել, հայեցեալ ընդ այն քէշակարկատին Պարսից՝ թէ որովհետեւ մարդիկ աշխարհիս զնա առ աստուածս ունին, եւ զերկնից իսկ և, զերկրի և զամենայն արարածոց արարչութիւնն 'ի նմանէ կարծեցուցից ։

Եւ զի Ճշմարիտ է բանս, յայտ անտի է՝ զի մարդկօրէն բարուք զքէշն կարկատէ, և յղութեամբ և ծննդեամբ զկրօնան կցկցէ ։ Զի նախ երկուց արարչաց՝ զբարւոյ և զչարի 'ի միոջէ հօրէ զծնունդան համբաւէ . և ապա մայրենի և քուրական առաւականօք զարարած ընտանեացն մածանէ ։ Եւ զայն ոչ վասն այլ իրիք, այլ վասն մարմնասիրութեան և ախորժական ցանկութեանն ։ Քանզի հայեցեալ

յազգն արքական՝ թէ իգասէր էր, ըստ նմին նորին մեղկ բարուցն նմա օրէնս կցկցեալ, զի յորժամ զաստուածոյն իւրեանց լսիցեն՝ թէ յանարժան խառնակութիւնս մըտաբերեցին, և նոքա նոցին նմանեալք՝ զնոյն անառակութիւնս անխտիր գործեսցեն. յորմէ աստուածականն հեռի՝ որ 'ի վեր է։ Զի Աստուծոյ որդի ունել՝ ոչ ամուսնութեամբ վայելէ, այլ միայն ջենսուորութեամբ, որպէս մտաց զբան, և աղբեր զգետ, և հրոյ զջերմութիւն, և արեգական զլուսաւորութիւն։ Եւ ոչ որպէս նոքայն ժտին՝ թէ կարօտեալ էր՝ զի որդի մի լինիցի նմա, որում անուն լիցէ Որմիզդ։

Ո՛վ մոլորութիւն. չեւ ուրեք որդի 'ի միջի, և նա չյղացելոյն և չծնելոյն անուն դնէր։ Ամենայն ծննդոց յետ ծննդեանն դնին անուանք, և նա զիա՞րդ յառաջ քան զծնանելն դնէր նմա անուն Որմիզդ, բայց թէ հաւատայր՝ թէ և արդարև լինէր նմա որդի. և եթէ

հաւատոյր՝ ընդէ՞ր երկմտեաց, և եղեւ երկմտութեամբն պատճառ ծննդեան Արհմենի, ուստի չարիքն յաշխարհ մտին։ Եւ այն են զարմանք՝ զի մինն ՚ի հազարամեայ յաշան առնելոյ հազիւ լինէր, և միւսն յառժամայն յերկմտութենէ անտի։

Դարձեալ որ զայն գիտաց՝ եթէ երկու որդիք են յորովայնի անդ, զայն ընդէ՞ր ոչ ծանեաւ՝ թէ մինն բարի և միւսն չար։ Եւ թէ գիտաց և ոչ եղծ զչարն, ինքն է պատճառ չարին. ապա եթէ զայն չգիտաց, զիա՞րդ լիցէ հաւատալի՝ եթէ զմիւսն ծանեաւ. և եթէ յայնժամ ոչ իմացաւ, յորժամ խաւարին և ժանդահոտ եռես զնա՝ և յայնժամ արդեւք ոչ գիտաց։ Այլ և գիտաց և եռես և արար զխաւարինն թագաւոր. ինքն է պատճառ չարեացն՝ այնու զի ոչ եղծ զչարն, այլ և թագաւորութիւնն եւս ետ նմա ինն հազար ամի։ Եւ ո՞ւմ թագաւորեցոյց զնա, եթէ ոչ բարիաց արարածոցն եղելոցն յՈրմզդայ առ-

'ի չարչարելոյ զնոսա՝ խառնելով 'ի նոսա զեւր չար արարածս ։

Այլ և զՈրմիզդ, ասեն, թագաւորեցոյց 'ի վերայ նորա ։

Եթէ թագաւոր նորա լեալ Որմիզդն, զիա՞րդ զբարիոք արարածսն իւր տայցէ չարչարել ։ Եթէ հայրն յորդոյն արարածս ոչ խնայեաց՝ այնու զի 'ի ձեռս չարին մատնեաց, որդւոյն զեւրան զիա՞րդ ոչ զընդդայցէ ։ Այս ակարութեա՞ն էինչ, թէ առ չարականութեան ։ Եթէ առ ակարութեան չզեղմեղիցէ, ապա ոչ այժմ թագաւորել է նմա, և ոչ 'ի վախճանի՝ որպէս ասենն՝ յաղթել կարէ ։ Իսկ եթէ առ չարակամութեան լիցէ, գտանի զի ոչ միայն հայրն՝ որ թագաւորեցոյց զչարն՝ է պարտ չարեաց, այլ և որդին՝ որ կամակից եղեւ հօրն և համարձակիչ չարին ։

Դարձեալ զի զթագաւորութիւնն որդոյն ետ, մեծում զինն հազարամեան, և միւսումն զանապաւականն, մինչ յորում կարգի կայցէ ։ Զի մինչ չէրն էինչ՝ չէր

իմիք Թագաւոր, քանզի և ոչ ա-
րարիչ իրիք էր. և յորժամ որդիքն
եղեն, նոքա եղեն արարիչք՝ ումն
բարեաց և ումն չարեաց, և նոքին
Թագաւորք՝ ումն ժամանակեան
և ումն յաւիտենական. և նմա
Զրուանն դատարկ յարարչուԹե-
նէ և 'ի ԹագաւորուԹենէ. զի ա-
րարիչ չէ, քանզի չէ իւր արարեալ.
և Թագաւոր չեղեւ, քանզի ո՞յր ա-
րարածոց լինէր Թագաւոր: Եւ
յայտ է՝ Թէ ոչ էր երբէք Զրուանն,
և ոչ է: Զի որ է ոք, կամ արա-
րիչ է կամ արարած: Այդ աս
քանզի ոչ արարիչ է և ոչ արարած,
ոչ երբէք նա Աստուած, և ոչ է և
ոչ լինի:

Դ. ԱՅԼ իբրեւ Զրուանն, ա-
սեն, զայն 'ի մտի խորհեցաւ՝ Թէ
ոք յորդոցն իմոց վաղ առ իս հաս-
ցէ՝ զնա Թագաւոր արարից, գի-
տաց Որմիզդ և զխորհուրդն յայտ-
նեաց Արհմենին:

Թէ զհօրն խորհուրդ ծանեաւ
Որմիզդ, զեղբօրն չարաճճոյ զխոր-
հուրդ ընդէ՞ր ոչ գիտաց՝ Թէ ծա-

կէ զորովայնն և ելանէ, և յառաջ երթայ առնու զԹագաւորուԹիւնն, որ լինելոց էր առ եղեռանէ նմա և արարածոյն իւրոյ, զի նախ յառաջնումն իսկ յետս հարեալ վատԹարեցէ զնա, և ապա զինն հազար ամն զեղջ և ապաշաւ լինեցի առ 'ի գալը հայելոյ իւր յուղիղ յարարածն, զոր աղաւաղեալ կամակորեցէ։ Եւ կամ Զրուանն, որ զերկուց որդոց զպղուԹիւնն զիտաց յորովայնի, յորժամ եկեալ առաջի կայր Արհմնն՝ ընդէ՞ր ոչ ծանեաւ զնա։

Դարձեալ որ զիւր որդին Որմիզդանուշահոտ և լուսաւոր անդէն յորովայնին գիտէր, զմիւս որդին՝ Թէ ժանդահոտ և խաւարին իցէ, ե՞րբ ոչ գիտաց։ Ո՞չ ապաքէն յայտ է՝ եԹէ ոչ իրք հաւաստիք պատմին 'ի նոցանէ, այլ առասպելք կարկատունք։

Եւ միւսն եւս՝ որ քան զամենայն անհաւատագոյնն է, զի մին 'ի հազարամեայ յաշտն առնելոյ հազի լինէր. և միւսն յառժա-

մայն յերկրաւանդաղոյ անտի ։ Եւ եթէ 'ի յերկրաւանդաղոյ անտի եղեւ Աբրահամն որդի, ոչ պարտ էր զնա իւր որդի կոչել. զի եթէ իւր որդի էր, նմին նման գոյր և նոյնակին. կամ թէ բարի էր՝ բարի, կամ թէ չար էր՝ չար ։ Մի՛թէ և նոյնպէս հայրն Զրուանն և բարի՞ էր արդեւք և չար. և 'ի բարւոյ երակէն նորա բարւոք որդին եղեւ, և 'ի չար մասնէն նորա չարն ։ Եւ թէ այնպէս ինչ ոչ էր, ապա և ոչ նա զչարն իւր որդի կոչէր, և ոչ թագաւորութիւն տայր նմա ։ Այլ թէ ինքն բարի էր, զչարն եղծանէր և բարւոյն տայր զթագաւորութիւնն. որով ինքն քաջանուն լինէր, և զբարի որդին իւր զՈրմիզդ չառնէր միշտ սրտառուչ ։ Այլ յայսմ ամենայնէ յայտ է՝ եթէ ոչ երբէք լեալ է Զրուանայ հայր աստուածոց, և ոչ տուիչ թագաւորութեանց ։

Ե. ԴԻԱՐՁԵԱԼ ասեն. զբարութիւնն զոր 'ի ձեռին ունէր՝ ցորդին իւր ցՈրմիզդ ետ, և ասէ.

ցայժմ եւ վասն քոյ յաշտ առնէի, յայսմ հետէ դու վասն իմ առնիցես :

Արդ եթէ նա վասն նորա յաշտ առնէր, զի որդի լինիցի նմա, իսկ Որմիզդ վասն նորա յո՞ր սակս առնէր . մի՛ թէ կասկած ինչ ուտանէք էր նմա , և այնր աղագաւ պատուիրէր նմա վասն իւր յաշտ առնել . մի՛ թէ յորմէ զորդի՞ն խնդրեաց , թէ գուցէ ընդ որդւոյն տալոյ՝ զնա բաժ առնուցու : Եթէ այն ինչ 'ի մտի էր նորա , բարեկամունքն ինչ ոչ կարէին օգնել . և ի տալ զբարեխաւսութիւն չասաց սա՝ թէ դու ինձ յաշտ առնիցես . զի ցուցցէ թէ էր ոմն՝ որում նա վասն որդւոյն յաշտ առնէր . և որդւոյն պատուիրեաց վասն իւր նմին յաշտ առնել :

Եւ եթէ էր ոք 'ի վեր քան զնա և քան զորդին , որում զյաշտոն առնէին , զնա պարտ էր իմանալ պատճառ իւրեանց և արարիչ ամենեցուն , և ոչ զՋրուան պատճառ Որմզդի և Արհմենի , և զնա-

սա արարիչ չարեաց. և բարեաց ։ Քան Զրուանայ որդի արարիչ տայր, որ 'ի վերն քան զԶրուանն էր, ինքն իսկ իւրովի չկարէր զերկինս և զերկիր և որ ինչ 'ի նոսա՝ առնել, որպէս յառաջագոյնն ասացաւ, և զեւր զօրութիւնն և զբարերարութիւնն ցուցանել ։ Կամ թէ յորդոյն իւրմէ Արհմենայ կասկած ինչ էր նմա, և վասն այնորիկ զթագաւորութիւնն յՈրմիզդ տայր, զի նոքօք յաշտ արարեալ վերագունին՝ անկասկած լինիցի, ապաքէն պարտ էր ումեք 'ի միջի լինել, որում զյաշտն առնէր ։ Եւ եթէ էր ոք 'ի միջի՝ որում օրէն էր զյաշտն առնել, ապա Զրուանն չէր միշտնջենաւոր, այլ յումեքէ եղեալ ։ Եւ պարտ է խնդրել յումմէ նայն եղեւ, և ով էր՝ ում ինքն զյաշտն առնէր, և ով այն՝ որում որդոյն հրամայեաց վասն իւր յաշտ առնել ։ Զի ոչ է մարթ ումեք սկիզբն առնուլ լինելոյ, եթէ ոչ յայլմէ առնուցու զլինելն. և Աստուած միայն կարող էցէ առնել

յոչընչէ ինչ որպէս և կամի ։ Եւ արդ մի՛ լիցի որ զԶրուանն ասար, եթէ ոչ Աստուած, որում՝ և զյաջողն առնէր. որ և որդի այնպիսի եւս նմա, զի զերկինս և զերկիր և որ 'ի նոսա՝ առնիցէ ։ Եւ այն են զարմանք՝ զի ինքն ոչ արար, և որդոյն Զրուանայ կարող է տալ զառնելն ։

Այլ չէր ոք 'ի միջի, ասեն, որում Զրուան զյաջողն առնէր. եթէ այնպէս իցէ, և ոչ Զրուանն իսկ էր. և մեծի ծաղու արժանի է, զի չէրն չէին վասն չէին յաջող առնէր ։

Զ. ԱՅԼ թէ և բախտ եւս էր՝ որպէս ասենն՝ Զրուանն, ապաքէն ուրուք բախտ էր. և ո՞վ էր արդեւք՝ ուր բախտն էր ։ Զի բախտ անձնաւոր ինչ չէ, այլ դէպք աջողութեան. որպէս յարդարութենէն արդարն կոչի, և 'ի քաջութենէն քաջն, նոյնպէս և 'ի փառաւորութենէ անուն բախտաւոր ։ Արդ եթէ բախտ էր Զրուանն՝ չէր ինչ անձնաւոր. ուստի յայտ

է՝ թէ բնաւ և էր իսկ ոչ Զրուանն ։

Եւ եթէ՝ որպէս ասեն՝ 'ի յերկուանալոյ անտի յղացաւ Արհմն, յառաջնումն իսկ պարտ էր նմա յերկուանալն՝ զի թող անդէն եւ ընդ եւ լինէր նմա որդի, և ոչ հազար ամ տառապել և յաշտ առնել՝ զի որդի ծնցի ։ Սակայն։ եղեւ նմա թէ չար և եթէ բարի, և զչարութիւնն յիւրոց բարուց առ, և ոչ 'ի ծննդենէ անտի. քանզի չէր մարթ միում արգանդի զչարեացն գործօնեայ և զբարեացն արարիչ ընդունել ։ Զի եթէ չար էր, չարին եւեթ պարտէր ասպնջական լինել. և եթէ բարի էր, բարւոյն ։ Քանզի բարին և չար 'ի միում ամկանել ոչ մարթէին, որպէս զի ոչ գայլք և գառինք 'ի միջէ արգանդէ ծնանին. զորոց զբարւոյն կողմն յՈրմզդէ գնեն, զարջառաց և զոչխարէ և զայլոց պիտանացուաց. և զչարին կողմն յԱրհմնայն, զգայլոց և զգազանաց և զձձեաց տեսակարաց ։ Եւ զայն ոչ գիտեն՝ թէ որպէս միատասակարացն ընդ անմիտա-

սակարան չմարթի բնակել, նոյն-պէս և ոչ բարւոյն ընդ չարին մար-թէր 'ի միում արգանդի յղենալ։ Զի որ օրինակ չէ մարթ զհուր և զջուր 'ի մի վայր առնել՝ թէ դու-ցէ յոլովեալ կողմն ապականիչ ընկերին իւրում լինիցի, նոյնպէս և ոչ բարւոյն և չարի 'ի մի վայր մտանել հնար էր. ապա թէ ոչ, կամ նա զսա ապականէր, կամ սա զնա։

Արդ եթէ 'ի սերմանէ իցեն որ-դիքն, չմարթէր միում երկուս սեր-մանս հակառակ միմեանց արկա-նել. նա և ոչ միում արգանդի եր-կուս սերմանս այլ և այլ ընդու-նել։ Զի թէպէտ և բազում արք 'ի մի կին մերձենայցեն՝ այլ ոչ եթէ ամենեցուն սերմանքն կռուիցին. քանզի առաջին անկեալ սերմն զայլսն խտրէ զաւելորդս 'ի բաց թը-քանէ։ Եւ զիա՞րդ էր՝ զի այն ար-գանդ երկուս սերմանս միմեանց թշնամիս ընդունէր։

Եւ դարձեալ ընդէ՞ր ոչ յաղ-թեաց յաշխարհածին ծննդոցն, և եղեւ

արգել յերկնաւորական ծննդեանն. այլ իջեալ միածնանց թշնամիքն հաշտութեամբ խաղաղնել 'ի միում արգանդի գաւէին: Նա և հայրն եթէ երկուս որդիս գիտէր յորովայնին՝ զմին քարի և զմիւսն չար, ոչ խառն 'ի խուռն պարտ էր խոստանալ զթագաւորութիւնն, այլ այնմ միայն՝ վասն որոյ զյաշտն առնէր:

Բայց առաքէն և Որմիզդն մինչ չեւ ծնեալ էր՝ թերակատար էր. և զիա՞րդ թերակատարն զխորհուրդըն հայրենի իմացաւ. զի որ զխորհուրդս ուրուք ճանաչել կարէ, նա 'ի վեր է քան զնա. որ Աստուածոյ միայն է, և ոչ մարդոյ: Ուստի Որմիզդ վերադոյն է քան զհայրն և հզօր և իմաստուն. զի մինչ դեռ յորովայնի էր՝ զխորհուրդ հօրն գիտաց. և ելեալ յորովայնէ անտի՝ կարող եղեւ զերկինս և զերկիր առնել, զոր հայրն ոչ կարաց առնել:

Եւ արդ՝ որ այնչափ հզօր և իմաստունն էր քան զհայրն, գտանի վատթարագոյն՝ զի 'ի վատթարէն խաբեցաւ; այնու զի զխորհուրդ

հօրն յայտնեաց նմա՝ ընդ որում անհաշտ թշնամութիւնն պարտ էր ունել և ոչ բարեկամութիւն ։

Դարձեալ՝ թէ ծակել ևս պարտ ինչ էր զորովայնն և ելանել, նմա պարտ էր՝ որ զխորհուրդ հօրն իմացաւ. զի թող ինքն նախ երթայր և առնոյր զթագաւորութիւնն, և ոչ Արհմննայ՝ որ ոչ զխորհուրդ հօրն գիտէր, և ոչ թագաւորութեանն ինչ անգ էր ։ Բայց թէ ծակեաց զորովայնն, թերևս և սպան իսկ զմայրն. զոր պարտ է խնդրել՝ թէ արդարև արդեւք մայր գո՞յր նոցա ։

Այլ ուստի՞ յայտ իցէ՝ թէ մայր գոյր. մանաւանդ զի ասեն իսկ՝ թէ մինչ չեւ էր ինչ բնաւ, ոչ երկինք և ոչ երկիր, Զրուան միայն էր. որ մեծի ծաղու արժանի է՝ եթէ ինքն հայր իցէ և ինքն մայր, և նոյն սերմանաբեր և նոյն սերմնընկալ ։ Եւ որ ևս վատթարագոյնն է, երբեւ ծակեաց, ասեն, Արհմնն զորովայնն և ելն եկաց առաջի հօրն, ոչ ծանեաւ զնա հայրն ։ Արդ զի

ա՞րդ ոչ ճանաչէր , զի ոք ուրեք չէր՝ մինչ ինքնն միայն էր . ո՞չ ապաքէն յայտ էր՝ թէ որ առ այն եկն , մի ոք յորդոցն նորա էր . և զատանի փառա_ ւորագոյն ևս քան զվատաթարն , զի նա զնա ծանեաւ , և սա զնա ոչ ծանեաւ , և յուրաստ էր յորդոյ անտի՝ թէ իմ որդին անուշահոտ և լուսաւոր է , և դու խաւարին և ժանդահոտ ես : Եւ զի՞արդ ոչ էր նորա որդի , որ ընդ բարուրք ու_ դոյն նորա 'ի նմին արգանդի յղա_ ցեալ էր . և զնմանէ յուրաստ էր՝ թէ չես դու իմ որդի , և զմիւսմէն խոստովանի՝ թէ որդի իմ է : Եւ և թէ իբրև 'ի չարէ յուրացաւ էր , ապա և յղութեանն զնա չէր պարտ արժանի առնել , այլ անդէն իբրև 'ի չարէ խորշել և սատակել . և ոչ միայն զնա , այլ և զՈրմիզդ՝ որ ընդ խորհուրդան 'ի վեր եհան :

Ի . ԱՅԼ և միւսն ևս սատա_ նայագոյն է՝ զոր ասենն , թէ և զարարչութիւն ետ նմա՝ առնել վասն իւր յաջող , իբր ոչ եթէ յՈրմիզդի կամ 'ի յաղթէն էր զօրութիւնն՝

այլ 'ի պատուիրանին : Զի եթէ ինքն հաւատարիմ էր լսելի լինելոյ, ապա աւելորդ իմն էր զպատուիրանն 'ի ձեռին ունել. և եթէ ինքն չէր արժանի, և ոչ պատուիրանքն բաւական էին արժանի առնել յաղելոյ զանարժանն. զի բարեմտութիւն ունել և յաջող առնել՝ մարդկան գործ է և ոչ Աստուծոյ : Իսկ եթէ նա Աստուած էր, և կարող էր զերկինս և զերկիր առնել, զի՞նչ պիտոյ էր նմա բարեմտութիւն ունել և յաջող առնել, զի զհայրն 'ի կասկածանացն ապրեցուցէ : Որ զերկինս և զերկիր կարող էր առնել առանց բարեմտանացն, զհայրն զիա՞րդ ոչ կարէր անհոգ առնել առանց պատուիրանացն : Եւ արդ յայտ եղեւ՝ թէ և հայրն անմիտ և տկար և յայլ ապականեան էր, և որդին նոյնպէս տկար և անմիտ . զի ոչ նա՝ որդի առանց յաջող առնելոյ կարաց ծնանել, և ոչ որդին՝ առանց զպատուիրանին 'ի ձեռն առնլոյ կարաց զնա ազատ առնել 'ի կասկածանաց :

Ը. ՆԱ և ըլկանաց եւս չարին

երկոքին պատճառօք եղեն, չարչա-
րելոյ զկատարուածք արարածս բարուոյն :
Զի Որմիզդ, ասեն, որ ինչ բարի
էր՝ զայն առնէր, և արս արդարս
և բարեգործս, և Արհմենն զչար
արարածս և զդեւս :

Արդ՝ եթէ դեւքն չարի արա-
րածք և չարք էին բնութեամբ, և
ոչ մի ոք 'ի նոցանէ բարի ինչ երբէք
իմանալ կարէր. նա և ոչ Արհմենն
իսկ գլխովին : Բայց արդ տեսա-
նեմք, զի միումն՝ որ կարի վայե-
լուչն իսկ է 'ի մէջ արարածոց, որ-
պէս ասեն, Արհմենն եղեւ հնարա-
գիւտ լինելոյ : Իբրեւ եւս, ասեն,
թէ արարածս գեղեցիկս արար Որ-
միզդ, և լոյս չգիտաց առնել, խոր-
հեցաւ ընդ դեւս՝ ասէ, զինչ օ-
գուտ է Որմզդի, զի այնպիսի գե-
ղեցիկ արարածս արար՝ և 'ի խա-
ւարի կան, զի լոյս ոչ գիտաց առ-
նել : Արդ եթէ իմաստուն էր, ընդ
մօրն մտանէր, և արեգակն որդի լի-
նէր. և ընդ քեռն անկանէր, և
լուսին ծնանէր. և պատուէր տայր՝
զի մի' ոք զխորհուրդն 'ի վեր հան-

ցէ։ Զայն լուեալ Մահմետայ դիւին՝ վաղվաղակի առ Որմիզդ հասանէր, և զխորհուրդն նմա ՚ի վեր հանէր։ Ո՜վ անմտութիւն և անհամ մոլորութիւն. որ զերկնից և զերկրի և զամենայնի՝ որ ՚ի նոսա՝ զհանգամանան առնելոյ կարաց գտանել, զամկաւին ինչ զհայթայթանացն հնարս չմարթէր իմանալ։ Եւ այնու ոչ միայն զՈրմիզդ անմիտ առնէն, այլ և զԱրհմնն՝ բարի բարի արարածոցն հնարագիւտ։

Որպէս և զմիւս եւս ասեն՝ թէ Արհմնն ասաց, ոչ եթէ չկարեմ առնել բարի ինչ, այլ չկամիմ. և առ ՚ի հաստատութեն զբանն առնելոյ՝ արար սիրամարգ։ Տեսանեմս զի կամօք է չար՝ և ոչ ՚ի ծնէ։

Արդ զի՞նչ պայծառագոյն քան զլոյս կայցէ, որում Արհմնն հնարագիւտ եղեւ. կամ զի՞նչ գեղեցկագոյն քան զսիրամարգ՝ զոր առ ՚ի ցուցանելոյ զգեղեցկագործութիւնն արար։ Եւ այսու յայտ է՝ զի թէ չարոք էր բնութեամբ Արհմնըն, ոչ հնարագիւտ լուսոյ լի-

նէր, և ոչ արարիչ գեղեցկութեան-
նա և թէ դեւք բնութեամբ չարք
էին, չէր հնար Մահմեայն հան-
դամանաց լուսոյն առնելոյ գուշակ
լինել, որում ցայժմ պաշտօնեայք
այնր քէշի երկիցս յաւուր զոհս մա-
տուցանեն. ուստի յանդիմանեալ
կշտամբին՝ թէ և նոքա դիւապաշտք
են. և դեւքն ոչ չարք 'ի բնէ, այլ
կամօք: Եւ եթէ ինքեանք դիւի
զոհս մատուցանեն, որո՞վ երեսօք
զդիւապաշտան հալածիցեն: Տեսա-
նե՞ս զի ամենայն ինչ, որ 'ի նոցանէ
ասի, առասպելք են և մնոտի պատ-
մութիւնք:

Թ. ԴԱՐՁԵԱԼ նոքին որ
զլուսաւորացն արարած յայտնիւ
պատճառանաց դնեն, շփոթեալ զայս
բանս՝ այլ ինչ պատճառ լինելոյ ա-
րեգական մուծանեն: Արհմնն,
ասեն, զՈրմիզդ 'ի ճաշ կոչեաց. և
եկեալ Որմզդի՝ չկամեցաւ զճաշն
ուտել, եթէ ոչ նախ որդիքն նոցա
կռուիցեն: Եւ 'ի խեթկել որդւոյն
Արհմենի զորդին Որմզդի, 'ի խըն-
դիր եղեն դատաւորի և ոչ գտին.

տալս տուեալ տրատին զարեգական ,
զի լիցի նոցա դատաւոր ։

Անդ հնարագիւտ լինելոյ տրե-
դական տանն զԱրհմն · և տատ
յայտնի իսկ արարչականց լուսոյ ։
Եւ եթէ այլ ոք չգտոյր դատաւոր ,
և առ հայրն չկարէին երթալ ,
կամ առ այն՝ որում հայրն և որդին
յաշտ առնէին ըստ առասպելին ։

Եւ արդ զիարդ լիցին Թշնամիք
միմեանց Որմիզդն և Արհմն՝ որք
՚ի միում արգանդի գոյացին , և
՚ի միմեանց ճաշ երթային , և իրե-
րաց գործակցութեամբ զարեգակն
ստեղծեալ՝ դատաւոր կացուցա-
նէին ։ Արդ զմի՝ Զրադաշտ ամն
զեղխագործութեան դնէ , եթէ ՚ի
մայրենի և ՚ի քեռական առակա-
նաց արեգակն և լուսին արարան ,
զի ընդ այն հայեցեալ ազգին՝ ՚ի
նոյն պղծութիւնս անխտիր լինի-
ցին · և զմիւսն՝ վասն զամօթն ծած-
կելոյ համբաւէ՝ թէ վասն դատա-
ւորութեանն տրայրին ։ Եւ քանզի
ընդ գլովք չէն կրօնքն , երբեմն
զայն ասեն , և այնու խաբեն · և

ներքեմն զայս, և տաքին պատարեն զտոխմարս : Բայց թէ աստուած էր Որմիզդն, յոչընչէ կարող էր առնել զլուսաւորսն՝ որպէս զերկինս և զերկիր, և ոչ 'ի ժանդագործութենէ, կամ առ 'ի չգոյէ դասաւորի :

Ժ. ԴԱՐՁԵԱԼ միւս եւս խիմն ասեն, որ ամենեւին չէ հաւատալի՝, թէ իբրեւ մեռանէր Որմիզդ՝ զսերմն իւր յաղբիւր մի արկ, և մօտ 'ի վախճան յայն սերմանէ կոյս մի ծնանելոց է, և 'ի նմանէ որդի եղեալ՝ հարկանէ զբազումս 'ի զօրացն Արհմենի. և երկու եւս նոյնպիսիք նոյնգունակ եղեալք, հարկանեն զնորա զօրսն և սպառեն :

Նախ այնու յանդիմանին, զի ջուր՝ սերմանն ոչ պահիչ է, այլ կորուսիչ : Եւ ապա միւսանգն կշտամբին. քան աղբերն զսերմնն կենդանի տայր պահել՝ զինքն ընդէ՞ր ոչ զօրեաց. պահել կենդանի, այլ այնպիսւոյ բարւոյ աստուծոյ որդի՝ 'ի չարէն որդւոյն սատակեցաւ : Եւ յայտ է՝ թէ ոչք յանկածութեանն

յաղթեցին բարւոյն և որդւոյ նորա, և ՚ի վախճանի նոքին բռնանալոց են, որոց այնչափ անչափ զօրս համարէին:

Դարձեալ՝ եթէ աստուածք նոցա մանկանացուք էին, ինքեանք յարութեան ակն զի՞արդ ունէին. և մանաւանդ երեքմասնեանն յարութեան՝ զոր չէ պարտ յարութիւն համարել, այլ չյարութիւն: Բայց թէ արդարեւ՝ որպէս ասենն՝ թէ որդին մեռաւ, և յՈրմզդէ և ՚ի միւսմէ որդւոյն նորա ՚ի խորաշեալ չէր օրէն թերահաւատ լինել՝ թէ չմեռանիցին. որովհետեւ միանգամ ամռւանաւորաց և մահկանացուաց ազգ է տոհմ աստուածոց նոցա:

Եւ զայնպիսի աստուածս ոչ աստուածս պարտ է ունել, այլ առ չաստուածս: Զի որ ճշմարիտ Աստուածն է, զամենայն ինչ զիւր մշտնջենաւորութեամբ ունի. որպէս զէութիւնն, նոյնպէս և զյաւէժ կենդանութիւնն, և զորդին միշտ ընդ իւր ունել՝ առանց երբեք

պատճառանաց և միջնորդու-
թեան. և զպարզութիւնն ոչ 'ի
հայթայթանաց, այլ 'ի կամակար
կարողութենէ: Եւ ոչ զոք ունիմք
հակառակ՝ թէ ինքն բարեաց արա-
րիչ իցէ և միւսն չարեաց. որպէս
նոքա Որմզդի զբարի արարածն
գնեն և Արհմենի զչարսն. զոր ոչ
կարեն ցուցանել, թէ հաւաստեա-
հայիցին, չար ինչ արարած՝ որ 'ի
բնէ չար իցէ, ոչ զԱրհմենն և ոչ
զդեւս՝ զոր նմա արարածս գնեն.
որպէս բազում անգամ յոգնագոյն
օրինակօք ոչ մոռացաք յառաջին
ճառսն յայտ առնել:

Այլ թէ Արհմենն չար կարծիցի
նոցա, վասն զխարամանի անուանն
յանձինն կրելոյ՝ առ 'ի յարեւէ զարե-
գակնատենչիկսն արկանելոյ, ուս-
տի և զանունն իսկ զխարամանոյ
առ, նոյնպէս և սատանայն անուն՝
ոչ բնութեան ինչ անուն, այլ բա-
րուց, որպէս 'ի բարութենէ ոք բա-
րի կոչի, և 'ի չարութենէ չար. և
այն ոչ եթէ բնածին բարք են, այլ
եկամուտս: Եւ յայտ անուն է, զի

Թռչունքն ընդ ամենուագոյն Թըռ-չունեան շողայցեն. զորս պարտ էր Որմզդի բարերոյք արարածոցն սա-տակել և ոչ սնուցանել. քանզի նո-րա է երկիր և ջուրք և օդք։

Եւ եթէ գազանք վասն մնասա-կարութեանն ’ի չարէ ումեքէ ա-րարչէ կարծիցին, զմարդիկ առա-ւել արժան է ’ի չարէ արարչէ խմա-նալ, և ոչ զնոսա։ Զի որքա առա-ւել մնասակար են գազանացն՝ քան թէ գազանքն նոցա. զի որքա եղեալ ’ի քաղաքաց և ’ի գիւղից՝ հետա-մուտք լինին կոտորելոյ զգազանսն, և նոքա սրացեալք ’ի լերինս և յանա-պատս ձեռքն անկանել փախս-տականք. յորոց կլուացն և մորթքն արտաքոյ ընտանութեան մարդկան են։

Նոյնպէս և ատամնոցն զխօշնուն մի-այն զմարդոյն առնել, է որ ’ի ծակս, է որ ’ի սորս, է որ ընդ փապարա ներկուր մտեալ զողեն. և եթէ ’ի կա-քի նեղելոյ զնոսա մարդկան՝ մեղանչ-չիցեն, այն մարդկան մնաս է և ոչ նոցա։ Եւ այնու ոչ ’ի չարէ ումե-

քէ պարտ է զգազանսն և զճճիս խմանալ, այլ 'ի միջէ բարւոյ աբարչէ. զկէսսն 'ի պէսս, և ըզկէսսն 'ի զարդ, և զկէսսն զարհուրեցուցիչս՝ վասն զուարապարտ հըպարտութիւն մարդոյն ցածուցանելոյ : Դարձեալ 'ի նոցա վնասակարութիւնն հայեցեալ՝ միմեանց չմեղանչել. զի թէ զնոցայն վնասակարութիւնն՝ որ ոչ խորհրդով լինի՝ առեալ պարտ իցէ, որչափ ևս առաւել զմարդկան մեղանչականութիւն՝ որ խորհրդով և նենգութեամբ լինիցի :

Նա և չքնաղօքն զկծեցուցանէ զմեզ. որպէս լուովն և ճանճիւ և մժխով և գոռեխով, միով և մկամբ, և այլովք նոյնպիսեօք, որք չնչինքն են, և զմեզ աշխատ կարեն առնել : Զի է 'ի նոցանէ՝ որ զմեզ աշխատ առնէ, և է ինչ՝ որ մերումն վնասակար լինի. որպէս և մուկն և ցեց և որդն, և որ ինչ նոցա նմանօղ իցէ : Եւ նորօք ցածուցեալ զնստուցանէ զմիտս մեր. զի յորժամ զփափկեալք՝ թէ և փղքունքն

կարող են մեզ միաստակար լինել. Եղիցուք 'ի տարապայման հպարտութենէ՝ չուտել զանձինս առ մեծագոյնս ։

Դարձեալ՝ և զխնամն եւս Աստուծոյ զմտաւ ածել՝ թէ ուր մտքունքն կարեն մեղանչել մեզ, զի մարդ կարէաք ապրել՝ թէ ընդ սողունս և ընդ գազանս բնակակիցս տարարեալ էր զմեզ ։ Այլ և յայն եւս հայել պարտիմք՝ թէ որչափ անասունս վասն մերոց պիտոյից ընդ մեզ հնազանդեաց, զձիս և զուղտս և զփիղս և զարջառ և զոչխար. և 'ի լերանց և 'ի դաշտաց՝ զայծեամունս և զեղջերուս և զառինս և զկարապս, որոց կէսքն կրելեք են և կէսքն ուտելեք ։

Եւ զայն եւս գիտել է մեզ, թէ որոց նա կամի՝ յաղթականք կարեմք լինել. և որոց ոչ կամի՝ չկարեմք յաղթել՝ ոչ միայն արդաւորացն, այլ և չնչինոցն ։ Զի՞նչ վատթարագոյն քան զլուն և ըղձուկն կայցէ. և զայն ոչ սատակել կարեմք, և ոչ յաշխարհէ մերժել ։

Եւ այլն եւս ինչ մի 'ի Ջուրս է, և զմեր ակէտս ոչ հարկանիցէ, բայց միայն զի զկծեցուցանիցէ. յորժամ ուսանիցեմք՝ թէ չեմք բաւական զնոսա ապաւել, ծանիցուք զանձանց ակարութիւն, և զիջցուք 'ի զուր հպարտութենէ, և Նմա միայն տացուք զյաղթութիւնն, որ չնչենովքն զմեզ աշխատ առնէ, և զմեծամեծսն հնազանդէ մեզ. զոր օրինակ զփիղս և զուղտս և զառիւծս և զինծս և զյովազս. զորոց զկէսսն 'ի կրելիս, և զկէսսն 'ի զբօսանս ընտելացուցեալ համբուրեցուցանէ:

ԺԲ. ԻՍԿ այլք այլազգ կարծեցին զսատանայէ, թէ Աստուած իսկ զնա չար արար:

Արդ եթէ Աստուծոյ զնա չար արարեալ էր, ընդէ՞ր հալածէ և կեղեքէ զդեւս. եթէ վրէժխնդիրք չարեաց հաստատեցան դեւք, ապա ի՞նչ առնէ եկեղեցի այնոցիկ՝ որ նոքօքն խրատիցին, և հակառակ կամացն Աստուծոյ կայ. զի նա 'ի խրատ արար զնոսա, և սա հա-

լածէ ։ Բայց զի՛ զհալածեալն ոչ
յանձնէ ինչ ումեք՝ այլ յԱստու-
ծոյ, յայտ անտի է. եթէ ոչ նախ
փչեաց Տէրն յերկոտասանեան հոգին.
և եւս իշխանութիւն եւթանասու-
նիցն, ոչ կարէին հանել զդեւս ։
Նա և ինքն իսկ եթէ խրատիչ զե-
աէր զնոսա, ոչ սաստէր 'ի նոսա.
և ոչ աշակերտացն իւրոց հալա-
ծել հրամայէր, որոց իւրն հրաման
տուեալ էր մտանել 'ի մարդիկ ։

Եւ զիա՞րդ իցէ, զի հրեշտակք
երբ լսեն զանուանն Աստուծոյ՝ ու-
րախ լինին, և դեւք ոչ երբէք. այլ
տուայտել, իբրեւ լսեն, քստմնին ։
Եթէ կարծիցէք յանցանաց էին
դեւք, ոչ երբէք զմարդիկ 'ի կռա-
պաշտութիւն յօժարեցուցանէին,
և ոչ 'ի պէսպէս աղանդս վիճա-
փայից և հերձուածողաց. ոչ 'ի
քաշխս բախտից, և ոչ ճակատա-
գրաց, և ոչ կապելոց հրամանաց.
ոչ ընդ ատեալս ուսուցանել՝ թէ նո-
քա ինչ իցեն պատճառք բախտա-
ւորութեան և չուառութեան ։

Եւ զի դիւաց գիւտ է կռապաշ-

տութիւն , վկայէ Պաւղոս՝ թէ ամենայն աստուածք հեթանոսաց դեւք են ։ Եւ երանելին Պաւղոս ասէ , թէ զի՞նչ հաղորդութիւն կայ Քրիստոսի ընդ բելիարայ ։ Եւ ահաւասիկ , որպէս ասենն , հաղորդութիւն կայ նոցա ընդ միմեանս , զի եթէ վասն զի չար արար զնա Աստուած՝ չարչարեցէ , չէ օրէն զնա չար կոչել՝ այլ վրէժխնդիր . զի չար յայնժամ էր , թէ զհրամանն ոչ կատարէր ։

Բայց ընդէ՞ր ոչ նա , այլ հրեշտակ Աստուծոյ էհար զանդրանիկսըն եգիպտացւոց , և բազում անգամ զհրեայսն յանապատի անդ ։ Զի եթէ նա յայն եղեալ էր , ընդէ՞ր ոչ նոյն հարկանէր՝ այլ հրեշտակ ։ Եւ յաւուրս Դաւթի՝ եւթանասուն հազար յերկոտասան ցեղիցն Իսրայէլի , և 'ի բանակէ ասորեստանեայն՝ հարիւր եւթանասուն և հինգ հազար զօրս էհար հրեշտակ Աստուծոյ , և ոչ դեւք ։ Ընդէ՞ր և յաւուրս Յեսուայ որդւոյ Յովսեդեկայ՝ հրեշտակ ասէր

ցանկութեան , որ կայր նմա հա-
կառակ , թէ սաստեսցէ ՚ի քեզ Տէր՝
սատանայ : Ընդէ՞ր և որդիք սատա-
նայի կոչին Հրեայքն՝ վասն զօրի-
նօքն անցանելոյ , եթէ նա կայցէ ՚ի
հրամանին՝ զոր առ , և նոքա ան-
ցին զարտուղութեամբն : Եւ ընտա-
նիք սուտ ընդէ՞ր կոչեցին , որ ար-
դարն կայցէ ՚ի կարգին . զի ոչ ՚ի
նմանէ է չարութիւնն , այլ յայն-
մանէ՝ որ զնա այնպիսի արար . և
զմէ՞ տարաբերեալ ՚ի խաւարին արտաքին :

Այլ՝ ասեն , հանդերձեալ է նմա
խաւարն : Նա աւանիկ ոչ զայն ա-
պաղակէր ընդդէմն դիւաց , այլ թէ
տանջանք պատրաստեալ են նմա :
Զի՞ կայ մեր և քո , ասէ , Որդի Աս-
տուծոյ , զի եկիր աստ յառաջ
քան զժամանակն տանջել զմեզ :
Եւ զի զկատարութիւնն նորա
յայտ առնիցէ , ասէ . ոչ ոք կարէ
առնուլ զգործիս հզօրին , եթէ ոչ
նախ զհզօրն կապիցէ : Արդ ընդէ՞ր
կապէր զնա , եթէ ոչ՝ զի գիտէր
թէ կամօք չարանայ , և յորժամ
կամի՝ կարող է զգօնանալ :

Եթէ 'ի բնէ 'ի չարչարել եղեալ էր զնա՝ ընդէ՞ր բամբասէր չարի անուամբ, որ զբնութիւնն նոյնգունակ որպիսի եղեալ՝ պահէր ։ Նա և ոչ պատժոց արժանի էր, վասն տուողելոյ զբնութիւնն. քանզի և ոչ զհուր որ սպառէ, թէ ընդէ՛ր այրես. և ոչ զջուրս, թէ ընդէ՛ր հեղձուցանէք ։ Եւ միանգամայն և հրամանացն ես հարցուածք սովին մտօք լուծանին ։

ԺԳ. ՀՐԱՄԱՆԱ՞Ւ, ասեն, մեռանելոյն մարդկան, թէ առանց հրամանաց ։

Նախ պարտիմք գիտել՝ թէ զինչ հրամանքն իցեն, և ուսանի բան հրամանացն ընդ աշխարհ տարածեալ իցէ ։

Հրամանն կապեալ վասն մահուան՝ յաստուածատուր գիրս ոչ ուրեք գտանեմք. քանզի Տէրն մահու և կենաց՝ և կարճել իշխէ զհրամանն իւր և երկայնել ։ Որպէս առ Ջրհեղեղաւն ասէ. եղիցին աւուրք կենաց մարդկանս այսորիկ հարիւր և քսան ամ. և վասն բազմութեան

անօրէնութեանն պականեցոյց 'ի
նոցանէ զքաւանն ։ Եւ որպէս առ
Ադամամայրն ասէ . յաւուր յորում
ուտես 'ի պտղոյ ծառոյն , 'ի նմին
մեռանիցիս . և առ իւրում բարերա-
րութեանն , և վասն որդէծնու-
թեան և մարդկան յաշխարհէ ան-
րելոյ , ներեաց նմա ինն հարիւր և
երեսուն ամ , զի մի զեղեցիկ ստեղ-
ծուածն իւր համօրէն ջնջեսցի ։ Եւ
վասն առատատուացն Եզեկիայի առ-
քայի՝ յաւելաւ նմա հնգետասան
ամ ։ Եւ վասն ապաշխարութեան
նինուէացւոցն՝ ոչ կորոյս զքաղաքն
յաւուրն երրորդի ըստ քարոզու-
թեան մարգարէին իւրոյ ։
Եւ ոչ որպէս քաւդեայքն առ-
եղանչմարք , որ և զծննդոց ապա-
ճառս և զմահուանց՝ յաստեղաց
խորհեն 'ի կենդանեաց զնշեն ։ Որպէս
թէ յարժամ ծնանիցին , անդէն
և մահուանքն իւրաքանչիւր ու-
րուք անվրէպ սահմանեսցին . և ըստ
այն ոչ յառաջել ումէք մեռանել
հնար իցէ , և ոչ յամենալ ։
Այլ յանդիմանեն զնոսա և պա-

Թագաւոր լինելոց է. և մինչ դեռ եզն է՝ և ծնանիցի ոք, հզօր և բարենշան գալոց է. և մինչ դեռ խոյն է՝ և ծնանիցի ոք, մեծատուն լինելոց է, և որպէս նոյն Թու և տուեալ է. և յորժամ կարիճն է՝ և ծնանիցի ոք, չար և մեղանչական լինելոց է: Եւ այլքն ևս այլոց ազգի ազգի երկուց պատճառաւք լինին: Որպէս Թէ յորժամ Կրոնոսն յաստեղատունն մտանիցէ, Թագաւոր մեռանի. որ եղեւն իսկ երկիցս, որպէս ասեմն, առ Թէոդոսիւ կայսերբ. և քաղդեայքն այլնդեալ էին՝ Թէ մեռանի Թագաւորն, և նա ոչ մեռաւ, զի յաղԹեցի սափրատուա աստուածպաշտուԹիւնն:

Արդ նախ զայն ասասցեն. ո՞ եհան զայնպիսի երկրաւական անուանս՝ զգիշակեր և զխոտակերս յերկինս, զի պատճառաւք ծննդեան մարդկան լինիցին. զի որ ոք ուրուք պատճառ ծննդեան կարիցէ լինել, նա 'ի վեր քան զնա՝ որոյ պատճառն է՝ պատուոյ լինել իմաստուԹեամբ: Արդ

հաստատակաց մնոջ հայեցեալ, տեսցուք ո՞ 'ի վեր իցէ, մարդն՝ որ անասնոյն տիրէ, թէ անասունն՝ որ մարդոյն 'ի հարկի կայ. և ոչ միայն 'ի հարկի կայ, այլ և կերակուր նորա է: Եւ գազանացն զկէսսն փախըստականս եղեալս տեսանեմք, և զկէսսն յանտառախիտ մայրիս ամրացեալս՝ յորժամ զբարբառ միայն մարդոյն լսիցեն: Քանզի զահ և զերկիւղ մարդոյն՝ արկեալ է արարչին 'ի վերայ գազանացն և սողնոցն և անասնոցն և թռչնոց, վասն տուեալ զնա պատուելոյն. զորոյ և զարարածն նորանշան իմն ընծայեցուցանէ, թէ ստեղծ որպէս ձեռօք, և փչեաց շունչ կենդանի որպէս թէ բերանով. և այնու, զի տուեալ պատուական ցուցանիցէ զնա, յայտ առնէ:

Այլ զի Աստուած 'ի յօդապատ մարմնոց 'ի վեր է, այն յայտնի է ճշմարտից: Եւ եթէ վասն նորա եղեն գազանքն և անասունքն, որպէս փորձ իրացն իսկ ցուցանէ, զի՞արդ էր՝ զի յերկինս ելանէին և

մարդկան ծննդեան պատճառք լինելին. որք այնչափ հեռի են 'ի կենդանութենէ, որչափ ծրագ մի՝ որ 'ի մարդկանէ կազմեալ իցէ լուսաւոր լինել տան 'ի գիշերի: Եւ չկենդանիքն զիա՞րդ կարիցեն կենդանեացն պատճառ ծննդեան լինել:

Այլ թէ չէին կենդանիք, ասեն, և ոչ գնայունք էին. բայց զի գնան, յայտ է՝ թէ կենդանիք են:

Արդ լուիցեն. եթէ ամենայն ինչ որ գնայուն է՝ կենդանի իցէ, ապա և ջուրք որ գնան՝ կենդանի համարեսցին. և կրակ վասն շարժելոյն՝ կենդանի կարծեսցի. և օդք և հողմք վասն շնչելոյն՝ կենդանի համարեսցին. և տունկք և խոտոց բոյսք, որ թէպէտ յամրագնացք են, սակայն աճելովն երեւին՝ թէ գնայունք են. և արդ որպէս ոչ ամենայն գնայուն՝ կենդանութիւն մասաւոր և բանաւոր ունի, նոյնպէս և ոչ արեգակն, և ոչ լուսինն և աստեղք, և ոչ երկինք իսկ՝ ընդ որում նոքա շրջին՝ կենդա-

նութիւն ինչ մտաւոր և բանաւոր ունին։ Այլ երկինք և երկիր անօթք եանեղականք են հաստատեալք յարարչէն, ունել ամփոփ ընդ ինքեամբ զամենայն՝ որ ՚ի միջի նոցա է. և լուսաւորքն իբրև ճրագունք լուցեալք, վասն զխաւարն ՚ի միջոյ մեծի տանս փարատելոյ։ Եւ են հաղկաւորք բնականաւորք, հրամանաւ արարչին իւրեանց, ՚ի վայելս ամենայն կենդանեաց. և իւրեանց ինքեանք չեն, քանզի ոչ գիտեն՝ թէ իցեն և թէ չիցեն։ Որպէս և երկինք և երկիր և ջուրք և փայտք և քարինք են վասն որոց եղենն, և իւրեանց ինքեանք չեն. քանզի ոչ գիտեն՝ եթէ իցեն և թէ չիցեն, այնու զի չեն մտաւորք և բանաւորք։

Դարձեալ, որպէս ասեմն, թէ յորժամ առիւծն իցէ յաստեղատանն՝ թագաւոր ծննդելոց է. թէ այնպէս էր, բազում անգամ բազում թագաւորաց պատահէր ծնանել. զի ոչ մի միայն ծնանի՝ յորժամ առիւծն յաստեղատանն իցէ, այլ բազումք։

Եւ՝ եթէ արդարեւ առիւծն էր պատճառ ծննդեան թագաւորաց, ապա ոչ թագաւորի որդի թագաւոր լինէր, այլ որ ուրուք և գիտէր ծնունդն մտանելոյ առիւծուն յաստեղատունն: Իսկ եթէ ասասնեմք՝ եթէ թագաւորի որդի թագաւոր լինի, որպէս Դաւթայ որդի Սողոմոն 'ի հօրն աթոռ նստաւ, և Նորա որդին 'ի Նորա աթոռ. և մի ըստ միոջէ կարգ թագաւորացն Յուդայ ձգեցաւ մինչեւ ցմակաբայեցիսն: Նոյնպէս զասորեստանեայցն և զբաբելացւոցն՝ որդի 'ի հօրէ առնուին կարգաւ զթագաւորութիւնն: Որպէս և 'ի Սասանայն ումեմնէ՝ սասանականքն որդի 'ի հօրէ կարգաւ առին մինչեւ ցայս օր զթագաւորութիւնն սասանականացն. և չգտաւ առիւծն յերկինս մտեալ յաստեղատունն, զի զթագաւորութիւնն յայլ ազգ ուրեք կարասցէ փոխել յերկրին արեւելից:

ԺԵ. ԵՒ յայտ է՝ թէ որպէ՛ս թագաւորութեանն չէ աստղն պատ-

ճառու, նոյնպէս և ոչ զօրութեանն, և ոչ մեծատուն առնելոյ. մանաւանդ իսկ զի տեսանեմք զմեծատունս աղքատացեալս, և զաղքատս մեծացեալս: Մի՛ թէ զայն եւս կարիցեն ասել՝ թէ մի և նոյն աստղ մեծութեան և աղքատութեան կարէ պատճառք լինել, և զօրութեան և տկարութեան. քանզի և զհզօրս երբեմն երբեմն տկարացեալս տեսանեմք, և զտկարսն զօրացեալս. և զչարսն զգօնացեալս, և զզգօնս չարացեալս: Եւ ո՞ւր իցէ այն, զոր ասենն, եթէ որ ինչ 'ի ճակատագրին գրեալ է հրամանացն, այնմ չէ հնար վրիպել. այլ որ փառաւորն գրեցաւ՝ փառաւոր է, և որ չուառն՝ չուառ. և ուր հրամանքն իցեն և յուսմունք հրամանքն, ըստ այնմ և մեռանին. և վրիպել չէ հնար 'ի սահմանելոյ հրամանէն:

Ո՛ հրաման տկար, և անզօր ասացմանն, զոր և զողքն և աւազակքն կարեն խափանել, յորժամ 'ի վերայ հասանելոյ՝ զոմն յինչից և յա-

րեւէ արկանիցեն ։ Եւ եթէ 'ի սահմանելոյ ինչ հրամանէ իրքն գործիցին , չէ պարտ՝ ոչ թագաւորաց մահու հրամանատալ , և ոչ դատաւորաց քերել և սպանանել զմարդասպանն ․ որք զպատուհասն 'ի վերայ ածելով յոյժ առնեն՝ թէ ոչ ըստ սահմանելոյ ինչ հրամանացն եղանիցին մեղքն մեղանչականացն , այլ 'ի բռնաւորութենէ չարագործութեանն ։

Եւ կամ յորժամ հէն յաշխարհ արշաւեսցէ՝ տեռաղերծ առնել և կոտորել զմարդիկ , մի՛ զօրս ժողովեսցեն , և մի՛ գունդս առ գունդս կազմեսցեն՝ հանելոյ զհէնն յաշխարհէ ․ այլ խրատուսս տացեն՝ թէ հրամանք են աշխարհին 'ի հէնէ կոտորել , մեք ընդէ՞ր դառնայցեմք ընդդէմ հրամանացն ․ այլ գումարելով զզօրսն և հանելով զթշնամին յաշխարհէ , ցուցանեն՝ եթէ ոչ ըստ սահմանելոյ ինչ հրամանի կոտորածքն գործիցին , այլ 'ի բռնաւորութենէ հինին՝ որ եկեալ ժլատութեամբ կոտորէ զաշխարհ , և

մերկանդայ յընչից և յասացուա-ծոց ։

ԺԶ. ԲԱՑՑ զայն ևս գիտել պարտ է՝ թէ զամենայն ինչ զմտաս , որ 'ի մտաստակարաց գործեցի , յա-ռաջագոյն գիտէ Աստուած ։

Եւ եթէ գիտէ , ասեն , զմտաս՝ որ գալոց են 'ի մերայ մարդկան , ընդէ՞ր ոչ արգելուցու ։

Եթէ որչափ մտաս արգելու Աստուած 'ի մարդկանէ՝ այն ոչ ա-մենեցուն յայտնի է , այլ նմա մի-այն՝ որ զամենեցուն զխնամսն իւ-րաքանչիւր ախտոյից բաշխէ ։ Կար-ծէ՞ք երբէք և զմտաս մտաստակա-րացն , զի մի՛ այնպէս երևեսցի՝ թէ չկարիցէ արգելուլ զմտասն ։ Դարձեալ թուլացուցանէ և մտա-ստակարին՝ յագեցուցանել զկամս իւր յընկերին , զի մի՛ թուեսցի ընդ հարկաւ վարել զբանաւորսն , այլ զի յիւրաքանչիւր գործոց անցնիւր հանդէսք երևեսցին ։

Եւ կանխաւ գիտէ զամենայն , և կանխագիտութիւնն չէ պատ-ճառ չարեաց ։ Քանզի և ոչ յոր-

ժամ տեսանիցէ ոք զընկեր իւր ընդ-
լալիրծ տեղիս գնացեալ, և ասիցէ՝
թէ գլորելոց է, նա ինչ եղեւ պատ-
ճառք գլորման ընկերին ։ Եւ ոչ,
յորժամ ընդ աւազակուտ տեղիս
գիմեալ զընկերն ոք տեսանիցէ, և
ասիցէ՝ թէ եղեւն գտանէ, նա ինչ
իցէ պատճառք մասուն ։ Եւ ոչ,
յորժամ զաղնուականի ուրուք զոր-
դի յաղակատանս հասեալ տեսա-
նիցէ ոք, և ասիցէ՝ թէ կորուսա-
նելոց է զինչսն հայրենիս, նա ինչ
իցէ պատճառք վատնելոյ ընչիցն ։
Նոյնպէս և ոչ Աստուծոյ յառաջ-
գիտութիւնն է պատճառք բա-
րեաց կամ չարեաց ։

Գիտէ Աստուած կանխաւ զա-
մենայն. այլ է ինչ՝ զոր կամի, և է
ինչ՝ զոր ոչ կամի ։ Կամեցաւ ածել
ջրհեղեղ, և ոչ իւր այն կամք էին՝
թէ ջրհեղեղաւ մարդիկ և անա-
սունք առ հասարակ սատակիցին,
այլ անարժան խառնիցն ազգին
յանդգնութիւնն ած զնա յայն՝
առնել զոր ոչն կամէր. որպէս ինքն
իսկ ուխտէ մարգարէիւն՝ թէ ոչ

կամիմ զմահ մեղաւորին, այլ զդառ-
նալն նորա և զկեալ։

Կամեր՝ թէ չէր յանցուցեալ
Ադամայ. և քանզի կանխաւ գի-
տէր զյանցանելն, յառաջագոյն
պատուիրեաց նմա՝ չուտել 'ի պըտ-
ղոյ ծառոյն. և զի ոչ անսաց հրա-
մանին, յիրաւի պատժեցաւ։ Կան-
խաւ գիտաց զՅակոբայ՝ թէ առա-
քինի լինելոց է, և զԷսաւայ՝ թէ
յանպիտանութիւնս կործանելոց
է. և վասն այնորիկ մինչ չեւ ծնեալ
էին, և մինչ չեւ մի ինչ բարի կամ
չար գործեալ էին, ասէ. զՅակոբ
սիրեցի և զԷսաւ ատեցի։ Եւ յա-
ռաջագոյն հայեցեալ 'ի նախանձա-
ւորութիւնն Յովսիփայ աղքայի Յու-
դայ, ազդ արար կանխագոյն մար-
գարէիւն՝ թէ յառնելոց է 'ի նա-
ցանէ Թագաւոր, որ զկռապաշտ-
ութիւնն որդւոցն Իսրայելի եղ-
ծանիցէ։ Եւ յառաջագոյն ծանու-
ցեալ զազնուականութիւնն Կիւ-
րոսի պարսկի, կանխաւ գուշա-
կեաց՝ եթէ արձակելոց է զգերիս
ժողովրդեանն։ Եւ յայտ է՝ թէ

կանխաւն գիտել առաւելութիւն է սքանչելի էութեանն ։

ԺԻ. ՋԲԱՄԻՆ կամել և ոչ զչար՝ բարերարութիւն մարդասէր բնութեանն էր. յառաջագոյն հաս-տուցեալ 'ի հաստութիւն փարաւոնի, ասէ. ես խստացուցից զսիրտն փա-րաւոնի ։

Եւ թէ նա խստացոյց, ասեն, ընդէ՞ր եհար հարուածովք զնա և զերկիրն եգիպտացւոց ։

Այլ Առաքեալ մտանէ ջատա-գով Տեառնն իւրոյ՝ թէ ոչ նա խըս-տացոյց զփարաւոն, այլ ինքն ան-ձամբ զանձն ։ Եւ ասելն Աստու-ծոյ՝ թէ ես խստացուցի, այնպիսի ինչ է՝ որպէս որ յորժամ զընկեր իւր կամ զծառայ մեծարիցէ, և նա հպարտացեալ արհամարհիցէ զմեծարիչն. և նա ասիցէ՝ թէ զի՞ զնեմ նմա մեղ, ես անձամբ արա-րի ինձ թշնամանս՝ զի ածի 'ի պա-տիւ զանարժանն ։ Նոյնպէս և զԱս-տուածոյն իմանալի է՝ թէ ես ներե-լովն իմով եդէ պատճառս խստա-նալոյն նորա, զի ոչ յառաջնումն

սատակեցի զանդրանիկն նորա ։

Այլ կամեցաւ, ասէ, Աստուած ցուցանել զբարկութիւնն իւր, և յայտնի առնել զզօրութիւն իւր, զոր ած բազում երկայնմտութեամբ ՚ի վերայ ամանոցն կազմելոց ՚ի կորուստ ։ Ուստի յայտ է՝ թէ երկայնմտութիւնն Աստուծոյ եղեւ պատճառ խստութեան սրտին փարաւոնի, այնու զի զվերջին հարուածն յառաջնումն ոչ ած ՚ի վերայ նորա ։

Այլ զի չէր քարացուցեալ Աստուծոյ զսիրտն փարաւոնի, այնու իմանալի է՝ զի մերթ հաւանէր արձակել զժողովուրդն, և մերթ չհաւանէր ։ Եւ անօթս կազմեալս ՚ի կորուստ ինքեանք զանձինս արարին, և ոչ Աստուած, զորմէ ասէն Առաքեալ՝ եթէ կամի, զի ամենայն մարդիկ կեցցեն, և ՚ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն ։ Եւ ո՛չ արտաքէն և նոքա յամենայն մարդկանէ էին ։

Եւ ոչ որպէս ընդդիմակացն կողմն ասէ՝ եթէ ոչ բառ կամել է, և ոչ

ըստ ընթանալ, այլ ըստ Աստուծոյ ողորմելոյն. զի որում կամի՝ ողորմի, և որում կամի՝ խստանայ: Եւ ըմբերանեալ զդիմակաց կողմն Ե-րանելոյն, ասէ. դու ո՞վ ես, ո՛վ մարդ, որ պահանջես պատասխանի յԱստուծոյ. եթէ և այնպէս ինչ էր, դու ո՞վ էիր՝ որ համարս պահանջէիր յԱստուծոյ. մի՞թէ ասիցէ՞ կաւն ցբրուտն՝ թէ ընդէ՞ր այդպէս ստեղծեր զիս: Բայց զի ոչ այնպէս է, նորին իսկ 'ի նմին թղթի գրեալ՝ ասէ. թէ որում կամիք, ընծայեցուցանէք զանձինս ձեր 'ի հնազանդութիւն, եթէ արդարութեան, և եթէ հնազանդութեան մեղաց: Եւ առ Տիմոթէոս գրեալ՝ ասէ. եթէ ոք սրբէ զանձն իւր, եղեւ նա անօթ կազմեալ պիտանացու 'ի գործ տեառն իւրոյ: Եւ մարգարէն ասէ. եթէ ախորժեսջիք և լուիջիք ինձ, զբարութիւն երկրի կերիջիք:

Եւ այսու ամենայնիւ և այլովք բազմօք յայտ է՝ եթէ ոչ նա անօթս բարկութեան կազմէ 'ի կորուստ, և

ոչ անօթս ողորմութեան 'ի փառս, այլ ինքեանք զանձինս կամ 'ի կորուստ կամ 'ի փառս ։ Եւ զի չիք ակնառութիւն առ 'ի յԱստուծոյ, ասէ․ մի՛ թէ Հրէից միայն Աստուած իցէ՝ և հեթանոսաց ոչ․, այո՛ և հեթանոսաց․ զի նոյն Աստուած է՝ որ արդարացուցանէ զթլփատութիւնն հաւատովք, և զանթլփատութիւնն նովին հաւատովք ։ Եւ դարձեալ՝ թէ զորս կոչեաց ոչ միայն 'ի Հրէից, այլ և 'ի հեթանոսաց ։ Եւ այլուր՝ թէ մի է Տէր, և մի հաւատ, և մի մկրտութիւն, և մի Աստուած 'ի վերոյ ամենեցուն և ընդ ամենեսեան, և ամենայնիւ ։

Դարձեալ՝ յառաջագոյն ստանացեալ զերութիւն ժողովրդեանն, ուխտէր՝ թէ ես խօսեցայ, արդ արարից և ոչ դարձուցից ։ Եւ ոչ թէ իւր այն կամք էին, այլ նոցա ամպարշտութիւնն ած զնա յայն՝ որ ոչն կամէր ։ Եւ եթէ 'ի նմին հեռատութեան յետ ստահակեցն՝ նոցա չէր տարաւացեալ, ոչ մտանէր

զնոսա ՚ի ձեռն թշնամեացն ։ Լաւ համարէր զիւր բանսն շրջել, քան զնոսա ՚ի ձեռս այլազգեաց մատնել. որպէս ՚ի նինուէացւոցն ապաշխարութիւնն հայեցեալ, ոչ կործանեաց զքաղաքն ։

Դարձեալ և զԵրեմիա յառաջագոյն նկատեալ՝ ասէ, մինչ չեւ նկարեալ էիր յորովայնի, ծանեայ ըզքեզ ։ Ծանեայ զքեզ, ասէ. զի ցուցցէ՝ եթէ յառաջագոյն գիտէր թէ որպիսի՛ ոք լինելոց է. և դրոշմեաց զնա ընդ սուրբս այնու՝ զոր ասէ, թէ մինչ չեւ ելեալ էիր յարգանդէ, սրբեցի զքեզ, և մարգարէ ազգաց եսու զքեզ ։

Նոյնպէս և զՍամուէլ և զՅովաննէս և զՊաւղոս. որպէս և ասէ իսկ՝ թէ ընտրեաց զիս յորովայնէ մօր իմոյ աւետարանել զՈրդին իւր ինեւ. և զամենայն իսկ սուրբս, որպէս ասէ Առաքեալն՝ թէ զորս յառաջագոյնն ծանեաւ, յառաջագոյն սահմանեաց կերպարանակից լինել պատկերի Որդւոյն իւրոյ ։ Եւ դարձեալ՝ թէ ընտրեաց զմեզ

յառաջ քան զլինելն աշխարհի ։

Եւ զի բարեաց կամեցող է Աստուած ; ուսուցանէ Տէր մեր յաւելն՝ թէ այս են կամք Հօր իմոյ , որ յերկինս է , զի ամենայն որ տեսանէ զՈրդի և հաւատասցէ 'ի նա , ընկալցի զկեանսն յաւիտենից ։ Եւ դարձեալ՝ թէ իմ կերակուր այն է , զի արարից զկամս Հօր իմոյ . և այս են կամք Հօր իմոյ , զի զամենայն զոր ետ ցիս Հայր՝ ոչ կորուսից 'ի նմանէ , այլ յարուցից զնա յաւուրն յետնում ։

Արդ կամի՝ զի ամենեքեան որ հաւատան յՈրդի , մի՛ կորիցեն . այլ զի յարիցեն յաւուրն յարութեան ։ Եւ գործն յարութեան յետ ազգաց բազմաց լինելոց է ։ Բայց Աստուած զբարուղք կամին և ունէր 'ի բնէ , և ունի . և ոչ են եկամուտ 'ի նա կամքն , այլ բնաւորք ըստ անճառ բարերարութեանն ։ Եւ որպէս յառաջագոյն ասացաք , իւր կամքն միշտ բարեաւ խորհք , և կամի՝ զի և իւր բանաւոր արարածքն ցանկացողք բա-

րեաց և գործօնեայ արդարութեան լինիցին ։

Բայց քանզի գիտէ՝ թէ կէսք գան ըստ կամաց Նորա , և կէսք ոչ գան , վասն այնորիկ զկիրացն առաքինութիւն՝ վասն զայլս 'ի բարււոք Նախանձ յորդորելոյ՝ անդրատին յորովայնէ քարոզէ . Նոյնպէս և զայլոցն զանպիտանութիւն . իսկ ոչ թէ ինքն զոմն յորովայնէ անպիտան ստեղծանիցէ , և զոմն պիտանի ։ Եւ թէ այնպէս ինչ էր , զի՞ պիտոյ էր զպիտանին գովել և զանպիտանին պարսաւել , թէ ինքն արարիչ է պիտանութեանն և անպիտանութեան . Նա և ոչ մեղադիր պարտ էր լինել անպիտանութեանն , թէ իւր զնա այնպէս ստեղծեալ էր յորովայնէ ։

Եւ արդ յայտ է՝ եթէ ասելն Աստուծոյ , թէ զՅակոբ սիրեցի և զԵսաւ ատեցի , կանխաւ գիտել է՝ թէ սա սիրելի լինելոց է յիւրոց բարուց , և Նա ատելի ։ Եւ զի յիւրոց բարուց եղեւ ատելի Եսաւ , ասէ Առաքեալ . մի՛ ոք պոռնիկ

կամ պիղծ իբրեւ զԵսաւ. և մի՛ ոք արմատ դառնութեան 'ի վեր ե- լեւեալ՝ զայլս նեղիցէ: Եւ յայտ առնէ՝ թէ յիւրոց կամաց եղեւ այն- պիսի Եսաւ, և ոչ յԱստուծոյ ստեղծուածոց. որպէս և այլուր ա- սէ՝ թէ արար Աստուած զմարդն ուղիղ, և նոքա խորհեցան խոր- հուրդ չարութեան: Եւ մարգա- րէին ասէ. ես տնկեցի զքեզ որթ վայելուչ, և զիարդ դարձար իմ 'ի դառնութիւն որթդ խոպանա- ցեալ:

ՃՂ. ՈՒՍՏԻ յայտ է՝ թէ Աս- տուած զգործուածն ամենեցուն գեղեցիկ գործէ. և 'ի բարութիւն և 'ի չարութիւն դառնալոյ զանձն իշխանութիւնն արար կամակար, զի յոր կողմն և կամիցի՝ կարող է- ցէ դառնալ. և ըստ գործոցն և զհատուցումն նոյնպիսի առնու- ցու. և մի՛ իբրեւ զանասուն վա- րիցի, որոց ոչ գործք ինչ բարեաց կան, և ոչ հատուցման ակնկա- լութիւն, այնու զի անասունն է, և չգիտէ ընտրել զչար 'ի բարւոյ

խորհրդով , բայց 'ի բնական բա_րուցն ․ որովք յիշատակօք միայն վարի յօգտակարն , և խորշի 'ի վնասակարէն ։

Ցորս են և ազդմունք ինչ բնա_կանք՝ որովք հանդերձելոց իրիք իրաց ազդ լինելի նոցա ․ որպէս ձիոյն՝ 'ի սմբակէն մարտելոյ ․ և ե_զինն՝ ձմերանի ընդ ալուց կողմն նստելոյ , և մօտ 'ի գարունն ընդ դիրաց կողմն դառնալոյ ․ և ծիծ_ռան՝ յառաջ քան զաշունն 'ի ջե_րին տեղիս 'ի ձմերոց երթալոյ ․ և խորդոյն՝ իմանալ յառաջագոյն զձմերունս կարեւորս , և վազ 'ի մարմանդ տեղիս փութալոյ ․ և Ձայից՝ վաղագոյն տարամասարմ չուելոյ ․ և աղաւնեաց՝ համագունդ երամ երամ խաղալոյ ․ և ագռա_ւուց՝ 'ի ծմակաց վաղագոյն 'ի ջե_րին տեղիս գնալոյ ․ և անգեղց՝ 'ի հեռաստանէ զգիշոյ ականելոյ դի_տաւորութեան ։

Եւ այլոցն եւս ամենայն անասա_նոց և թռչնոց ․ որպէս և մրջեան՝ յամառանոյն պաշարատելոյ զկե_

րակուր , և ընդ երկու զհատն կարե_
լոյ՝ զի մի՛ բուսանիցի , և 'ի ջեր ժա_
մանակս հանելոյ զկտրիկն յորջէ ան_
տի և ցամաքեցուցանելոյ . և մե_
ղուաց՝ զդուրս մեղուանոցացն յա_
ռաջ քան զգուրան ականամոմամ_
խնլոյ . և արջոյ՝ յառաջագոյն քան
զձմեռն 'ի բայրոց մտանելոյ . և ե_
րէոյ՝ կանուխ ի լերանց 'ի դաշտ
դիմելոյ . և եղջերուաց՝ զտակաւ
զժամանակ խառնիցն իմանալոյ .
և իշավայրաց քինացելոց՝ զարու_
յաւանակս 'ի մատաղութեան կը_
տրելոյ : Եւ այս ամենայն ազդեցու_
թիւնք բնականք են յանասունսն ,
և ոչ խորհրդականք , որ յարար_
չէն նոցա անկեալ են 'ի նոսա՝ առ
'ի յօժարելոյ յօգտակարն և խոր_
շելոյ 'ի վնասակարացն :

ՃԹ . ԵՒ ոչ միայն յանասունսն
են բնական ազդեցութիւնք , այլ
և 'ի մարդկան , որ խօսունք և ի_
մաստունք են : Որպէս յորժամ
ակն խաղայցէ , բնական ազդեցու_
թեամբ վասն զնորոգ ինչ տեսանե_
լոյ լինի՝ ասեն՝ նշանակ , որք այնմ

տանէպ միտ դնեն ։ Յորժամ յերանս
կամ յայլ անդամս մին խաղայցէ ,
նշանակ հեծանելոյ ուրուք է՝ ա-
ւեն , կամ հանդերձս աղխիւս ա-
ղանելոյ , կամ սորեւոյն պատա-
հելոյ , կամ գանձ ըմպելոյ ։ Նոյն-
պէս և յորժամ ոտն կծիցէ կամ
ձեռն , մին՝ ասեն՝ ճանապարհի
գնալոյ նշանակ է կամ անձրեւի ,
և միւսն՝ առնլոյ ինչ յումեքէ կամ
տալոյ ։ Նոյնպէս և փնչելն , և լե-
զուին կծել , և ունկանն հարկա-
նել , և ըմբանին կծել , ոչ եթէ
յայսոյ իմեքէ լինի , այլ 'ի բնական
աղդեցութենէ անտի՝ զոր անկեալ
է արարչին յանդամսն ։ Զի յոր-
ժամ 'ի խորհրդական զգուշութե-
նէն զեղծիցի , բնական աղդեցու-
թեամբն պատասպարեսցի ։

Եւ յօրանջելն և ձգտել , որպէս
կարծեցին ոմանք , ոչ 'ի դիւէ լինի՝
այլ 'ի մեղկութենէ և թուլութե-
նէ մարմնոյն ։ Ուստի զտանէպ յօ-
րանջելն և ձգտելն՝ համուառ բժիշկք
'ի մթերելոյ մաղասոց ասեն , զոր
և փորձն իսկ յայտ առնէ . զի յոր-

ժամ տանել որ յօրանջիցէ, սարսափումն զայս զոսկերօքն և քրտմունք գնան ընդ անդամսն ։

Եւ ոչ փնչելն 'ի հրեշտակէ, այլ կամ 'ի ցրտոյ՝ կամ վասն այլ իրիք բնական ազդեցութեան ։ Նա և յագոյն հանել՝ երբեմն յիշատակաւ լինի, և երբեմն առանց յիշելոյ զոք ։ Եւ զի բնական ազդեցութիւնք են և ոչ 'ի գիւաց, յայտ անտի է՝ զի և յանասնոց բնութիւնս գտանին նոյնք ։ Եւ յոգոյն հանել՝ յորժամ ոչ զոք կամ զինչ ինչ բարի կամ զկարիս յիշելոյ լինիցի՝ բնական ազդեցութիւն է, առ ամփոփելոյ զոգին ընդ երկիւղիւ արարչին, և ճանաչելոյ զիւրոյ բնութեանն տկարութիւն ։ Եւ յորժամ յիշատակաւ լինիցի, կամ առ սիրոյ սիրելւոյ լինի, կամ առ անարժանս ինչ և զմնասս աշխարելոյ ։ Որպէս յորժամ 'ի լքեաց ծուլայցէ, գիշերական երազովքն ամփոփի ընդ երկիւղիւ ։

Ի․ ԵՒ երազոցն այլ և այլ պատճառք են ։ Է ինչ՝ զոր ցնորէ ընդ

բերան ածիցէ մարդն, 'ի նոյն և 'ի գազազարել մարմնոյն և 'ի քուննն ըղ-բաղխուն միոջն. և է ինչ՝ զոր ըղ-նաւ չիցէ ածեալ զմտաւ, և տե-սանէ յերազի ։ Եւ այնր երկա-պատճառք են ։

Կամ հաստատուն ինչ տեսանել երբ ընդ հայելի օրինակաւ՝ յԱս-տուծոյ շնորհացն ազդեցութենէ, վասն 'ի լաւութիւնս զմարդն յոր-դորելոյ, և ոչ յայտ յանդիմանն ճշմարտութեամբ. որպէս Յովսե-փայ և Դանիելի մեծամեծ իրաց տեսիլք յայտնեցան ։

Եւ մի ինչ 'ի հակառակորդէն. քանզի նա անմարմին է, որպէս շունչ մարդոյն անմարմին. և ա-ծեալ կերպարանս կերպարանս ա-ռաջի նկարէ, մերթ զկանանց՝ վասն 'ի ցանկութիւն դրդելոյ, և մերթ զահագին գազանաց և զօձնոց՝ վասն զարհուրեցուցանելոյ. որպէս և Յոբն ասէ՝ թէ և երազովք զար-հուրեցուցանես զիս ։ Եւ բազում անգամ 'ի կանանց կերպս եկեալ. զայս խաբէ յերազի. և է երբեք՝

յարանց կերպս դարձեալ, զկանայս
յանցուցանէ։ Իբր ոչ եթէ արուա-
կան և իգական անդամք կայցեն
նորա, այլ խառնեալ զամեան ցան-
կութեանն՝ տայ հեղուլ 'ի բաց զա-
րութիւնն։ Եւ ոչ, յորժամ 'ի
մարդ մտեալ իցէ, և յարուական
կամ յիգական բարբառս պատճա-
ռիցի, պարտ է հաւատալ՝ թէ ա-
րութիւն կամ իգութիւն գուցէ
նորա։ Եւ ոչ, յորժամ ցուցանէ՝
թէ 'ի գանէ կամ 'ի սրոյ երկնչի-
ցի, հաւատալի է. զի նմա գան՝
Աստուծոյ սաստն է, և սրոց
շնորհք՝ զոր 'ի Հոգւոյն սրբոյ ու-
նիցին։ Կամ 'ի յարթնութեան
կամ 'ի քաղցրաքուն հանգստեանն
ցուցանէ՝ թէ 'ի գանէ և 'ի սրոյ
երկնչիցի, զի զմարդիկ յայն ապա-
տան արարեալ՝ ծուլացուցանիցէ
խնդրելոյ յԱստուծոյ զօգնակա-
նութիւնս. զոր և Տէրն իսկ յայտ
արար ասելովն, եթէ այս ազգ ոչ
ելանէ՝ եթէ ոչ պահովք և աղօ-
թիւք։

Եւ ոչ ամենայն թալանալ և

ցնորել մարդկան 'ի գինւէ է, այլ է՝ որ 'ի մաղձոյ է, և է՝ որ 'ի մաղասէ, և է՝ որ յուղղոյն սնանալոյ, և է՝ որ 'ի ստամոքսէ խանգարելոյ, և է՝ որ յորովայնէ խստանալոյ, մինչև ցփրփրել անգամ և զաչս յեղեղուլ:

ԻԱ. ԱՑԼ յուղղոյն սնանալոյ՝ և 'ի մտաց խակ անկանի մարդ, և խօսի ընդ ոմն, և կագի ընդ հողմս: Ուստի բժիշկք յամառին՝ թէ բնաւ չիք դեւ որ 'ի մարդ մտանիցէ. այլ ցաւք են այն, և մեք զարմանովք կարեմք բժշկել:

Այլ մեք զայն ոչ ասեմք. քանզի Ճշմարիտ է մեզ բան աւետարանին՝ եթէ բազում դեւք, իբրեւ տեսանէին զՅիսուս, աղաղակէին և ելանէին 'ի մարդկանէ. և նա սաստէր 'ի նոսա և ոչ տայր խօսել նոցա. համդերձ այլովք նոյնանմանօք: Եւ լուսնոտքն որք ասին, ոչ եթէ լուսնոյ վնասեալ՝ այնպիսիք կոչին, այլ դաս ինչ է դիւաց՝ որ ըստ լուսնոյ յայտնին:

Եւ փորձել այնչափ իշխէ սա-

տանայ, որչափ հրամանն առնու։ Եւ յայտ 'ի Յոբայ փորձանացն է. զի եթէ ոչ նախ առ. հրաման յԱստուծոյ, ոչ ժուժեաց փորձել զնա. և 'ի խոզից երամակէն, յոր ոչ իշխեցին մտանել դեւքն՝ եթէ ոչ առին հրաման 'ի Տեառնէ։

ԻԲ. ԱՅԼ են ոմանք՝ որ վեճին, եթէ բնաւ իսկ սատանայ ոչ փորձէ զմարդ։

Այլ յանդիմանին յԱռաքելոյ, որ ասէ՝ թէ բազում անգամ կամեցայ գալ առ ձեզ, և խափանեաց զիս սատանայ։ Եւ դարձեալ ասէ՝ թէ ոչ է մեզ մարտ ընդ մարմնոյ և ընդ արեան, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս և ընդ աշխարհակալս աշխարհի խաւարիս այսորիկ։ Եւ յաւէտարանին ասէ՝ թէ սատանայի իսկ արկեալ էր 'ի սիրտ Յուդայի սկարովտացւոյ, մատնել զնա։ Եւ դարձեալ՝ թէ ընդ պատառոյն եմուտ սատանայ։ Դարձեալ. խնդրեաց սատանայ խարբալել զձեզ իբրեւ զցորեան։

Եւ փորձելոյն այնչափ տայ նմա

իշխանութիւն, որչափ մարդն համգուրժել կարէ. որպէս երանելին Առաքեալ ասէ՝ թէ հաւատարիմ է Աստուած, որ ոչ արկցէ զձեզ 'ի փորձութիւն՝ առաւել քան ըզկար ձեր, այլ արասցէ ընդ փորձութեանն և զելս՝ զի համբերել կարասջիք: Եւ Տէր մեր ուսուցանէ յաղօթսն ասել մեզ՝ թէ մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ 'ի չարէ: Զի ցուցցէ թէ և աղօթիւք կարեմք ապրել 'ի փորձանաց չարին:

ԻԳ. ԵԹԷ այդպիսի իցէ, ասեն, փորձելոյ վասն հաստատեալ է զնա Աստուծոյ:

Այլ մեք 'ի վերադոյնսն իսկ բազում վկայութեամբ գրոց սրբոց ցուցաք, թէ ոչ 'ի չարչարել և 'ի փորձել արարեալ է զնա Աստուծոյ. այլ և Նովաւ՝ որ 'ի չարութիւնն կործանեցաւ, գործ բարւոք գործէ Աստուած. թէպէտ և չարն ոչ այնպիսի միտօք մատչի փորձել, այլ համարի յաղթել, և գըտանի պարտաւորեալ: Թուլացու-

ցանէ ըստ չարեաց կամաց նորա փորձել զառաքինիս . և մտեալ 'ի փորձութիւնսն նորա՝ իբրեւ 'ի բովս , զտին և ընտրելին իբրեւ զոսկի սուրբ ելեալ 'ի հալոցաց :

Արդ եթէ չարեաց արբանեակ արարեալ էր զնա Աստուծոյ , ոչ յաւուրսն Աքաաբայ՝ հոգի սուտ լինէր 'ի բերանս մարգարէիցն սորա . այլ նմա պարտ էր հարկանել զայն ապստամբութիւնն : Եւ ընդէ՞ր հոգի՝ որ ոչ դաւանէ զՏէր Յիսուս՝ չիցէ * յԱստուծոյ , որ զԱստուծոյ սպասն ոչ խափանէ . և ընդէ՞ր մարդասպան կոչիցի , որ կեցուցիչն է փորձութեամբք . և ընդէ՞ր ոյք ոչն հաւատան 'ի Տէր Յիսուս՝ որդիք չարին կոչէին , եթէ նա Աստուծոյ բանիւ իցէ փորձիչ : Եւ եթէ չարին կամարարի Աստուծոյ որդիք իցեն Հրեայք , ընդէ՞ր և ոչ Աբրահամ այնպէս անուանիցի . և ընդէ՞ր սուտ և մարդասպան անուանիցի չարն , եթէ 'ի ճշմար-

* իցէ :

տութեան կայցէ և ոչ 'ի ստութեան ։

Եւ գրեցաւ՝ թէ Հրեայն յանձնէ խօսիցի սուտ, նա ընդէ՞ր կոչեցի հայր Հրէին՝ որ ոչ սուտ առնէ զբնութիւնն, այլ որպէս եղեւն՝ այնպէս խօսի ։ Եւ ընդէ՞ր ասիցէ Առաքեալ՝ թէ հնազանդելոց է փրկեչին մերում հանդերձ մահուամբ և սատանայ, և անկանելոց է յիշխանութենէ և 'ի պետութենէ իւրմէ՝ որ աստուածանալն անձամբ կամեցաւ ։ Եւ ընդէ՞ր կապեսցի և 'ի տանջանս մատնեսցի ․ ո՞չ ապաքէն՝ զի իւրովք կամօք զԱստուծոյ ընդդէմ խնդրէր առնուլ 'ի մարդկանէ, և 'ի կռապաշտութիւնս ձգէ, և դիւթութեամբք և հմայիւք և քաւդէութեամբք վրիպեցուցանէ զմարդիկ յԱստուծոյ ճշմարտութենէն ։

Եւ թշնամի կոչի՝ վասն զորոմն 'ի մէջ ցորենոյն սերմանելոյ ․ ուստի յայտ է՝ եթէ ոչ բնութեամբ է թշնամի, այլ կամօք ։ Եւ եթէ բնութեամբ էր նման չծանուցեալն

զԱստուած Հայր, զՈրդին զնմին գործ-
կարէր ճանաչել և աղաղակել՝ թէ
դու ես Որդին Աստուծոյ: Եւ դար-
ձեալ զառաքելոցն նորա ասել՝ թէ
արքն այնոքիկ ծառայք են Աստու-
ծոյ բարձրելոյ:

Եւ յայսմ ամենայնէ յայտ է՝
եթէ ոչ է բնութեամբ չար, այլ
կամօք. և ոչ չար և չարչարիչ ա-
րարեալ է զնա Աստուծոյ, այլ չա-
րակամ բարուքն նորա առաքինե-
ցուցանէ զարդարս. և նորա ոչ ինչ
գոյ յայնմ շնորհ:

ԻԴ. ԵՒ ոչ լուսաւորքն, որ-
պէս յառաջագոյն ասացաք, կեն-
դանիք ինչ են և պատճառք բա-
րեաց կամ չարեաց, այլ միայն յոր
կարգեցանն՝ զայն սպասաւորու-
թիւն հարկանեն: Որպէս ասաց
Մովսէս, թէ արար Աստուած
զլուսաւորսն մեծամեծս, և եդ
զնոսա ՚ի հաստատութեան երկնից՝
լուսատու լինել յերկիր: Ուստի
յայտ է՝ թէ վասն լուսատու լինե-
լոյ միայն արարան, և ՚ի նշանս և
՚ի ժամանակս և յաւուրս, յամիսս

և 'ի տարրս ։ Ոչ իբրեւ զկենդանիս, այլ իբրեւ զդուստրս լուսաւոր լինել՝ որք 'ի ներքոյ երկնից, և զնշանս տատանման գիտութեան ցուցանել, և զանձրեւաց և զօդոց փոփոխմանց ։ Որպէս և Տէր մեր ասէ. յորժամ տեսանիցէք ընդ առաւօտս զերկինս կարմրացեալ, ասէք՝ թէ անձրեւ լինելոց է, և լինի. և յորժամ հարաւ շնչիցէ, ասէք՝ թէ խորշակ մեծ լինելոց է, և լինի ։

Քանզի ընդ ծագել արեգական, օդոյն զխոնաւութիւն ջուրց առեալ՝ զճառագայթիւք արեւու արկանէ, և քանզի չեւ եւս է թանձրացեալ և ամպացեալ օդն, տակաւին մի արգելլոյն զնշոյլսն՝ կարմրացուցանէ միայն զարեւն, և ոչ մթացուցանէ. ուստի երեւի՝ թէ անձրեւի նշանակ է ։

Նոյնպէս և լուսինն 'ի խոնաւութենէ օդոց նսեմեալ, ջանայ յիւր մէ զխոնաւութիւնն 'ի բաց պարզել. ուստի մերձեալ խոնաւութեանն, և 'ի նա չհասեալ՝ բաւ

տեսեալ ծիածանայ շուրջ զնովաւ. որով յայտ առնի անձրեւաց նշանակ: Եւ այն ոչ միայն 'ի լուսնի, այլ և 'ի ճրագի՝ որ նուաղագոյն լոյս է՝ եւս երեւի:

ԻԵ. ԵՒ ոչ երկինք շրջին, զորմէ ասեն արտաքին իմաստասէրքն՝ թէ միրթ 'ի շրջելն ծածկեն զլուսաւորսն, եւ միրթ յայտնեն: Եւ եթէ զամենայն օր շրջիցին՝ զխաւրդ զարեւն աւուր աւուր 'ի նոյն արեւելս ածիցեն, եւ զլուսինն յամսեան հասցէ 'ի նոյն տեղիս: Եւ այլ եւս աստեղք են, որ 'ի տարւոջ հասցէ մի անգամ հասանեն 'ի նոյն տեղի. եւ են, որպէս ասենն, յերկոտասան ամ 'ի նոյն տեղի. եւ է, որ ի տարւոջ եւ 'ի կիսում. եւ է, որ յերեսուն ամի:

Այլ'ի փորձ իրացն այլազգ յայտ առնի: Զի աստեղքն, որք զցայգ յերկինս են, և զցերեկ անդէն գտանին. թէ երկինք շրջէին, ոչ 'ի նոյն շաւիղս՝ յորս ցայգն տեսանեմք՝ 'ի նոյնս և զցերեկն գտանէին. այլ քանզի ընդ նոյն շաւիղս

գնան, որպէս և տեսանեմք իսկ և զԼուսին և զաստեղս 'ի նոյն շաւիղս, յայտ է՝ թէ նոքա գնան, և երկինք կան անշարժ և տեղակալք: Որպէս և աստուածաշունչ իսկ գիրք հաստատութիւն կոչեն զերկինս: Եւ որ ինչ հաստատութիւն է, չէ շարժուն:

Իսկ այլոց 'ի գրոց աստուածաուսեալ, ասեն. 'ի նոյն իսկ գիրս գրեալ է՝ թէ եդ զնոսա 'ի հաստատութեան երկնից. ուստի յայտ է՝ թէ բևեռեալք են, և ոչ գնայունք:

Այլ թէ այնպէս իցէ, յորժամ զԱդամայ ասէ՝ թէ եդ զնա 'ի դրախտին փափկութեան, բևեռեալ համարեսցին, և մի՛ գնայուն: Իսկ եթէ զԱդամայ շրջելն՝ եդ կոչեն աստուածաշունչ գիրք. յայտ է՝ թէ և զլուսաւորացն զգնացս՝ եդ անուանեն գիրք:

Մանաւանդ զի և 'ի բազում իսկ տեղիս գտանեմք զգնացս լուսաւորացն. որպէս յորժամ ասիցէ Յեսու որդի Նաւեայ, թէ կայ-

ցէ արեգականն հանգեալ ձորոյն Գաբաւոնի, և լուսին դէպ դաշտին Էլոնայ: Եւ չասաց՝ թէ երկինք դադարեցեն 'ի գնացից իւրեանց, այլ լուսաւորք. ուստի յայտ է՝ եթէ երկինք նստեղական են, և լուսաւորքն գնայունք: Եւ առ Եզեկիէլ ասէ. դարձցի շուքն անդրէն յետս զոտասն աստիճանօք աքազեան տապարանեիցն: Որով երեւի՝ թէ արեգակն դարձաւ յետս, և ոչ երկինք: Եւ յԷկլեսիաստեան գրեալ է՝ թէ ծագէ արեգակն, և մտանէ արեգակն, և 'ի տեղի իւր ձգի. ինքն ծագեալ անդ գնայ առ հարաւով, և պատի առ հիւսիսեաւ. զի ցուցցէ՝ թէ ցերեկ առ հարաւակողմամբ գնայ ընդ արեւմուտս, և զցայգ առ հիւսիսեակողմանայ յարեւելս՝ ընդ լերանց ստորոտովք, որպէս ասեն իմաստունք. և ոչ ընդ ծով, որպէս ասենն, և ոչ 'ի ներքոյ երկրի. զի 'ի ներքոյ երկրի ոչինչ է, որպէս ասէ Յոբ՝ թէ ձգեաց զերկիր 'ի վերայ ոչընչի. և յԱսորիան ասէ՝ թէ

կացոյց զերկիր 'ի վերայ ոչընչի ։ Եւ ընչի իմիք յոչընչէ չէ հնար գնալ, և ոչ ցամաքական բնութեան ընդ խոնաւութեան ջուրց ։

Այլ, ասեն, մեք իսկ աչօք տեսանեմք, զի ի ծովէ ելանէ ։

Եւ զայն ոչ գիտեն՝ թէ վասն զի ցամաքն ուրեք 'ի ծովէ անտի ոչ երեւի, յայն սակս թուի՝ թէ 'ի ծովէ անտի ելանիցէ ։ Որպէս յորժամ թէ յարեւմուտս ոք մօտ իցէ, և լեառն ինչ յարեւելից կողմանէ կայցէ, թուի նմա՝ թէ 'ի լեռնէ անտի ելանիցէ արեգակն ։ Եւ յամենայն տեղիս, որ ընդ անբաւ ինչ ոք ուրեք կայցէ, թուի նմա՝ թէ անտի ուստեք 'ի մօտէ ելանիցէ արեգակն ։ Նոյնպէս և նոցա՝ որ մօտ առ ծովուն կայցեն, քանզի ոչ կարէ է ակնբաց 'ի ցամաք գործել, թուի՝ թէ ի ծովէ ելանիցէ ․ որ ոչ 'ի ծովէ անտի ելանէ, այլ 'ի ծագաց երկնից ։ Որպէս՝ և Դաւիթ 'ի Հոգւոյն սրբոյ ուսեալ, ասէ՝ թէ 'ի ծագաց երկնից են ելք նորա, և հանգիստք

նորա մինչեւ 'ի ծագս նորուն ։

Այլ և ցօղ սաստիկ, ասեն, առ կանէ յաշխարհին. ուստի յայտ է՝ թէ 'ի ծովէն ելանէ ։

Եւ զայն ոչ գիտեն՝ թէ զօդոյն, որ ցայգ ունու 'ի խոնաւութենէ ջուրց, հասեալ ջերմութեան ճառագայթից արեգականն՝ շքթեցուցանէ 'ի բաց զտամկութիւնն. ուստի ոչ միայն անդ, այլ յամենայն երկրի ընդ արեւածագս ցօղ անկանի ։

Եւ եթէ երկրինք շնչիցեն, զհամբ զհկունայն և զայլոց սաստեղոց պատճառաւորաց ասիցեն յաստեղատունն մտանել, որոց մտանելն ապաքէն գնալով լինիցի, և ոչ առանց գնացից ։

ԻԶ. ԱՅԼ և երկիր, ասեն, 'ի միջոցի կայ ։ Եւ տան օրինակ ինչ այսպիսի՝ թէ զփամփուշտ, յորժամ փչել կամիցես, ընկեա 'ի ներքս հատ մի կորեկան. և փուքն՝ որ 'ի փամփուշտին արգելու՝ առնու զկորեկահատն և 'ի միջոցի ունի, ոչ 'ի վեր տայ դալ և ոչ 'ի խոնարհ

ձգել։ Նոյնպէս, ասեն, և օդս՝ որ է 'ի մէջ գնդին երկնից՝ փակեալ կայ, և ունի զաշխարհս 'ի հաստա-բակածի. ոչ 'ի վեր տայ վերանալ և ոչ 'ի խոնարհ հակել։

Նախ յերևանաց իսկ բանիցն յանդիմանին. զի ասեն՝ թէ որ ինչ թեթեւ է, 'ի վերին կողմն գնայ. և որ ինչ ծանր է, 'ի խոնարհ։ Որպէս և փորձ իսկ խրացն յայտ առնէ. զի ծուխ և շոգի երկրի՝ և բոց հրոյ, քանզի թեթեւք են, 'ի վեր կողմն գնան. և ջուր և զերկաթ և զպղինձ և զայլ եւս ինչ նոյնպիսիս, որչափ և 'ի վեր ոք ձգեսցէ՝ 'ի խոնարհ միտեալ իջանեն։ Իսկ եթէ զսակաւ ինչ զծանրութիւնս ոչ կարէ օդն 'ի վեր առնուլ ունել, որչափ եւս առաւել զայնչափ ծանրութիւն երկրի չէ հնար օդոյ 'ի վեր ունել, այլ Աստուծոյ բանին՝ որ կացոյց զնա 'ի վերայ ոչընչի։

Իսկ որ երկմտիցէ ոք՝ թէ զիարդ կարիցէ այսչափ ծանրութիւն 'ի վերայ ոչընչի կալ, հայեցեալ յերկնիցն հաստատութիւն՝ որ ոչ 'ի վե-

լայ երեք կայ, և հաւանեսցի՝ թէ որ զերկինս բանիւ հաստատեաց 'ի վերայ ոչընչի, նոյն և զերկիր կացոյց 'ի վերայ ոչընչի, և նորին հրամանին ունի և զերկոսին անշարժս և տեղակալս : Ըստ այնմ՝ թէ ինքն ասաց, և եղեն . հրամայեաց, և հաստատեցան : Եւ կացոյց զնոսա յաւիտեանս յաւիտենից . հրաման եդ, և ոչ անցցէ :

Եւ այլ ևս ասեն : Թէ 'ի վերայ ոչընչի կայ երկիր, զիա՞րդ ասէ Դաւիթ՝ թէ հաստատեաց զերկիր 'ի վերայ ջուրց . և դարձեալ՝ թէ ինքն 'ի վերայ ծովու արկ զհիմունս նորա, և 'ի վերայ գետոց պատրաստեաց զնա :

Որ զայդ 'ի Դաւթայ լուաւ, ըղ-միւսն 'ի Յոբայ և յԵսայեայ լուիցէ. զի նոքա 'ի վերայ ոչընչի ասեն, և սա 'ի վերայ ջուրց : Արդ ոչ եթէ հակառակ ինչ միմեանց են գիրք, այլ զոր միոյն թողեալ է, միւսն առնու նովին Հոգւով : Որպէս տեսանեմք իսկ՝ զի որ ինչ Մովսէսի չէ ասացեալ, այլ մարգարէքն լցին նովին Հոգւով :

Մովսէս ասէ. եստեղծ Աստուած
զմարդն հող յերկրէ, և փչեաց 'ի
նա շունչ կենդանի ։ Եւ փչելն դեռ
եւս 'ի միջի կայ կարծելոյ՝ թէ եղէ
արարած շունչն թէ չեղէ ։ Արդ
գայ Զաքարիա մարգարէ նովին
Հոգւով վարեալ, և ցուցանէ զարարած շնչոյն ։ Ասէ. որ հաստատէ զհոգի մարդոյն 'ի նմա. և Եսայիաս ասէ՝ թէ զամենայն շունչ
ես արարի ։

Նոյնպէս և ոչ զհրոյ, և ոչ զջրոյ,
և ոչ զօդոյ, և ոչ զփայլատականց,
և ոչ զորոտմանէ, և ոչ զխաւարէ
ճառէ ինչ Մովսէս. զորս յերկուց
'ի մեծ անօթոցն, յերկնից և յերկրէ, պարտ է իմանալ՝ թէ ամենայն ինչ որ 'ի միջի նոցա գտանի՝
հարկ է զի ընդ նովին արարեալ իցէ. ըստ այնմ՝ թէ արար Աստուած
զերկինս և զերկիր և զամենայն որ
'ի նոսա ։

ԻԵ. ԱՅԼ զի մի՛ պատուօք ինքնակացութեան ոգխոաց կարծիցին, որոց արարածն 'ի Մովսէսէ
ոչ ճառեցաւ, առ 'ի հաստատելոյ

զպատճառն պատճառախնդրացն՝ այլովք մարգարէիւք նոյն Հոգւի ընծայեցուցանէ զարարածն նոցա ։

Նախ Դաւիթ իսկ, որով զամենայն իմանալի զօրութիւնսն և զերեւելի արարածս 'ի փառաւորութիւն արարչին կոչէ, յորժամ ասիցէ. օրհնեցէք զնա երկինք և երկիր և հրեշտակք և զօրութիւնք և հուր և հողմք և մրրիկք՝ որ առնեն զբան նորա ։ Եւ որ 'ի պաշտօն մատանեն, և զարբանեկութիւնն հարկանեն, յայտ է՝ թէ արարածք են ։

Եւ ձիւն և սառն և կարկուտ և մրրիկք՝ թէ յայլմէ արարչէ էին, ոչ կոչէր զնոսա Հոգին 'ի փառատրութիւն, այլ իբրեւ զօտարոտիս մեկուսի դնէր ։ Բայց նա տեսանեմք առանիկ՝ զի ոչ զնոսա միայն, այլ և զվիշապս և զգազանս և զխաւար և զփայլատակունս, զոր 'ի չարէ դնեն, 'ի նոյն փառաւորութիւն նորին Հոգւոյ կոչեցեալ և Դաւթաւ և երեք մանկամբքն 'ի հնոցի անդ ընծայեցուցանէ. զի ցուցցէ՝ թէ յումեմէ արարեալ են,

'ի Նորին և 'ի փառաւորութիւն յե-
րանի կոչելն ։

Եւ ոչ որպէս Մարկիոնն զան-
գաչէ՝ թէ արդարոյն արարածոց
պարտ է օտարին բարւոյ պաշտօն
մատուցանել վասն բարերարու-
թեան. զորոյ անհամութիւնն 'ի
դէպ ժամանակի յանդիմանեսցուք ։

ԻԸ. ԵՒ արդ թէպէտ յայնմա-
նէ իսկ յայտ է՝ թէ որ ինչ 'ի փառ-
աւորութիւն արարչին կոչի, նո-
րա արարած է, այլ և զմիոյ միոյ
իսկ 'ի նոցանէ զարարած մարթի
'ի գրոց ցուցանել ։

Նախ զհրեշտակացն, որպէս ա-
սէ Դաւիթ՝ թէ արար զհրեշտակս
իւր հոգիս, և զպաշտօնեայս իւր
բոց հրոյ ։ Ապա և զհրոյ, և զայ-
լոցն եւս մի ըստ միոջէ. զփայլա-
տակունս իւր յանձրեւս արար ։ Եւ
փայլատակունք ոչ եթէ այլ ուս-
տեք են, եթէ ոչ 'ի բնութենէ հրոյ ։
Եւ զխաւարէ ասէ. եդիր զխաւար,
և եղեւ գիշեր ։ Եւ զորոտմանէ և
զհողմոյ միանգամայն ասէ Ամովս՝
թէ որ հաստատէ զորոտումն և

հաստատէ զհողմ, Տէր ամենակալ անուն է նորա ։ Եւ այսպէս զոր միոյ մարգարէի Թողեալ իցէ՝ միւսոյն ընդ Հոգւոյն սուրբ ։

Արդ եթէ Դաւիթ ասէ՝ եթէ 'ի վերայ ջուրց է երկիր, և Յոբաւ և Եսայեաւ՝ թէ 'ի վերայ ոչընչի կայ, ոչ ինչ է ընդ այն զարմանալ, և ոչ զմարգարէութիւնն հակառակ միմեանց համարել ․ քանզի և այն ճշմարիտ է, և այս հաստատուն ։ Եւ առ օրինակ 'ի մարմնոյ ․ որոյ 'ի վերայ մորթ և միս է, և 'ի միջի երակք և խողովակք արեան, և 'ի ներքոյ դարձեալ նոյնպէս մորթ և միս ․ և է մարմին և 'ի վերոյ քան զերակս արեանն և 'ի ներքոյ քան զերակսն ։ Ըստ նմին օրինակի և երկիր 'ի վերայ ջրոց է ։ Քանզի 'ի միջի իւրում ունի զջուրս, և 'ի ներքոյ քան զջուրս ․ և 'ի վերայ ոչընչի հաստատեալ կայ ետեղակեալ, և ունի յինքեան զամփոփ զլոյծ բնութիւն ջրոցն ։ Եւ երկոցունց մարգարէութեանցն մի և նոյն դիտաւորութիւն է, և չէք

ինչ այլըմբռնութիւն 'ի միջի ։ Քանզի ոչ այլ և այլ Հոգի ետուն զմարգարէութիւնն, այլ նոյն և մի Հոգի, որ արժանի արար զմին պատմիչ առնել այլոց խրաց, և զայլսն մնացելոցն 'ի նմանէ ։

Արդ զի երկինք ոչ չքչին, զի ամենայն ինչ որ չէր և եղեւ՝ արարած է և ոչ ինքնակաց, առաջին բնութեանցն օրինակք և գրոց վկայութիւնք բաւական էին հաւանեցուցանել զմտավարժս ։ Բայց քանզի 'ի նմին յամառութեան կան՝ զամենայն ինչ կենդանի և շնչաւոր համարելով, ոչ հեղգացուք ըստ մերում կարի և այնմ եւս առնել պատասխանի ։

# ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

# ՆԳՃ

## ԿՐՕՆԻՑ ՑՈՒՆԱՑ ԻՄԱՍՏՆՈՑ

Ա. ԼՈՒՑԻՆ, ասեն, քան զարեգակն երեսուն օր անցեալ ընդ ամենայն աստեղատունսն, այս ինքն ընդ ամենայն երկինս, հասանէ 'ի նոյն տեղի. և արեգակն 'ի տարւոջ։ Եւ երկինք զմի օր և գիշեր առածեալ զինքեամբք, շրջին 'ի նոյն տեղի։ Եւ եւթն աստղ միայն է գնայուն, և այլն ամենայն բեւեռեալ են յերկինս. և որ գնայուն աստեղքն են՝ արեգակն և լուսին, և այլ եւս հինգ աստեղք, ոչ եթէ յարեւելից յարեւմուտս գնան՝ այլ յարեւմտից յարեւելս։

Եւ տամ օրինակ ինչ՝ որ ոչ նմանն

է. եթէ յորժամ անիւ շրջանակիցի, և միջին մի 'ի խեցին գնայցէ յարեւմտից կողմանէ ընդ արեւելս, վասն անուին արագագոյն ընդ արեւմտից կողմն շրջելոյ թուի՝ թէ միջինն յարեւելից յարեւմուտս կոյս ընթանայցէ. որ ոչ յարեւելից յարեւմուտս կողմն գնայցէ՝ այլ յարեւմտից յարեւելս, և անիւն սակայն շրջելովն այնպէս երեւեցուցանէ ։

Եւ երկինք, ասեն, որչափ 'ի վեր են՝ դոյնչափ 'ի խոնարհ են, և դոյնչափ յամենայն կողմանց շուրջ զերկրաւ, և զերկիրս շուրջ ջուր պատէ, և զջուրն և զերկիր՝ օդ, և զօդն և զջուր և զերկիր՝ հուր ։ Եւ լուսնի չեք իւր լոյս առանձինն, այլ յարեգակնէ գայ 'ի նա լոյսն. և յայտ անտի է, ասեն, զի յորմէ կուսէ արեգակն իցէ, յայնմ թերէ սկսանի 'ի նմա լոյս ծնանել. և ըստ հեռաւորութեան արեգականն՝ սակաւ գայ 'ի նա լոյսն. և ըստ սակաւ սակաւ մերձենալոյն՝ յաճախէ 'ի նա լոյսն. և յորժամ

մօտ հասանէ 'ի նա՝ լոյս. և յորժամ անցանէ զարեգակամբ՝ սկսանի տակաւ նուազել. և որչափ 'ի բացն հեռանայ՝ այնչափ պակասէ 'ի նմանէ լոյսն, մինչև ամենևին նուազէ. և յորժամ միւս անգամ հանդիպի, ծագէ 'ի նմա սակաւիկ ինչ 'ի լուսոյն վասն հեռաւորութեան. և որչափ մերձենայ, այնչափ առ սակաւ սակաւ աճէ 'ի նա լոյսն։

Եւ լուսինն, ասեն, 'ի ներքոյ է է քան զարեգակն և քան զամենայն աստեղս. և քանզի 'ի ներքոյ է, յորժամ կշիռ դէպ արեգական պատահիցէ՝ յայնժամ խաւարի արեգակն։ Եւ պատճառս փոփոխմանց տարերաց չորից բնութեանցըն զաստեղս՝ իբրև զկենդանիս ինչ՝ դնեն։ Զայս ամենայն ասեն հայթայթանօք, զերկինս և զլուսաւորսն կենդանիս և աստուածս կարծեցուսցեն։

Բ. ԱՐԴԱՄԵԻ, որպէս երանելին Առաքեալ ասէ, թէ իմաստութեամբն Աստուծոյ ոչ ծանեաւ աշ-

խարհ զԱստուած ։ Եւ զի՞նչ զար-
մանք են ընդ նոցա՝ թէ զերկինս
վասն անչափ մեծութեանն , և
զլուսաւորս վասն առաւել պայծա-
ռութեանն աստուածս կարծէին ,
յորժամ 'ի փայտս և 'ի քարինս և
'ի գազանս և 'ի ճճիս անգամ աս-
տուածս խնդրէին , զորս իւրեանց
իսկ բնութեան բարքն կշտամբեն ․
այնու զի տարարչախնդիր և աս-
տուածախոյզ են , և անկեալք 'ի
միոջէ ճշմարտէն՝ 'ի բազումս ստա-
հաւեցին , և ոչ ուրեք եղեւ կայ
և հաստատութիւն ։ Զի խնդրելն
զԱստուած, զմոլութեան արժանի
էր ․ և ոչ զմին եւեթ՝ այլ զբազումս
մուծանել, անհնարին ամպարշտու-
թիւն է ։

Գ ․ ԵՒ առաւել Յունաց իմաս-
տունքն զարմելին ․ զի հասեալ 'ի
վերայ իմաստութեանն , չծանեան
իմաստութեամբն զարարիչն ։ Քանզի
զի դնեն և նոքա մի ինչ ինքնակաց
պատճառ ամենայնի ․ որոյ ոչ յու-
մեքէ եղեալ , այլ ինքն անձամբ
ինքնակաց առաջին գոլեալ ․ և եր-

կերպով աստուած և արարիչ դնեն զմիտս. և երրորդ զչուանչ, զոր ոգի ամենայնի կոչեն։

Զերկուսն 'ի միոջէ պատճառէ անտի դնելով, ցուցին՝ թէ մերձեցան 'ի դրունս ճշմարիտ գիտութեանն. և 'ի նոցանէ այլ անթիւ իմանալիս երեւելիս աստուածս ծննդեամբ առեղծանելով, անձամբ անձին փակեցին զդրունս հաւատոյ գիտութեանն՝ զի իբրեւ զարեգակն և զճառագայթս դնեն զԱստուած և զաստուածսն իմանալիս երեւելիս. և ընդ իւր զաշխարհ միաձեւանուորակից նմա. և յամենայնի զնոսա ոգին իբրեւ չուանչ ամենայնի, և յերկինս և 'ի լուսաւորսն և 'ի հուր և յօդսն և 'ի ջուրս և յերկիր, մինչեւ ցքարինս և ցփայտս և ցծառս և ցզարմանս խոտոյ անգամ։ Եւ այնու կենդանութեամբ, ասեն, ամենայն արարածք զնոսա բնութենէն կախեալ կան, որպէս ճառագայթք արեգականն զանուէն կախեալ կան։ Եւ իւրն մի է և բազում, և բա_

զում է և մի․ որպէս արեգակն մի է և բազում, զի մի անիւ է և բազում ճառագայթք։ Եւ զայս ոչ ամենեքին այսպէս ասեն, այլ են բազում կրօնք փիլիսոփայից։

Գ․ ՊԻՒԹԱԳՈՐԵԱՆՔՆ և պերիպատիկեանքն՝ միութիւն և խնամակալութիւն ասեն, և չզոհել աստուածոց։ Եդ կրօնս Պիւթագորաս՝ զընչաւորաց միս չճաշակել, և ՚ի գինւոյ ժուժկալել։ Եւ ՚ի լուսնոյ և ՚ի վեր զամենայն ինչ որ է՝ անմահ համարել, և որ ինչ նորա ՚ի ներքոյ՝ մահկանացու։ Եւ փոփոխումն շնչոց ՚ի մարմնոց ՚ի մարմինս մինչ ցանասունս և ցճճիս անգամ։ Եւ լռութեան կրօնս սահմանեաց․ և յետոյ զիւր անձինն ատուած անուանեաց։

Իսկ պղատոնեանքն, աստուած և հիւղ և իդոս, որ առաջինն՝ նիւթ է, և երկրորդն՝ առանձինն ինչ ուրուք։ Եւ զաշխարհս՝ արարած և եղծանելի։ Եւ զշունչ՝ անարար և անմահ և աստուածական, որոյ երեք մասունք են՝ բանական, ցաս-

նական և ցանկական ։ Եւ զկանայս հասարակաց ամենեցուն համարել, և մի՛ ումեք մի կին առանձինն ունել․ այլ զոր արքն կամիցին և կանայքն ախորժիցեն, այնց ընդ այնս լինել ։ Եւ փոփոխմունս շնչոց, յայլ և այլ մարմինս մինչև ցծծիս և ցողունս անգամ ։ Միանգամայն և աստուածս բազումս 'ի միոջէ և լեալ սահմանէ ։

Իսկ ստոյիկեանքն մարմին զամենայն ինչ եդին, և զերևելի աշխարհս աստուած համարին ։ Իսկ ոմանք 'ի հրոյ էութենէ համարին ունել սմա զգոյութիւն ։ Եւ աստուած զմիտս սահմանեցին, իբրև թէ շունչ ամենայնի իցէ տարերն երկնից և երկրի․ մարմին նմա՝ զամենայն ինչ որ է՝ եդին, և աչս՝ զլուսաւորսն ։ Եւ զմարմինս ամենեցուն կորստականս, և զշունչս փոփոխելիս 'ի մարմնոց 'ի մարմինս ։

Իսկ եպիկուրեանքն ասեն․ անհատ և անբաժին մարմինք էին զառաջինն, և անտի եկաց ամենայն ինչ ։ Եւ վախճան լաւութեան ըզ-

ցանկութիւն առհմանեցին։ Եւ թէ ոչ Աստուած գոյ, և ոչ խնամակալութիւն՝ որ վարիցէ զամենայն։ Այս են կրօնք փիլիսոփայից։

Ե. ԲԱՅՑ հեթանոսութեան սկիզբն 'ի Սերուքայ ժամանակաց անտի եղեւ. զի որ լաւ ոք եկեալ յաշխարհ մեռանէր, վասն յիշատակի քաջութեանն զպատկերն երանգօք 'ի նկարու հանէին. և անտի ուսեալ տխմարաց՝ տակաւ 'ի պաշտօն առնոյին։ Եւ կռոց և դրօշելոց հանդամանքն՝ առ Թարայիւ հարբ Աբրահամու, և անտի իւրաքանչիւր ոք իւրով արուեստիւ զնոյն դրօշէր. զարբինն՝ զարբնութեամբ, հիւսնն հիւսնութեամբ, արծաթագործն և պղնձագործ և քարակոփն և բրուտն՝ իւրաքանչիւր արուեստիւ։ Եւ անտի կարգեալ հասանէր յեգիպտացիս և 'ի բաբելոնացիս և 'ի փռիւգացիս և 'ի փիւնիկեցիս գործ դրօշագործութեան և խորհուրդք նորին. և ապա 'ի Հելլէնս, որ են Յոյնք, առ Կեկրոպեաւ. և եւս յետոյ առա-

ւնել տանիք առ Կուռնաւն և Բէսա-
և Դիոս և Ապողոնիւ և առ այ-
լովք բազմօք, զորս մի ըստ միոջէ
աստուածս անուանեցին :

Եւ Հելլենք կոչին Ցոյնք՝ յաւա-
նէ միոջէ, որում Հեղլենոս անուն
էր յելլադացւոց աշխարհին : Բայց
այլք ասեն՝ եթէ 'ի ձիթենւոյն, որ
յԱթէնս բուսաւ խւրովի . վասն զի
ձիթենի յունարէն ելէա * կոչի :

Բայց Ցոյնք 'ի Ցաւանայ, որ էր
մի յառաջնորդաց աշտարակագոր-
ծութեանն, վասնորոյ Մերոպաս
անենեքին կոչին յաղագս բարբա-
ռոյն բաժանելոյ . քանզի բաժա-
նումն յունարէն մերիսմոս ** կոչի :

Եւ առաջին կրօնք՝ խուժականք
և սկիւթականք և հեթանոսականք
կոչէին, մինչեւ եկն Աբրահամու
աստուածպաշտութիւնն և աղա-
ւաղեաց զայն :

Եւ յուդայութիւն 'ի Յուդայէ,
որ է հրէութիւն, 'ի չորրորդէ որ-
դւոյն Յակոբայ . յորմէ թագաւո-

* ἐλαία. ** μερισμός.

րութիւն էր, և կալեալ անունն զա-մենայն ազգն յուդայական :

Եւ 'ի վախճանի հրէութեան, քրիստոնէութեան անուն 'ի Քրիս-տոսէ. որ նախ յԱնտիոք անուա-նեցաւ աշակերտելոցն :

Զ. ԱՐԴ 'ի խնդրելն փիլիսո-փայից զԱստուած 'ի բնական օրէ-նաց՝ որ 'ի միտսն անկեալ է, որ-պէս յառաջագոյնն ասացաք, գո-վութեան արժանի է. բայց 'ի բա-զում աստուածսն անկանել, և զաշխարհս նմա մշտնջենաւորակից դնել, անհնարին ամպարշտութիւն է : Եւ 'ի դէպ եղանէ նոցա առա-քելական բանն՝ եթէ ծանեան զԱս-տուած, և ոչ իբրև զԱստուած փառաւորեցին :

Զի Աստուծոյ փառաւորու-թիւնն այն էր, թէ յարարածոցն մեկնեալ էր զպատիւ արարչին. որ-րով և արարածքն իսկ իւրաքան-չիւր շարժմամբք և փոփոխմամբք զարարչէն քարոզեն : Արդ եթէ աստեղքն ըստ նոցա բանդագուշա-նացն աստուածք իցեն, և երկինք

և արեգակն և լուսինն՝ որք անխօսքն և անմռունչ են, զինչ աւելի իցէ պատճառն քան զպատճառաւորսն ։ Եւ մանաւանդ յորժամ զնորին իսկ զմիտսն և զշունչ, թէ մարթիցի Աստուծոյ շունչ ասել, ամենայն արարածոց շնչաւորաց և անշնչից բնութեամբ 'ի նորա էութենէն գնեն. որ անհնարին ամպարշտութեանն է, զԱստուծոյ զիւրոյ էութեանն կենդանութիւն՝ հոգևորաց և շնչաւորաց և անշնչից առ հասարակ համարել. և ոչ առաւել արարած կենդանութիւն 'ի հրեշտակս և 'ի դևս և 'ի մարդկան, որ բանաւորքն և մտաւորքն են. և յայլ շնչաւորսն՝ բնական կենդանութիւն 'ի չորեց հիւթոց խառնեալ և յօդեալ, որք յորժամ քակտիցին, և կենդանութիւնն 'ի նոյն չորեսին հիւթսն լուծանի ։

Են ոգիք հրեշտակաց և դևաց, և շունչք մարդկան ։ Արդ և յիւրեանց բանիցն իսկ ո՞չ ամաչիցեն, որք զշունչն անարար անմահ և ա-

տուածեղէն յԱստուծոյ բնութենէ անտի առեն. և դարձեալ տանջանս և պատիժս շնչոցն յանցուցելոց դնեն, որ յետնոյ հայհոյութեանն է՝ եթէ էութիւնն Աստուծոյ 'ի մասունս բաժանեցի, և 'ի բազում շունչս կտորեցի. և դարձեալ զերրոյ պէս բնութիւնն միւս կէսն տանջիցէ, և կէսն 'ի փառս և կէսն յանարգանս, և մի թերին յանոյշս և միւս թերին 'ի դժոխս:

Եւ դարձեալ ասեն. թէ ոչ կենդանութիւն ինչ է յամենայնի, զիա՞րդ իցէ զի ամենայն ինչ շարժի. և սերմանք և տունկք արկեալք յերկիր բուսանին. և յեգս մարդկան և յանասնոց անկեալ սերմանք դան 'ի ծնունդս և յաճումն. զորմէ և ոչ մեք յուրաստ ինչ եմք, վասն փորձոյ իրացն զարդեանցն յայտ առնելոյ:

Այլ խնդիր այն է՝ թէ այն կենդանութիւն ոչ Աստուծոյ էութեանն կենդանութիւն է, այլ արարած կենդանութիւն այլազգ 'ի

բանաւորան և 'ի մտաւորս, և այլազգ յանասունս և յամենայն շրջաւորան, և այլազգ 'ի բնականն՝ որպէս 'ի սերմանս և որ յեգս մարդկան և անասնոց անկանին։ Յորոց մարդկանն առաւել և պատուականագոյն է. յորում և բնական կենդանութիւն է ըստ մարմնոյն, և բանաւորին սքանչելի ըստ շնչոյն։ Զի մարմինն և նոցա 'ի չորից հիւթոցն կայ. և ոգին ոչ 'ի չորիցն հիւթոց յօդելոց, այլ 'ի պարզական և 'ի սուղական բնութենէ. և այլոց անասնոց ոչ նոյնպիսի, այլ 'ի բնական և յաղդեցական բնութենէ. և սերմանց ոչ նոյնպիսի, այլ 'ի բնական և յանշնչական խաղացից։

Է. ՆՈՅՆՊԷՍ և ոչ 'ի լուսաւորան շնչաւորութիւն ինչ բանաւոր է, այլ բնական և խաղացական շարժմունք. ուստի ոմանք և հրեշտակս վարիչս եդին նոցա։ Այլ մեք զգրոց սրբոց զհետ երթիցուք, որ զանձրեւացն ասէ՝ թէ չեւ եւս էր Աստուծոյ տեղացեալ յերկիր։

Եւ ոչ որպէս ոմանք դանդաչեցին՝ թէ սատանայ ունէր իշխանութիւն շարժելոյ և փոփոխելոյ զօդս, ըստ այնմ զոր Առաքեալն ասէ՝ թէ ըստ իշխանի իշխանութեան օդոյս այսորիկ ։ Իշխան օդոյս այսորիկ կոչէ զնա՝ վասն յերկնիցն անկանելոյ և յօդս թափառելոյ . և յայտ անտի է զոր ասէ՝ թէ օդոյ խաւարիս այսորիկ . զի ցուցցէ՝ թէ 'ի լուսոյ 'ի խաւար կործանեալ է, և չէ օդոյն փոփոխիչ՝ մերթ յանձրեւս, մերթ 'ի ձիւն, մերթ 'ի կարկուտ ։

Այլ զի Աստուծոյ գործ է այն, և ոչ սատանայի, ասասցէ Դաւիթ Հոգւոյն սրբով 'ի մօտոյ՝ թէ հանէ զամպս 'ի ծագաց երկրէ, և զփայլատակունս յանձրեւս արար . և հանէ զհողմս յշտեմարանաց իւրոց . և դարձեալ՝ թէ զնէ զձիւն իբրեւ զասր, և զեղեամն իբրեւ զփոշի ցանեաց . և արկանէ զսառն իբրեւ զպատառս . հանդերձ այլովքն ։ Եւ մի մարգարէն ասէ՝ թէ կոչէ զջուր ծովու, և հեղու զնոսա 'ի վերայ երեսաց երկրի ։ Եւ Յոբ ա-

սէ՝ թէ ո՞ ծնաւ զչիթս անձրեւի , և յորովայնէ ո՞յր ելանեն սառամանիք , և զեղեամն յերկինս ո՞ ծնաւ , որ իջանէ իբրեւ զջուր ծորեալ . զի ասիցէ՝ թէ իմ գործ է , և ոչ այլ ուրուք ։

Նոյնպէս և զլուսաւորան շարժել՝ նորա բանին գործ է , և ոչ այլոյ ուրուք . և ոչ միայն եւթն աստեղքն գնայունք են և այլքն աւանց գնացից , այլ ամենեքեան գնայունք . կէսքն յամրագնացք , և կէսքն արագագնացք . և ոչ յերկինս բեւեռեալ են , որպէս յառաջագոյնն ասացաւ , թէ իբրեւ զշուրնչանն շրջիցին , և զնոսա մերթ յայտնեսցեն և մերթ ծածկեսցեն ։ Եւ որ առաւել ծաղուն արժանի է , թէ արեգակն յարեւմտից յարեւելս գնասցէ . և ընդէ՞ր ոչ զարեւմուտս արեւելս կոչիցեն , և զարեւելս արեւմուտս ։

Այլ բնաւ իսկ , ասեն , ոչ ուրեք մտանէ արեգակն . և զի ոչ մտանէ՝ անտի յայտ է , զի ցայգ 'ի նորա լուսոյն 'ի լուսնի ամանն լոյս

ծագէ. քանզի լինքն երթեալ հեռացեալ յայլ կողմանս երկնից 'պատանի:

Եւ թէ ասիցես՝ թէ նա յերկինս իցէ ցայգ, խաւարս որ լինի՝ ուստի՞ իցէ:

Ասեն, յերկրիս ստուերէ լինիցի:

Անդ որ 'ի վեր յերկինս խաւարն լինի, ուստի՞ իցէ. ո՞չ ապաքէն յայտ է՝ թէ ուրեք ծածկի ցայգ. որպէս և 'ի մտիցն է տեսանել: Զի իբրեւ 'ի վերուստ 'ի խոնարհ իջանէ, և դարձեալ յելանելն՝ իբրեւ 'ի ներքուստ 'ի վեր ելեալ համբառնայ:

Եւ 'ի զուր է ճամարտակելն նոցա, զի այնչափ մեծութիւն երկնից տան քան երկրի. զի աստուածատուր գիրք զերկինս թզաւ ասեն և զերկիր քլաւ. և ոչ աւելի զթիզն քան զքիլն գտանեմք:

Ը. ԴԱՐՁԵԱԼ և լուսնի՝ թէ ոչ իւր առանձինն իցէ լոյս, նախ նոցա բանին սուտ՝ զոր ասեն, եթէ 'ի յաճախելն յամենայն իմիք՝ աճէ հիւլթն որ 'ի նմանէ, և 'ի լնուլն՝ լնու, և 'ի պակասելն՝ պակասէ:

Որպէս փորձ իրացն իսկ յուղիղս
ամենայն մտեղեաց ցուցանէ, և 'ի
ծառս և 'ի տունկս խոնաւութիւնն։
Եւ յԵւրոպայն տեղիք ինչ են ծո-
վուց, որոց ջուրն ըստ աճել լուսա-
նին՝ աճէ, և ըստ լնուլն՝ լնու, և
ըստ պակասելն՝ պակասէ։ Եւ նո-
քա այսչափ ժմերաւալք՝ մինչեւ
զամենայն մարդկան աչս կամին ու-
նել, որ ցայգ 'ի մտանել արեգա-
կանն՝ առաւել պայծառացեալ ըղ-
լոյս լուսնի տեսանեն։

Զիւրդ արագագոյն քան զա-
րեգակն զչանձնաւոր լուսինն տեսի-
ցեն. զի նա, ասեն, յերեսուն ա-
ւուր կատարէ զընթացսն, և արե-
գակն 'ի տարւոջ։ Զորս փորձ ի-
րացն յանդիմանէ, և աստուածա-
տուր գիրքն, որ ասէ՝ թէ արար
երկուս լուսաւորս մեծամեծս, և
եդ զնոսա 'ի հաստատութեան եր-
կնից։ Եւ զի զառաւել պայծա-
ռութիւն արեգականն ցուցանիցէ,
ասէ. արար զլուսաւորն մեծ՝ յիշ-
խանութիւն տուընջեան, և զլու-
սաւորն փոքր՝ յիշխանութիւն գի-

շերոյ, և զատանցս ։ Ուստի յայտ է՝ թէ յիւրաքանչիւր իշխանութիւնս կարգեալ են, և ոչ մի 'ի միոջէ առնու զլոյսն ։

Եւ զանձնըն և նուազել լուսնի՛ իբրեւ ընդ պատեհնիւք իւրն մտանել և ելանել ասեն իմաստունք ։ Եւ նշանս անտի առն, զի է երբեք՝ յորժամ յաճմունսն իցէ և լնոյն, շուրջ զանօթոմն ծանրանայ, որպէս թէ ընդ սակաւ ինչ փոխեկումն ծերալից՝ նշոյլք երեւեսցին ։

Եւ դարձեալ խաւարելոյ արեգակնն եթէ լուսնին պատահել պատճառ իցէ, յորժամ լուսինն մթանայցէ՝ նմա զի՞նչ պատահիցէ ։ Եթէ զատող պատճառ պատահելոյն գնիցեն, ահա ոչ տեսանեմք այնչափ մեծ ատող յերկինս՝ որ պատահելոյ լուսնին՝ ծածկել կարիցէ զլուսինն. և ոչ ատող ցածագոյն գոյ քան զլուսինն՝ թէ 'ի ներքոյ նորա համբերեալ զնա խաւարեցուսցէ ։

Նա թէ և զարեգական լոյսն արգելուլ կարէր լուսինն, ապաքէն

զիւր լոյսն ծագէր յերկիր, զի զա-
նեալ իբրեւ զլուսնական երեւէր
տիւն և ոչ ամենեւին խաւարչուտ ։

Թ. ԱՅԼ ճշմարիտ է քան զդոյն, որ ասէ՝ Թէ դարձուցէք զարեգակն 'ի խաւար, և զլուսինն յարիւն ։ Զի ցուցցէ՝ Թէ Տէր է լուսաւորացն, և լուսաւորելոյ և խաւարեցուցանելոյ, առ 'ի կշտամբուԹիւն արեւապաշտացն և լուսնապաշտացն ։

Եւ չէ հնար լուսնի յերկիր իջանել. որպէս կախարդաց տեսեալ 'ի ժամանակի հրամանաւ Աստուծոյ զլուսնոյն արիւնագոյն լինելոյ զկերպարանսն՝ զխելի նմանել լուսնի բարբանջեն, Թէ զլուսին իջուցանիցեն. որում չէն մարԹ լինել, Թէ որ քան զքաղում աշխարհս մեծ է՝ Թէ 'ի կալ մի փոքրիկ ամփոփիցի, և կԹիցի անասունն ։

Եւ քանի՛ անմիտ բիւրուց կախարդաց են յերկրի. եԹէ իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ իջուցանել կարէր զնա, ոչ երբէք տայինն նմա

ելանել յերկինս ։ Այլ զի ոչ երբէք իջանէ՝ յայտ անտի է, զի ոչ զիջանելն ոք տեսանէ զնորա, և ոչ զամբառնալն ։ Եւ եթէ կացեալ միտ դնիցես, անդէն անդէն մթացեալ անօթն լուսաւորի առ սակաւ սակաւ, մինչեւ ամենեւին յարդարի ։ Զի թէ իջանելոյ ինչ հնար գոյր, թէպէտ և զիջանելն ոք ոչ տեսանէր, սակայն զհամբառնալն ամենեքեան տեսանէին ։ Այլ լուսաւորացն այնչափ ինչ է, որպէս աստուածատուր գիրք ասեն՝ թէ եղիցին 'ի նշանս և 'ի ժամանակս և յաւուրս և 'ի տարիս ։

Արդ եթէ լինին ինչ 'ի նշանս կամ ջերմոց կամ ցրտոց աստեղք, ոչ եթէ իբրեւ զկենդանիս ինչ լինիցին, այլ իբրեւ Աստուծոյ կարգեալ յայն՝ զի մի՛ դատարկք ինչ յարարածոցն Աստուծոյ իցեն ։ Եւ Յունաց իմաստունքն այնու դարավելի են, զի թողեալ զպատճառն՝ պատճառաւորացն պաշտօն մատուցանիցեն. որպէս երանելին Առաքեալն ասէ՝ թէ պաշտաւորե-

ցան և պաշտեցին զարարածս և ոչ զարարիչն ։

Ժ. ԵՒ դարձեալ, ոչ որպէս ասենն է՝ եթէ զերկիրս ջուր պատիցէ, այլ ընդ երկիր և 'ի վերայ երկրի են ջուրք. և ըստ երկիր անդր ոչինչ է, և ոչ եթէ ջուրք ։ Եւ վկայեսցեն նոցա Հերակլի արձանքըն՝ յորս գրեալ է, ասեն, թէ յայսմ վայրէ ոք անդր մի՛ ժառեսցի երթալ ։

Եւ օդ ընդ ջուրս և ընդ երկիր խառն է. և զի ընդ ջուրս օդ խառն է՝ 'ի զեռնոցն յայտ է, որ 'ի ջուրսն զօդոյն կենդանութիւնն ծծեն ։ Եւ զի ընդ երկիր նոյն օդ խառն է, յորժամ անձրեւ լեալ իցէ և արեւ տայցէ, 'ի գոլորշոյն՝ որ 'ի սըրտէ երկրին 'ի վեր ցոլանայ՝ յայտ յանդիման երեւի ։ Եւ զի ընդ օդս հուր խառն է, 'ի փայլատականցն՝ որ 'ի շփելոյ ընդ միմեանս հողմոյն և ամպոց արձակին՝ յայտ յանդիման ցուցանին ։ Եւ դարձեալ, թէ յապակի սափորակ՝ ջուր արկեալ յարեւու ունիցիս, լուսաւորու-

Թեան արեւուն մտեալ ընդ ամփ-
ոփութիւն ապակւոյն, եւ ընդ
յստակութիւն ջրոյն օդով թափ-
անցանց անցեալ՝ հուր ծնուցա-
նէ: Եւ զի ընդ ջուրս հուր խառն
է, 'ի քարանցն հանելոյ 'ի ջրոյ՝
զոր ընդ միմեանս շփիցեն եւ հանի-
ցեն հուր՝ յայտ յանդիման ցուցա-
նի. եւ զիշերի, յորժամ առ ծով-
եզերբ կայցես եւ զջուրն ժքթիցես,
նշոյլք լուսոյն հատանին:

Եւ զեռունքն որ 'ի ջուրսն 'ի ներքս
են, 'ի չորից հիւթոցն յօդեալ են,
յերկրէ եւ 'ի ջրոյ, յօդոյ եւ 'ի հրոյ,
որպէս եւ ամենայն մարմնաւորք՝
որ 'ի ցամաքին են: Զի այնպէս
կազմեաց Աստուած զաշխարհ.
նախ զչորս հիւթսն մեկնեալս ա-
րարեալ, ապա նոքօք յօդեաց զա-
մենայն. եւ միոյ արարչի գործ է
ամենայն ինչ, եւ նոյն վարէ եւ ած-
ծէ զբնաւ:

ԺԱ. ԵՒ ոչ, որպէս գլուխ փի-
լիսոփայիցն նոցա Պիւթագորաս եւ
պերիպատիկեանքն ասեն, մի միու-
թիւն՝ պատճառ ամենայնի, եւ խնա

մանկալութիւն. զոր ոչ 'ի նմանէ առին, այլ թէ զօրութիւն ինչ ինչ իցէ առանձինն խնամակալութիւնն: Եւ որպէս պատճառ ամենայնի 'ի միոջէ միութենէ տայ՝ և զխնամակալութիւնն 'ի նմանէ դնէր, գեղեցիկ և գովութեան արժանի կարգէր. բայց զի յայլմէ զպատճառան կարգէ, և յայլմէ զխնամակալութիւնն, պարսաւանաց արժանի է և ոչ յարգանաց:

Եւ դարձեալ՝ զի աստուածոցն ոչ հրամայեաց զոհել, այնու գովելի է. բայց զի ոչ յայտնի քարոզեաց՝ թէ մի Աստուած է և ոչ բազումք, այնու կարի պարսաւելի:

Գովելի և առաւել գովելի, զի վասն կարեաց և ցանկութեանց յաղթելոյ՝ 'ի կերակրոցն կրօնաւորեցաւ. բայց զի փոփոխմունս ոգւոց 'ի մարմնոց 'ի մարմինս ետ, այնու յոյժ եպերելի է: Որպէս թէ արդարոցն մեռելոց ոգիք յայլ 'ի սուրբ մարմինս փոխիցին, կամ 'ի մարդկան կամ յանասնոց սրբոց. և այն նոցա իբրև ընդ հատուց-

մանն բարեաց գործոց լինիցի ։ Եւ մեղաւորացն ոգիք յաղտեղի մարմինս փոխեցին , կամ 'ի մարդկան կամ 'ի գազանաց և 'ի ճճեաց և 'ի սողնոց . և այն նոցա ընդ հատուցման չարեաց գործոց լինիցի ։

Եւ զմիսն չուտել՝ եթէ վասն զկարծիս մարմնոցն խափանելոյ հրամայէր , բարուք և յիրաւի առնէր . այլ եթէ իբր 'ի պղծոյ իմիքէ արարածոց հրամայէր հրաժարել , վատթարագոյն ։ Այլ յայտ են պատճառքն՝ ուստի զմիսն շնչաւորացն հրամայէր չուտել . որպէս թէ հոգի աստուածեղէն իցէ 'ի մսեղիսն , և վասն այնորիկ չիցէ պարտ ուտել զմիս կենդանեացն ։ Վասն որոյ և մորթքն նախ յաղեն , և ապա սպանանեն զանասունսն , զի յանցգայ ելանիցեն շունչքն 'ի մարմնոց անտի ։ Եւ զայն ոչ գիտեն՝ թէ երկուս մահ սպանանեն . մի յաղելովն , և միւս եւս փողոտելովն ։

Նոյնպէս և Պիւթագորաս ոչ հրամայէ անասունս զոհել գեղ , որպէս թէ չիցէ պարտ զոհել աս_

տուածս աստուածոց ։ Քանզի հոգի աստուածեղէն ածէ յանաստուածութն . և յայտ անտի է՝ զի երկիրպագանել հրամայէ, և զոհել ոչ ։

Կարի անարժան գործ էր, և 'ի լուսնոյ 'ի վեր զամենայն ինչ անմահ համարել ։ Ցայտ առնէ, թէ զայն ամենայն աստուածս կարծէր. և անտի և 'ի խոնարհ մահկանացուս գնելով, ցուցանէր՝ թէ հուր և օդ և երկիր կենդանիք ինչ իցեն, և մեռանիցին. որոց ոչ զկենդանութիւնն զգացեալ, և ոչ զմահու ազդումն առնուն, որ շնչաւորացն է և ոչ անշնչոց ։

Եւ հինգամեայ լռութիւնն, զոր նոր յաշակերտութիւն եկելոցն սահմանեաց, թէպէտ և մեծի ժուժկալութեան օրինակ էր, քանզի և ոչ հարցանել ինչ իշխէին՝ բայց միայն լսել, այլ ոչ ինչ կարի յօգուտ էր ։ Զի թէ յառաջ քան զհինգամեայ զժամանակն վճարէր ոք 'ի նոցանէ, թէպէտ և կարի քաջ 'ի լսելոյն իմաստնանայր, ոչ ինքն վայելէր յիմաստութեանն՝ քանզի ոչ

իշխեր խօսել, և ոչ այլ ոք՝ վասն զի ոչ լսէր զիմաստութիւնն ։

Եւ որ անհնարին յիմարութեանն է, յետոյ՝ ասեն՝ զիւր անձնն աստուած անուանեաց. որ յառաւել հպարտութեանէն դիպեցաւ նմա. զի ոչ եկն ըստ բանի իմաստնոյն՝ թէ որչափ 'ի մեծութիւն հասանիցես, 'ի խոնարհութեան կալջիր զանձն ։

ԺԲ. ԻՍԿ Պղատոն, որ աստուածն և հիւղ և իդոս գնէ էութեամբ, ցուցանէ թէ կերպարանաց արարիչ է Աստուած, և ոչ բնութեանց ։ Ուստի և աղանդացն առեալ նովին դանդաչեն՝ թէ որպէս Աստուածն էութեամբ էր, նոյնպէս և հիւղն և իդոսն՝ որ է առանձինն ինչ ուրուք. որպէս Աստուծոյ արուեստագիտութիւնն՝ առանձինն էր և հիւղեայն նիւթն, և 'ի կերպարանս եւեթ կարգաց ածել զհիւղն՝ որ խառն 'ի խուռն վարէր, և ոչ 'ի չգոյէ 'ի գոյ ած զամենայն՝ որպէս և կարօղ տէնայնի. որ տկարութիւն արկանէ զԱստուծով, թէ կարօտ եղեւ յայլ

մէ նիւթ մտաւորանալ . որով ոչ ինչ առաւել քան զարուեստագէտան գտանի , թէ իբրեւ զնոսա կարօտ նիւթոյ իցէ : Եւ զաշխարհ արարած և եղծանելի ասէ . և երբեմն նա և այլքն մշտնջենաւորակից Աստուծոյ :

Եթէ արարած և եղծանելի է , զիա՞րդ մշտնջենակից Աստուծոյ իցէ . և եթէ մշտնջենակից իցէ , ուպէս ասենն՝ թէ որպէս ստուեր իրիք ոչ երբէք հեռանայ յիմեքէն՝ նոյնպէս և ոչ աշխարհս երբէք զատ յԱստուծոյ , թէ այնպէս իցէ . զուր է ասելն՝ թէ արարած եղծանելի է աշխարհս . բայց թէ զայն եւս իշխեսցեն ամպարշտել՝ թէ որ պատճառ ստուերին է , 'ի մէջոյ բառնալոց իցէ : Ապա թէ այն ոչ լինիցի , քանզի և չլինի իսկ , և ոչ ստուեր 'ի մէջոյ բառնալոց է . և տարապարտ են դանդաչանքն :

Եւ շուանչքն՝ թէ վասն զի յԱստուծոյ էութենէն իցեն՝ անարարք և անմահք իցեն , երեք մասունքն 'ի նոսա ուստի՞ իցեն՝ բանականն և

ցասմնական և ցանկական : Զի թէ պէտ և մինն է յԱստուած , զի նա է աղբիւր ամենայն բանաւորութեան , այլ 'ի ցասմանէ և 'ի ցանկականոյ 'ի վեր և ազատ է Աստուած . քանզի առանց կարեաց և առանց մասանց է աստուածականն :

Եւ եթէ ինքն՝ որպէս ասենն՝ լաւութեանց վասն կոյս վճարեցաւ յաշխարհէ , այլոց զիա՞րդ հրամայէր զկանոյս հասարակաց համարել , և ոչ խուրում կնոջ եւեթ սկել :

Եւ զաստուածեղէն շունչսն ընդէ՞ր և նա իբրեւ զառաջինսն փոփոխելիս 'ի մարմնոց 'ի մարմինս համարէր , մինչեւ 'ի սողունս անգամ և 'ի ձկիս : Որոյ հայհոյութիւնն 'ի բուռն իսկ գնայ , ըստ նորա ամպարշտութեանն . որպէս թէ զկէսն յիւր յինքեան ունիցի , և զկէսն իւր 'ի սողունսն և 'ի ձկիս տանջիցէ . որ ոչ նորա է , որ անբաժին և անքանակ և անհատ և առանց մասանց է :

Եւ եթէ , որպէս զանդաչեննն ,

բաղում աստուածք 'ի միոջէ Աստուծոյն ելեալ իցեն, ընդէ՞ր ոչ բաղում աշխարհք իցեն, և ոչ բաղում երկինք, և ոչ բաղում արեգակունք, և ոչ բաղում երկիրք: Այլ Թերևս դատարկս աստուածս եհան յիւրմէ. և դատարկք աստուածքն ո՞ւմ պիտոյ իցեն:

ԺԳ. ԻՍԿ ստոյիկեանքն մարմնապաշտք հայեցեալ յերևելի աշխարհս, զամենայն ինչ մարմին կարծեցին. և զերևելի աշխարհս աստուած համարեցան: Որք աղանդամոլք գիտեն 'ի փիլիսոփայից, ոչ ինքեանք զիմանալի ինչ զմտաւ կարացին ածել, և ոչ յայլոց ուսանել կամեցան, եթէ է ինչ գոյութիւն՝ որ զերևելիս շարժէ, և զշարժիչն պարտ է Աստուած իմանալ և ոչ զշարժունսն:

Իսկ ոմանք 'ի նոցանէ 'ի հրոյ էութենէ ասեն զբնութիւն աշխարհիս, վասն զարեգակն առաւել զարմանալի համարելոյ, և զբնութիւն հրոյ սաստկագոյն իմանալոյ: Եւ հայեցեալ 'ի միտս՝ թէ զամե-

նայն է մտօքն նկատել մարթեն, վասն այնորիկ զմիտս աստուած համարեցան, իբրեւ զշունչ երկնից եւ երկրի եւ ամենայնի որ 'ի նոսա. եւ այս զլուսաւորսն, որք ըստ անարժան անմտութեանն՝ եւ ոչ պատասխանի առնելոյ արժանի են :

Եւ զմայրմին իբրեւ զայլան կորդատական համարին, եւ զշունչսն փոփոխելի 'ի մարմնոց 'ի մարմինս, զոր եւ ոչ նոքա յայտնի կարեն առնել, եւ ոչ այլքն առասպելոյնք քան զնոսա : Զի ամենեքեան առասպելս արկանեն. եւ թէպէտ եւ կէսքն հասին ճշմարտութեանն, չկացին 'ի ճշմարտութեանն :

ԺԴ. ԻՍԿ եպիկուրայքն բնաւ ինքնակաց իսկ համարին զաշխարհս : Որպէս թէ նախ հողամաղք ընթանային. որպէս յորժամ շողն ընդ երդ մտանիցէ, եւ հողամաղք իմն երեւին 'ի շողն, այնպիսի՝ ասեն՝ մարմինք անհատք եւ անբաժինք էին զառաջինն, եւ անտի թանձրացեալ յօդեցաւ ինքն աշխարհս : Եւ թէ ոչ Աստուած եւ ոչ խնամակա-

լուԹիւն ինչ է, որ՝ վարկցէ զաշ-
խարհս ։ Զորս և փիլիսոփայքն ինչ
յընչաց քերԹեն, և ամենեւին չհա-
մարին ընտաա ադամնդս ։ Զորոց և
Առաքեալ ասէ՝ Թէ առանց Ա-
ստուծոյ շրջէին յաշխարհի ։ Որոց
այնքան կամակոր յամառուԹիւն
եղեւ, մինչեւ յայնչափ 'ի բազում
'ի նախորաց փիլիսոփայիցն աստուա-
ծոց և ոչ մի աստուած ըմբռնել ։
Տեսանե՞ս՝ զի գործ ստահակու-
Թեան այնչափ բռնացեալ ըմբռնե-
լեացն, մինչեւ անաստուած հա-
նել յաշխարհէ ։

ԺԵ. ԱՌ Սերուքաւ եղեւ,
ասեն, սկիզբն հեԹանոսուԹեան ։
Ուստի յայտ է՝ Թէ ցայն վայր աս-
տուածպաշտք էին, և եկեղեցի
Աստուծոյ 'ի սկզբանէ աշխարհի
էր ։ Զորմէ և ԴաւիԹ 'ի Հոգւոյն
սրբոյ ուսեալ, մատուցանէր ա-
ղօԹս՝ Թէ յիշեա զեկեղեցի քո զոր
ստացար 'ի սկզբանէ ։

Բայց Թէպէտ և հեԹանոսու-
Թիւնն եմուտ յաշխարհ, այլ աս-
տուածպաշտուԹիւնն ոչ ամենե-

վին պականեալ ։ Եւ յայտ անուն է, զի գնացեալ Աբրահամ 'ի հեթանոսացն եկն աստուածապաշտաց պատահեաց․ Մելքիսեդեկայ քահանայի Աստուծոյ բարձրելոյ, և քահանայ ոչ երբէք անուանի՝ եթէ ոչ ժողովուրդ գուցէ նորա․ և Աբիմելէքայ՝ որ Աստուծոյն եւեթ խօսէր ընդ Աբրահամու, և ոչ դիւօք ։ Եւ բարեկամքն Յոբայ և Եղիուս Աստուծով միայն ամենակալաւ խօսէին ընդ նմա ։

Եւ այնպէս ոչ եթող երբէք Աստուած զաշխարհս առանց վկայութեան․ որպէս մարգարէն առ հրէութեամբն ասէր իբրեւ յերեսաց Աստուծոյ՝ թէ յամենայն տեղիս արկանեն խունկս և մատուցանեն պատարագս անուան իմում ։ Զի ցուցցէ՝ թէ յամենայն գաւառ աստուածապաշտք գտանէին, որք յանդիմանէին զհեշմակապաշտսն ։

ԺԶ․ ԱՅԼ, ասէն, ընդէ՞ր յամեաց գալուստն Քրիստոսի, և կորեան այնչափ ազգք՝ առանց աստուածպաշտութեան ։

Եթէ չէր աստուածաքարոզս աս-տուածպաշտութեանն յամենայն դարս առաքեալ, թերեւս դոյր մուտ այնպիսի բանից. բայց զի ոչ երբէք դադարեաց 'ի վկայութիւն տալոյ, անձանց մեղ դիցեն չհա-ւանողքն, և մի՛ Աստուծոյ:

Չեկն Քրիստոս 'ի տղայութեան աշխարհի. զի տղայոցն կաթն պի-տոյ էր, և ոչ հաստատուն կերա-կուր. և ոչ յեռանդման երիտասար-դութեանն, յորժամ եռեալ զե-ղոյր մոլորութիւն դիւապաշտու-թեանն: Այլ նախ կրթեաց քա-րոզովքն և մարգարէիւք՝ իբրեւ կաթամբ, և ապա եկն տալ զկա-տարեալ վարդապետութիւնն, իբ-րեւ հաստատուն կերակուր: Քան-զի և ոչ տղայոյ ոք հաստատուն կե-րակուր տայ, և ոչ մեծամեծ խոր-հուրդս յայտնէ, և ոչ առաւել բանս խօսի, մինչեւ 'ի կատարեալ չափ հասակին հասանիցէ:

Որպէս Առաքելոյ՝ առեալ զին-քեամբ զերեսս ամենայն մարդկու-թեան, ասէ. մինչ տղայն էի, իբ-

րեւ զտղայ խորհէի . այլ իբրեւ եղէ այր , զտղայութեանն խափանեցի ։ Զի ցուցանիցէ՝ թէ ՚ի հասուն հասակի եկն յաշխարհ ՚ի կատարեալ գիտութիւնն , որպէս յայսմ աշխարհի մարթի հասանել գիտութեան ։ Այլ ՚ի վայելչութիւն կատարելոյ գիտութեանն , և զանձն և զայլս անդր հրաւիրեաց աւելորդին՝ թէ այժմ փոքր ՚ի շատէ գիտեմք , այլ յորժամ եկեսցէ կատարումն՝ դէմ յանդիման տեսանեմք ։

Ուստի յայտ է՝ թէ առ ամենայն կարօղ է Աստուած , և յամենայնի բաւական ։ Կարօղ էր եւս վաղ յառաջին յաւիտենական առնել զաշխարհ . այլ այնպէս կամեցաւ՝ զի ոչ կարի վաղ առնիցէ , և ոչ յոյժ անագան , այլ յորժամ դէպ և պատշաճ իցէ ։ Զի մի՛ վաղն առնելովն լեալքն ծուլասցին, կարծելով թէ մշտնջենաւորք նորա իցեն . և մի՛ դարձեալ անագանն առնելովն կարծիք տկարութեան լինիցին և առաջին և միջին և վերջին խորհրդոցն ։

Նա և զմարդն, զոր ժառանգ ամենայնի կամեցաւ առնել, ոչ նախ քան զժառանգութիւնն արար. այլ նախ զերկինս և զերկիր, զջուրս և զհուր և զօդ և զբոյսս և զտունկս, զգազանս և զանասունս և զթռչունս: Նախ զտունն, և ապա զտնակալն. նախ զստացուածսն, և ապա զստացօղն. նախ զծառայսն, և ապա զտէրն. զի մի՛, յորժամ յետոյ լինիցին՝ որոց իշխանն եղեւ, կարծիս մնասու առնուցու՝ թէ իւր արարածք իցեն: Այլ յորժամ նախ զնոսա արարեալ տեսանիցէ, ծանուցեալ առնուցու ՚ի միտ՝ թէ է իմն զօրութիւն, որ արար և ետ զնոսա ընդ ձեռամբ նորա. և զպատիւ փառաւորութեանն մի՛ անձին առնել խորհեսցէ, այլ իւրում արարարին՝ որ ձրի նմա զայն շնորհեաց:

Նոյնպէս և զգալուստ Որդւոյն իւրոյ յայնմ ժամանակի պատրաստեաց, յորում գիտէր թէ յօգուտ լինելոց է: Եւ եթէ բժիշկ ըստ պէսպէս հիւանդութեանց՝ աղցի

ազգի գեղս ախտացելոցն մատու-
ցանել, զի որ սկզբան ցաւոյն դէպ
իցէ՝ զայն 'ի սկզբանն մատուցա-
նեն, և որ յընդմիջելն՝ զայն 'ի մի-
ջոցի, և որ 'ի պատաւել ցաւոյն՝
զայն հուսկ յետոյ, որչափ ևս ա-
ռաւել ամենահնարն՝ յորմէ ամե-
նայն համդամանք հնարողութեան
բաշխեալ են, 'ի դէպ ժամանակի
առնէ զոր առնէ. ոչ առաջին և
երկրորդ և վերջին խորհրդով, այլ
միանգամայն ըստ կամելոյն՝ զգործն
արդեանցն կատարէ: Եւ ոչ յե-
տոյ ծնանի 'ի նմա կամելն. այլ իւ-
րեւ կանխագէտ գիտէ զամենայն,
մինչ չեւ ինչ լեալ իցէ, թէ որպէս
պարտ իցէ առնել, և յոր ժամա-
նակի, և յոր պէտս: Եւ ոչ խառն
'ի խուռն ինչ առնէ, թէ առ ապա
զղջանայցէ և եղծանիցէ զաստեղ-
ծուածն իւր: Եւ ոչ իմիք կարօ-
տանայ, թէ առնլոյ ինչ յումեքէ
կամ յումեքէ ակն ունիցի. այլ բա-
ւանդակ յինքեան ունի զամենայն
կարողութիւն առնելոյ և հաստա-
տելոյ զամենայն, և անխափան

պահելոյ ։ Եւ չունի զոք ընդ իւր զօգնողակից՝ երբեւ զեղբայր, կամ երբեւ զընկեր, կամ երբեւ զօտար ոք գործակից. այլ միայն զիւր զօրութիւնն և զիմաստութիւնն, որ իւրոյ էութեանն ծնունդ է և մշտնջենաւորակից. և զիւրոյ զբնութեանն Հոգին, որ 'ի նմանէ է և միշտ առնմա անջատ և առանց բաժանելոյ ։

ԺԷ. ԵՒ յայսմ ամենայնէ յայտ է՝ եթէ ոչ հիւղ ինչ, որ է նիւթ, էր ընկերակաց Աստուծոյ, ըստ ասեն Յունաց իմաստունքն զարարածս տարրեալ, և 'ի նմանէ չարեաց յաշխարհ մտեալ, որպէս ասեն աղանդքն՝ որ 'ի նոցանէ առին պատճառս զհիւղեայն աստուածացուցանել, դնել աստուած հակառակ Աստուծոյ ։ Եւ ոչ այլ ոք արարիչ էր չարեաց, որպէս մոգքն խաբին՝ թէ Խարամանն արար զչարիս. այլ մի միայն Աստուած է արարիչ, և նոյն բարեաց և ոչ չարեաց, և մշտնջենաւոր արարիչ ։ Զի և մինչ չեւ արարեալ էր զարարածս 'ի մտի իւրում ունէր յա-

ռաչգիտութեամբ զպայման կառա-
մածոյ արարածոց ։ Եւ չէր երբեք
յորժամ չէր արարիչ, այնու զի
ունէր յինքեան զկարողութիւնն ա-
մենեցուն բաւական լինելոյ ։

Եւ բազում պատճառք էին Սա-
տուծոյ, որովք եկն զարարածս
առնել ։ Նախ զճշմարտութեանն
խելամտութիւն չէր արար զա-
տարկ թողուլ. զի մի՛ իբրեւ զանկար
ոք պարտեալ ինչ գտանիցի՝ առ ՚ի
չկարելոյ առնել զայնս, զորոց խե-
լամտութիւնն յինքեան ունէր կա-
խակալ գիտութեամբ ։ Երկրորդ-
անգամ, քանզի բարերար է բնու-
թեամբ, չէին իրաւունք զբարե-
րարութիւնն անօգտակար պահել ։
Եւ այլ ինչ բազում նման սոցին
էր զԱստուծով, վասն որոց կառա-
մածոյ աշխարհի արար օկնգքն ։

Որպէս ոք եթէ ճարտարութիւն
իրաց ինչ գիտիցէ, եթէ զնուագա-
ծութեան և եթէ զբժշկութեան,
եթէ զհիւսնութեան, և արդեամբք
զճարտարութիւնն չցուցանիցէ, ՚ի
զուր ունի զհանգամանս ճարտա-

րութեանն՝ ուստի ոչ ինքն վայե-
լեսցէ, և ոչ այլոց զգիտութիւն
արուեստին ցուցանիցէ ։ Նոյնպէս
և որ բարերար ոք իցէ, եթէ բա-
րերարութեանն վայելելիք չիցեն,
ո՞ւմ շահ իցէ բարերարութիւնն ։
Զի բարերարութեանն առաքինու-
թիւն այն է՝ յորժամ այլքն՝ ի նմանէ
վայելեսցեն. եթէ չիցեն՝ որք վայե-
լիցեն ՚ի բարերարութեանն, զի՞նչ
շահ իցէ ՚ի բարերարութենէ անտի ։
Նոյնպէս և Աստուծոյ որ զամե-
նայն ճարտարութիւն արուեստա-
գիտութեան ունէր յինքեան, եթէ
չէր արարածս արարեալ՝ ՚ի զուր
կարծէր ունել զճարտարութիւնն,
յորժամ չէին՝ որք ՚ի ճարտարու-
թենէ անտի երեւէին ։ Նա և ոչ բա-
րերարութիւնն բարերարութիւն
ցուցանէր, եթէ արարածս չէր ա-
րարեալ՝ որք ՚ի բարերարութեանն
վայելէին ։ Այլ նա այնպէս բարե-
րար է, զի ոչ միայն զամենեսին շնոր-
հեացն նոցա, այլ և յուրախութիւնս
բարութեանցն վայելել ։
Դարձեալ՝ թէ չէր Աստուծոյ ա-

րարածս արարեալ, և գիտէր իսկ
ոք ոչ՝ թէ բնաւ իցէ Աստուած.
յորժամ չէին 'ի միջի՝ որք զկարո-
ղութիւն գիտութեանն սատանայինն:
Ուստի քանզի յիւր գիտութիւնն
ածել կամեցաւ, և թէ է ինքն՝ ցու-
ցանել, յօժարեաց արարածս առ
իւրոյ գիտութեանն ընծայեցուցա-
նելոյ, զի վայելեսցեն 'ի բարերա-
րութեանն նորա: Եւ զպէտս աշ-
խարհիս վասն մարդոյ արար 'ի սպա-
սաւորութիւն ամենայն իրաց կա-
րեւորաց. և զմարդն յիւր փառս,
զի փառաւորեսցէ զՏէրն և ծանի-
ցէ զբարերարութիւնն:

Եւ այսպէս ոչ երբէք էր Աս-
տուած դատարկ յարարչութենէ.
քանզի միշտ 'ի մտի նկարեալ ու-
նէր զորս առնելոցն էր: Եւ զի չէր
'ի դէպ կամօքն եւեթ և խորհր-
դօք ունել զկարողութիւնն, վասն
այնորիկ առ յայտնելոյ զկամսն և
զխորհուրդս՝ ած յայտ զարարածս,
զի իւր կարողութիւնն երեւեսցի և
արարածքն 'ի նորա բարերարու-
թեանն վայելեսցեն:

Արդ մի՛ ոք ինքնակաց զաշխարհս իշխեսցէ համարել, և մի՛ ընթերակաց ինչ Աստուծոյ, զի մի՛ զմեծութիւն զօրութեան նորա խախտիցէ. այլ ամենեցուն նա շնորհեաց զլինելն, որք ոչն էին յառաջագոյն : Ընդէ՞ր զզօրութիւնն նորա 'ի միջոյ բառնալ կամիցին, և արուեստադէտ միայն նիւթոյ իմիք զնա համարիցին, և ոչ 'ի չգոյէ 'ի գոյ ածել զհաստակս ամենայնի : Չգոյր ինչ ժամանակակից Աստուծոյ, և ոչ նիւթ ինչ՝ ուստի առեալ զարարածս կազմիցէ. այլ ինքն է ամենայն բնութեանց արարիչ. և ոչ միայն կերպարանաց կազմիչ, և ոչ էութեան էականաց իրիք խառնիչ, այլ գոյանալոյ գոյացելոցն գոյարար :

Զայսպիսիս պատուէին առնել մարդիկ զԱստուծոյ, և այսպիսի պատմութեանց լինել պատմիչք. որով Աստուած փառաւորի, և մարդիկ ոչ վնասին :

Այլ ըստ Աստուծոյ արժանեաց ո՞րք արժանաւոր իցեն պատմիչ լի-

նել, բայց եթէ Աստուծոյ բարե-
կամք՝ որք վասն նորա սիրոյն և ըն-
կեանս աշխարհիս արհամարհեցին,
և մահու չափ վասն կենդանւոյն յու-
սոյն՝ որ առ Աստուած՝ գուն գոր-
ծեալ, մատնեցին զանձինս 'ի կո-
րուստ մարմնոց, ուստի փրկութիւն
ազգացն գտանի ։

Եւ արդ 'ի զուր խակ Ջանեան ի-
մաստունքն Յունաց զԱստուծոյ
ճառել, այնու զի զարարիչն և զա-
րարածս 'ի միմեանց ոչ կարացին
ընտրել, որք մթով գիտացն խաւա-
րեալք՝ ծնունդս բազումս և ան-
թիւ աստուածոց մուծանել զան-
գաչեցին ։

Որպէս Եսիոդոս ոմն իմաստուն
'ի նոցանէն՝ բազում ծնունդս աս-
տուածոց համարէր ։ Եւ Հոմերոս
զզարանեալ, զնորին հետ երթեալ,
պաճուճեալ բանիւք զնոյնս ճա-
մարտակէ ։ Եւ այլք բազումք 'ի
փիլիսոփայից առասպելական բա-
նիւք բանդագուշեալք, խոստանան
զԱստուծոյ պատմութիւնս կատա-
րել ։ Որք զԱստուածն ոչ ճանա-

չեն, և ոչ զարարիչն յարարածոց մեկնել գիտեն, զիա՞րդ զԱստուածոյ ճառել մտաբերիցեն։ Եւ մանաւանդ որ քան զամենեսինն իմաստնագոյն համարին զՊղատոն, որ վասն Աստուծոյ և վասն ոգւոց և վասն արարածոց խօսել յօժարեցաւ։

Եւ արդ ընդ նմա իսկ մարտիցուք գոռութեան բանիւք, որ քան զամենայն փիլիսոփայսն աստուածապաշտագոյն երեւի Յունաց։ Զի նորա առաւել գտանի չծանուցեալ զԱստուած, և ոչ զարարչութիւնն արարածոց։ Զի յորժամ զնորա մեծարոյ կարիսն գրձձեսցուք, և հանցուք զնա յաշաց իւրոցն խաբեցելոց, այլ ցուցցուք թէ ով Աստուած է, և զինչ նորա արարածք։

Եւ մի ինչ, զոր առաւել անճառ համարի Պղատոն, այս է՝ թէ միշտ էր Աստուած, և արարածս ինչ ոչ ունէր․ զորոյ զկամսն սիրեմ վասն զԱստուածն խնդրելոյ, և զամբարտաւանութիւնն ոչ գովեմ։

ԳԻՐՔ ԶՈՐՐՈՐԴ

# ԽԴԾ

## ԱՂԱՆԴՈՑՆ ՄԱՐԿԻՈՆԻ

Ա. ՄԱՐԿԻՈՆ մոլորեալ մուծանէ օտարութիւն ընդդէմ աստուծոյն օրինաց, եդեալ ընդ նմա և զհիւղն էութեամբ, և երիս երկինս ։ 'Ի միոջն, ասէ, բնակեալ է օտարն. և յերկրորդումն օրինացն աստուած. և յերրորդումն զօրք նորա. և յերկրի հիւղն, և կոչեն զնա զօրութիւն երկրի ։

Եւ այնպէս կարգէ զաշխարհէ և զարարածոց, որպէս օրէնքն ասեն ։ Այլ և յաւելու՝ թէ հաղորդութեամբ ընդ հիւղեայն արար զամենայն զոր արար. և որպէս թէ էր ոք ինչ և կին ամուսնութեան էր հիւղն ։ Եւ յետ առնելոյ զաշխարհս եւ ինքն զօրօքն հանդերձ

յերկինս . և հիւղն և որդիք նորա մնացին յերկրի , և կալան զհիւրաքանչիւր իշխանութիւն , հիւղն յերկրի , և օրինացն սատուած յերկինս :

Եւ տեսեալ օրինացն սատուածոյ՝ թէ գեղեցիկ է աշխարհս , խորհեցաւ առնել 'ի սմա մարդ : Եւ իջեալ առ հիւղն յերկիր , ասէ . տուր ինձ 'ի կաւոյդ քումմէ , և յինէն տամ ոգի , և արասցուք մարդ ըստ նմանութեան մերում : Տուեալ նմա հիւղեայն յերկրէ իւրմէ , ստեղծ զնա և փչեաց 'ի նա ոգի , և եղեւ Ադամ 'ի շունչ կենդանի . և վասն այնորիկ անուանեցաւ Ադամ , զի 'ի կաւոյն արարաւ : Եւ ստեղծեալ զնա և զամուսինն նորա , և եդեալ 'ի դրախտին՝ որպէս և օրէնքն ասեն , գային հանապազ պատուիրէին նմա , և ուրախ լինէին 'ի նմա իբրեւ յորդւոջ հասարակաց :

Եւ տեսեալ , ասէ , սատուածոյն օրինաց որ տէրն էր աշխարհի՝ թէ ազնուական է Ադամ և արժանի

սպասաւորութեան, հնարեցաւ՝ ե-
թէ զխորդ կարասցէ գողանալ զնա
՚ի հիւղեայն, և յիւր կողմն միաբա-
նել: Առեալ զնա ՚ի մի կողմն, ա-
սէ. Ադամ, ես եմ աստուած և
չիք այլ ոք. և բայց յինէն այլ աս-
տուած քեզ մի՛ լիցի. ապա թէ ու-
նիցիս զոք այլ աստուածս բայց յի-
նէն, գիտասջիր զի մահու մեռա-
նիցիս: Եւ իբրև ասաց զայս ցնա,
և յիշատակեաց նմա զմահուն մա-
հու, զահի հարեալ Ադամայ՝ սկսաւ
տակաւ զանձն մեկնել ՚ի հիւղեայն:

Եւ ելեալ հիւղեայն՝ պատուի-
րել նմա ըստ սովորութեանն, տե-
սանէր՝ զի ոչ անսայր նմա Ադամ,
այլ խորհեալ ՚ի բաց մերժէր, և
չմերձենայր առ նա: Յայնժամ
հիացեալ ՚ի միտս իւր հիւղեայն,
իմացաւ՝ թէ տէրն արարածոց նեն-
գեաց նմա: Ասէ. յականէ աղբերն
պղտորեալ է ջուր նորա. զի՞նչ է
այս, չեւ ևս բազմացեալ Ադա-
մայ ծննդովք, և գողացաւ զնա
անուամբ աստուածութեանն իւ-
րոյ յինէն: Որովհետև ատեաց

զնա, և ոչ պատճեաց ընդ իս զդաշնն, ես արարից աստուածս բազումս, և լցից նորօք զաշխարհ գոյիւ իւրով, զի խնդրիցէ՝ թէ ով իցէ աստուած, և ոչ գտանիցէ ։

Եւ արար, ասէն, կուռս բազումս և անուանեաց զնոսա աստուածս, և ելից նորօք զաշխարհ ։ Եւ ընկղմեցաւ անուն աստուծոյ, որ տեառնն արարածոց, ՚ի մէջ անուանց բազում աստուածոց, և ոչ ուրեք գտանէր ։ Եւ մոլորեցաւ ծնունդ նորա նոքօք, և ոչ պաշտէր զնա, զի ձգեաց զամենեսին առ ինքն հիւլն, և ոչ ետ թոյլ և ոչ միում ՚ի նոցանէ պաշտել զնա ։ Յայնժամ, ասէն, բարկացաւ տէրն արարածոց, զի թողին զնա և անսացին հիւլեայն. և մի ըստ միոջէ, որ ելանէին ՚ի մարմնոց իւրեանց, արկանէր զնոսա առ ցասմանն ՚ի գեհեն. և զԱդամ արկ ՚ի գեհեն վասն ծառոյն. և այնպէս արկանէր զայր ՚ի գեհեն զամենեսին, մինչեւ ցքսան և ինն դար ։

Եւ տեսեալ, ասէն, աստուծոյն

բարւոյ և օտարի, որ նստէր յեր-
րորդ երկինս, թէ այնչափ ազգք
կորեան և տանջեցան 'ի մէջ երկուց
նենգաւորաց՝ տեառնն արարածոց
և հրեղինաց, ցաւեաց նմա վասն
անկելոցն 'ի հուր և տանջելոց ։
Առաքեաց զորդի իւր երթալ փրր-
կել զնոսա, և առնուլ զնմանու-
թիւն ծառայի, և լինել 'ի կերպա-
րանս մարդոյ 'ի մէջ որդւոց աս-
տուծոյ օրինացն ։ Բժշկեսջիր, ա-
սէ, զգօրատս նոցա, և կեցուսջիր
զմեռեալս նոցա, և բացջիր զկոյրս
նոցա, և արասջիր 'ի նոսա բժշկու-
թիւնս մեծամեծս ձրի. մինչ զի
տեսանիցէ զքեզ տէրն արարածոց,
և նախանձիցի, և հանիցէ զքեզ
'ի խաչ ։ Եւ ապա 'ի մեռանելն
քում՝ իջցես 'ի դժոխս, և հանցես
զնոսա անտի. զի չեն սովոր դժոխք՝
ընդունել 'ի միջի իւրեանց զկեանս ։
Եւ վասն այնորիկ ելանես ի խաչ,
զի նմանեսցիս մեռելոց. և բացցէ
դժոխականն զբերանն իւր՝ ընդու-
նել զքեզ. և մտցես 'ի մէջ նորա,
և թափուր արասցես զնա ։

Եւ իբրեւ եհան զնա 'ի խաչ, ա-
սէն, էջ 'ի գժոխսն, եւ Թափուր
արար զնա: Եւ հանեալ զոգիսն
'ի միջոյ նորա, տարաւ յերրորդ
երկինսն առ հայրն իւր: Եւ տէրն
արարածոց զայրացեալ, առ ցաս-
մանն էցել զպատմուՃանն իւր եւ
զվարագոյր տաՃարին իւրոյ. եւ խա-
ւարեցոյց զարեգակն իւր, եւ զգե-
ցոյց Թուխս աշխարհին իւրում, եւ
նստաւ 'ի սուգ առ տրտմուԹեանն:

Այս երկրորդ անգամ իջեալ
Ցեսու կերպարանօք ստատուածու-
Թեան իւրոյ առ տէրն արարածոց,
գնէր զատ ընդ նմա վասն մահուն
իւրոյ: Եւ տեսեալ տեառն աշ-
խարհի զստատուածուԹիւնն Ցե-
սուայ, գխոաց՝ Թէ գոյ այլ աս-
տուած արտաքոյ քան զնա: Եւ
ասէ ցնա Ցեսու. դատաստան կայ
իմ ընդ քեզ, եւ մի՛ ոք լիցի դա-
տաւոր 'ի միջի մերում, այլ քո իսկ
օրէնքն՝ զոր գրեցեր: Եւ իբրեւ ե-
դին զօրէնսն ի միջի, ասէ ցնա Ցե-
սու. ո՞չ դու գրեցեր յօրէնսդ քում՝
Թէ որ սպանանիցէ, մեռցի. եւ որ

հեղու զարիւն արդարոյ, հեղցեն զարիւն նորա։ Եւ ասէ. այս ես գրեցի։ Եւ ասէ ցնա Յեսու. արդ տուր զքեզ 'ի ձեռս իմ՝ զի սպանից և հեղից զարիւն քո, որպէս սպաներն դու զիս և հեղեր զարիւն իմ. զի արդար եմ իրաւամբք քան զքեզ, և երախտիս մեծամեծս արարի յարարածն քում։ Եւ սկսաւ համարել զերախտիսն, զոր արար յարարածս նորա։

Եւ իբրեւ ետես տէրն արարածոց՝ թէ յաղթեաց նմա, և ոչ գիտէր զինչ խօսեցի, քանզի յիւրոց օրինացն պարտաւորեցաւ, և չգտանէր տալ պատասխանի, զի եղեւ մահապարտ փոխանակ մահուանն նորա, ապա յորդորս անկեալ աղաչէր զնա՝ թէ փոխանակ զի մեղայ և սպանի զքեզ յանգէտս, քանզի ոչ գիտացի՝ թէ աստուած իցես, այլ մարդ համարէի զքեզ, տուեալ քեզ ընդ այնր վրիժուց՝ զամենեսեան որ կամիցին հաւատալ 'ի քեզ՝ տանել յիս և կամիցիս։ Ապա թողեալ զնա Յեսուայն՝ յափշտա-

կեաց առ զՊաւղոս , և յայտնեաց նմա զգիրսն , և առաքեաց զնա քարոզել՝ թէ զնոց գնեալ եմք մեք . և ամենայն որ հաւատայ 'ի Յեսու՝ վաճառեցաւ յարդարոյ ան-տէր բարուոյն :

Այս սկիզբն է աղանդոյն Մար-կիոնայ . թող զայլ բազում թար-մատարսն . և զայս ոչ ամենեքին գիտեն , այլ սակաւք 'ի նոցանէ . և աւանդեն զուսուցմունն միմեանց 'ի բերանոյ . ասեն , օտարին՝ զնովք գնեալ է զմեզ 'ի տեառնէն արա-րածոց , և թէ որպէս կամ ի՛ւ գնեալ իցէ , զայն ոչ ամենեքին գի-տեն :

Բ . ՊԱՏԱՍԽԱՆԻ . արդարեւ որպէս երանելին Առաքեալ ասէ , թէ իմաստութիւն աշխարհիս այ-սորիկ յիմարութիւն է առաջի Աս-տուծոյ : Զի՞նչ առեալ կամ զի՞նչ կցկցեալ կամ ոյր բանիւ խօսին : Թէ ճշմարիտ է նմա օրինացն աս-տուած , յորմէ զարարածս ամե-նայն գնէ , ապա օտարին՝ զոր նմա պարզող մուծանէ՝ չէր պարտ նորա

արարածոցն ցանկանալ, Թէպէտ և 'ի սահմանս էին կամ 'ի հանգըս-տեան: Զի Թէ աստուած էր, և իւր իսկ արժան էր արարածս տա-նել, և ոչ այլոյ արարածոց ցան-կանալ: Այլ զի ոչ ինչ արար, յայտ է՝ Թէ ընդու՝ և էր իսկ ոչ: Զի Թէ էր իբրև զԱստուած, պարտ էր նմա զամենայն կարողու-Թիւն յանձին ունել. և Թէ ինքն յանձնէ իմաստութիւն ինչ այն-պիսի ոչ ունէր. զեԹ յարարիչն աշխարհի նայեցեալ՝ իցէ՛ ուսա-նել 'ի նմանէ զարուեստն: Բայց եԹէ նմա նմանող չկարէր լինել, գոնեայ հեւղեայն լիցի նմանող, որ ընդ զետեղին քարոզէր՝ և եղև հա-ւըրդ արարչութեան արարչին: Այլ յայտ է Թէ մոլաց բարբա-ջանք են աղանդն, և ոչ ճշմար-տուԹիւն:

Արդ նոյն զաստուածն օրինաց և զհեւողն նմա հաւասար դնել 'ի փիլիսոփայից գողացեալ գնէ. որք ոչ կարողուԹիւն ապիկանեն զԱստու-ծոյ Թէ չկարաց յոչընչէ ինչ ստ-

նել, այլ 'ի նիւթոյ ընթերականցն: Եւ թէպէտ բնաբանապատիկ յանուն տառիցն և որդւոյն նորա Յեսուայ՝ զոր բարերարն կոչեն՝ ապաւինեցին, չեն ինչ ընդհատ 'ի հեթանոսաց: Քանզի որպէս նոցա աստուածս բազումս ասեն, նմանապէս և սոքա աստուածս զնոյնս քարոզեն. և բազմապատիկ մահապարտք են, զի արտաքսեալ յօրէնացն աստուծոյ՝ յօտարս անուանս խրախուսանեն իրերս զանհրադրուժս. որ և 'ի մարդկան միջի ոչ պարտի: Զի ոչ իշխէ արքայից արքայի ծառայ՝ 'ի կայսր խրախուսել, և ոչ կայսեր որ ծառայ՝ 'ի սատանայականն խիզախել. ապա թէ ոչ՝ գլխապարտ գտանի:

Դիմադրեալ և նոքա ծնունդս աստուածոցն՝ բազմաց ասեն. և սոքա յամուսնութենէ օրինացն աստուծոյ և հիւսիւսեայ ասեն արարեալ զամենայն արարածս. և զինչ ասելի իցեն քան զսոյս, որք յամուսնութենէ դնեն զաստուածսն իւրեանց: Արդ ցուցցուք. որ. հողի

եւ նոցա զայն օրէնս . զի 'ի Հոգւոյն սրբոյ, որ 'ի մարգարէս եւ յառաքելոսն խօսեցաւ, ուսուցեալ են։

Գ . ԱՅԼ Պաւղոս՝ ասեն, յափշտակեցաւ յերրորդ երկինս, եւ լուաւ զայս բանս անճառս՝ զոր մեք քարոզեմք ։

Նա աւանիկ Պաւղոս ասէ . զոր ոչ է պարտ մարդկան խօսել ։ Արդ Մարկիոնն, թէ մարդ ոք իցէ, ապա եւ նմա անճառ էին բանքն ։ Որ եւ մարդ իսկ է, եւ վատթարագոյն քան զամենայն մարդիկ . որոյ թողեալ զճշմարտութիւն Հոգւոյն, եւ նորա առասպելս կարկատէ ։ Եւ այնչափ յանդգնեալ սատանայութեան որդւոյն, մինչեւ 'ի պատգամաց Հոգւոյն սրբոյ քաղ Հանել . զկէս աւետարանին ընտրել առնուլ՝ եւ զկէսն խլրել զխոտան 'ի բաց թողուլ . նոյնպէս եւ զառաքելական թղթոցն . եւ զհին կտակարանս ամենեւին ուրանալ, որպէս թէ յանգգամէ տուեալ իցեն եւ ոչ 'ի բարւոյ ։

Եւ Առաքեալն ասէ՝ թէ անպա-

տուամ են բանքն, զոր լուայ. և Մարկիոնն ասէ՝ եթէ ես լուայ։ Արդ Առաքելոյն՝ որ անձամբ ընդբանսան համարի՝ պարտ է անսալ, թէ Մարկիոնի՝ որ'ի քարոզ առնելոյ ընդ վայրս զբանսան ածէ։

Դ. ԴԻԱՄԶԵԱԼ՝ թէ մշտնջենաւոր էր օրհնացն աստուած, առաջէքն պարտ էր կանխագէտ և ամենագէտ էանալ. և թէ չէր կանխագէտ և ամենագէտ, ապա և կատարեալ իսկ չէր։ Այն տանիկ կատարեալ երևի այնու՝ զի զերկինս և զերկիր ամենայն արար. և ոչ միայն մի երկինս՝ այլ երկուս, և զօրս բազումս։ Եւ որ այնմ ամենայնի բաւական եղև, զայն զի՞ ոչ կարէր գիտել՝ թէ է ոք 'ի վեր քան զնա, յորմէ կասկած կայր նմա։ Եւ եթէ գիտէր, ընդէ՞ր ոչ ամբոխացոյց զնուր ատեղէն; զի մի՛ լինէր. անդր մնալ հակառակորդին՝ որ կայր և ապստամբեցուցանէր զարարածս նորա 'ի նմանէ։

Եւ դարձեալ՝ բարին, զոր կոչէն, եթէ որպէս ասենն՝ բնութեանց

բարի էր, և չարութիւն 'ի նմա ոչ գոյր, զի այլոցն բարի խորհէր՝ նմա չար ընդէ՞ր խորհեցաւ, առնել զնա սրտատրուչ յիւրոցն արարածոց: Զի սա համառապաշ առնէ մարդիկ. և նորա միշտ համեալ 'ի ամանէք առնէ զնա Թախծալից. որ ոչ բարւոյ գործ է՝ այլ չարի:

Ե. ՊԻԱՐՁԵԱԼ. և զոր արդարն ասէն՝ Թէ արդարև արդար էր, յետ բաժանելոյ զերջանկութիւնն, իւր զերկինն երկասէն առնլոյ, հիւղեայ և որդւոցն նորա զերկիր միայն Թողլոյ, զխա՞րդ էր զի միւսանգամ նորա աշխարհին ցանկացեալ, ասէր՝ Թէ տուր ինձ 'ի կաւոյդ քումմէ, և յինէն տաց ոգի, և արասցուք մարդ ըստ նմանութեան մերում. որ ոչ արդարոյ գործ է՝ այլոյ աշխարհի ցանկացեալ, այլ անիրաւի:

Կամ հիւղեայն զխա՞րդ ընդ միասա համբեալ էր, ընդ մի անգամ բաժանելոյն 'ի նմանէ՝ դարձեալ հաղորդութիւնս առնել, և անձամբ անձին նենգել և մասնմուաւ առ-

նել օտարի յիւր աշխարհն , զի սա-
նիցէ անդ զԱդամն և զամուսինն
նորա , որ մերթ 'ի սա տայր ձեռն
և մերթ 'ի նա :

Բայց և ասէր արարածոց զար-
դարին միայն զեա՛րդ կոչեցեն . զի և
յառաջնութիւն , որպէս ասեն , ոչ
միայն ինչ արար , այլ հաստատարակ
արարածին զինչ և արարածին . և յեր-
կրորդութիւն 'ի հաստատակաց նիւթոյ
արարածին զմարդն , և երկոքեին զոյգ-
ուրախս լինելին 'ի նմա : Զի թէ` որ-
պէս ասենն` արդար միայն էր օրի-
նացն աստուած , յայտ է` եթէ
զարդարութեան և պատուհասիրանս
տայր նմա . և եթէ չար միայն էր
հիւղին , հարկ էր` եթէ չարեաց
եւեթ խրատս տայր նմա :

Եւ ո՞ւր էր զի երկոքեին ուրախս
լինէին 'ի նմա` որ հակառակ մի-
մեանց տային զպատուէրս . մինն
զբարեաց խրատեւ զբարի , և մինն
զչարեաց խրատեւ զչար : Զի ոչ ար-
դարոյ , որ բնութեամբ արդար ի-
ցէ , մարթի զչար ինչ պատուէր
տալ . և ոչ չարի , որ բնութեամբ

չար էցէ, զձեռուրդ խրատ տալ:

Այլ և ուրախ լինել չարին ուսանի՞ էր, որ միշտ խաւարին և գրժգամագոյն էր. կամ՝ արդարոյ նենգել, որ 'ի ջինջ արդարակորով և խոստափորհ էր, որում չէր մարթ իւր միայն խորհել զմարդն հասարակաց ստեղծուած: Այլ իբրեւ արդարոյ պարտ էր խորհել՝ թէ որպէս 'ի միասինն արարաք զնա, առ հասարակ արժան է մեզ և վայելել 'ի նմա: Բայց ոչ իբրեւ զարդարակորով, այլ իբրեւ զնենգաւոր և զկասկածոտ առնել մեկուսի զմարդն զեղծուցանել՝ թէ ես եմ ստացուած, և չեք այլ ոք բաց յինէն: Եւ 'ի դէպ էր Ադամայ ասել՝ թէ մինչ առնելն կամեցար զիս, դոյր այլ ստացուած, յորժամ զհողն խնդրեցեր. և արդ զի՞ խորհեցդ զիս քեզ կամիս միայն, որ դու միայն եղես ստացուած, և այլ ոք ոչ:

Այլ թերեւս 'ի հանճարէ մահուանն զարհուրեցաւ՝ զոր թէ կամէր թէ չկամէր սակայն կրեաց: Եւ

զայն ոչ գիտէր՝ թէ առ նենգելն նենգէ նմա հիւղն, և ընկղմէ զմի անուն նորա 'ի մէջ բազում աստուածոց՝ զոր անէր գայթակղութիւն մարդոյն ։ Եւ այնպիսի մտասու ոչ յեռանամեալն եղեւ պատճառ, այլ որ նախին նենգեաց ։ Զի թէ նորա զայնպիսի արուեստ չէր ցուցեալ. հիւղն ոչ խմանայր. այլ ինքն եղեւ վարգապետ, և իւրոյ նենգութեանն, և հիւղեայ խորամանկութեանն ։

Զ. ԵՒ իբրեւ տեսանէն՝ թէ ոչ ոք պաշտէ զնա՝ բարկացեալ արար զնոսա մահկանացուս, և որոց ագիքն 'ի մարմնոցն ելանէին՝ արկանէր զնոսա մի ըստ միոջէ 'ի գեհեն ։

Արդ քան զնոսա արկանէր 'ի գեհեն, զնա՝ որ պատարեաց զնոսա՝ ընդէ՞ր ոչ արկանէր 'ի գեհեն. մի՛ թէ վասն զի ո՞չ կարէր յաղթել նմա ։ Ապա եթէ բռնադոյն քան զնա էր հիւղն, զի՞ եա 'ի ձեռս զիւր պատարեալսն նմա չարչարել ։

Բայց և արդարն թէ արդարեւ արդար էր, չէր պարտ այնուհե-

տես զմարդիկ առնել. զի գիտէր եթէ խաբելոց է զնոսա հիւղն : Այլ իբրեւ արդարոյ արժան էր խորհել՝ թէ զի՞նչ օգուտ է զի ես առնեմ, և այլ հանէ զնոսա յինէն : Նա և տանջել իսկ չէր օրէն զնոսա, զի գիտէր՝ թէ այլոց բանիւ մեղանչէին :

Է. ԱՅԼ միւսն եւս, զոր ասէն, անպարկեշտագոյն է քան զամենայն. թէ իբրեւ եւս բարին՝ որ յերրորդ երկնիս նստէր՝ զայնչափ կքսան և զինն ազգաց զունդս տանջեալս 'ի գեհենի, գթացեալ 'ի նոսա՝ առաքեաց զՅեսու զորդի իւր, երթալ առնուլ զնմանութիւն ծառայի, և 'ի կերպարանս մարդկան լինել :

Եթէ այնչափ գթած էր, ես ընդ եր իսկ ընդէ՞ր ոչ յղեաց զորդին իւր՝ երթալ փրկել զնոսա, այլ յետ քսան և ինն ազգաց այնչափ ոգւոց 'ի գեհենի տանջելոց :

Այլ նախ՝ երրորդ երկնիս ասել ուստի՞ իցէ նմա. զի Մովսէս երկուս երկինս ասէ : Այլ որպէս յամենայնի մոլորեցան հերձուածողք,

նոյնպէս և յայսմ. զի ոմն ասեն երկինս ասէ, ոմն եւթն, և Մարկիոն երիս: Եւ 'ի գրոց սրբոց կամին հաստատել զմոլորութիւնն իւրեանց՝ թէ երկինս և երկնից երկինս բազմաբար ասեն գիրք:

Ցորժամ ոչ յումեքէ սանձահարին հարցուածովք, արտաքոյ գրոց սրբոց բարբանջեն. և իբրեւ վտանգլին, ապա 'ի գիրս ապաւինին: Բայց երկինս և երկնից երկինս յայն սակս գտանեմք 'ի գիրս, զի յեբրայեցւոց լեզու երկին չմարթի ասել, որպէս և ոչ յասորի լեզու՝ Ջուր կամ երկին. այլ մին բազմաբար ասի:

Եւ յայտ անտի է, զի եւթանասնիցն թարգմանեալ 'ի յոյն լեզու, ասեն. 'ի սկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր, իբրեւ զմիոյ երկնէ յայտ արարեալ: Եւ յասորի լեզու քանզի չմարթի երկին ասել, ասէ. 'ի սկզբանէ արար Աստուած զյաթն երկինս և զյաթն երկիր. թէպէտ և միաբար չմարթի ասել նոցա զմիոջէ երկնէն, սա-

կայն յանձն ասելով՝ որ է տարր՝ իբրեւ զմիոջէ տարերէ միոյ երկնի յայտ առնէ թարգմանութիւնն ։ Նաեւ զերեւելի հաստատութիւնս, որ 'ի ջուրց մեկնեցաւ , երկին թարգմանեցին եւթանասունքն , ուստի յայտ է՝ թէ վերին երկինն և ներքին՝ երկու երկինք են , ոչ երեք կամ բազումք ։

Այլ ասեն , Պաւղոս ասաց՝ թէ յափշտակեցաւ այնպիսին մինչեւ յերրորդ երկինս ։ Եւ զայն ոչ գիտեն , թէ չեւ եւս յայտ է՝ թէ մինչեւ ցերրորդ երկինս ասիցէ , կամ թէ մինչեւ ցերրորդ ինչ մասն 'ի բազում մասանց միոյ երկնիս ասիցէ ․ զի բանն 'ի յոյն լեզու յերկուսին հարկանէ ։ Եւ մանաւանդ զի առանց արթերն ասէ որ էն * ․ զի ոչ ասէ թէ մինչեւ ցերրորդ երկինն , այլ թէ ցերրորդ երկնի ** առանձինն ասելոյ ։ Ուստի այս անկնարկութիւն , եթէ 'ի մասն ինչ երրորդ 'ի բազում մասանց երկնի

* οὐρανοῦ. ** ἕως τρίτου οὐρανοῦ.

յափշտակեցաւ Պաւղոս. վասն ո-
րոյ ասէ զնորին զկնի, թէ յափըշ-
տակեցաւ այնպիսին 'ի դրախտն։
Եւ դրախտն ոչ եթէ յերրորդ եր-
կինս լինէ, և կամ ընաւ 'ի յեր-
կինս ուրեք, այլ յերկրի. զոր և
ինքեանք իսկ վկայեն՝ թէ երբեւ
արարին զմարդն, 'ի դրախտի անդ
եդին. որ է յերկրի և ոչ յերկինս։

Բայց թէ և կոչի բարձրութիւն
ինչ երկինք, որպէս յորժամ ա-
սիցէ գիր. Թռչունք երկնից և
ցօղք երկնից, և ամպք և հողմք
երկնից. ոչ եթէ յերկինս լինին, այլ
զի 'ի բարձրութեանն են՝ երկնից
կոչին։ Նա և զծառոց անգամ,
որք 'ի սակաւ ինչ բարձրութեան
են, ասեմք՝ թէ երկնաբերձ են. և
զծխոյ թէ յերկին կայ։ Ըստ նմին
օրինակի և Պաւղոսի զերրորդ եր-
կինսն ասել իմանալի է։

Սկսիր յառաջնմէն, և էջ յեր-
կրորդն, և հաս յերրորդ օդդ՝ որ
'ի դրոց երկին կոչի, և գտանես
զոր ինչ երանելին Պաւղոս ասէ. և
ըստ բանս անճառս, զոր ոչ է

պատրաստ ունիք խօսել։ Թէպէտ և Առաքեալ և անօթ ընտրութեան էր, սակայն էր ընկեր Պետրոսի, ընծակից որդւոցն որոտման և քարոզակից Բառնաբայ, գլխաւոր էր զի նմա միայն պատրաստ էր լսել և խօսել զբանսն անճառս, և իւրոց ընկերացն ոչ. ո՞չ ապաքէն մի շնորհք էին յամենեսին, և մի և նոյն Հոգի և 'ի նոսա։ Այլ անճառ բանքն ոչ եթէ նմա ճառելիք էին և յայլոց ընկերացն անճառք. այլ ըստ այնմ զոր յառաջնումն թղթին կորընթացւոց ասէ. զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ այն՝ զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց։

Է և զայս իմանալ՝ թէ ոչ զի ես միայն արժանի եղայ խորհրդոյն, որ տրուպս եմ առաքելոց, այլ թէ և Պետրոս՝ որ գլուխն է առաքելոց՝ տեսանիցէ, չկարէ ճառել. և թէ լսիցէ, չկարէ պատմել։ Քանզի անպատում է և 'ի վեր քան զմիտս և զլեզու մարդ-

կան, և վասն այնորիկ ասէ Առա-
քեալ. Թէպէտ և տեսի, չկարեմ
պատմել. Թէպէտ և լուայ, չեմ
բաւական ճառել։

Դարձեալ, ո՞յր աստուած ո՞յր
աստուածոյ արարածոց խնամակալ
լինէր, եթէ 'ի սանձանս էին և
թէ յանդորրու։ Կամ զանցանելն
զՅեսուայ 'ի նորա աշխարհն՝ զնե-
ա՞րդ. ոչ ինքն զգայր, և ոչ ոք 'ի
զօրացն նորա, և ոչ այլոց զելա-
նելն նորա անդրէն։ Եւ եթէ զնո-
րայն իբրև զաստուածոյ չկարէին
իմանալ, և զայնչափ հոգւոց՝ զորս
եհան առ նոքօք յիւր երկինսն՝ ըզ-
սօսաւինն՝ զիա՞րդ ոչ առնուին.
և կամ պահապանքն ոգւոցն առ
գեհականաց ընդէ՞ր ոչ առնէին աղ-
տեառն իւրեանց. այլ յայտ է՝ և
թէ սնոտի բանք են և անհաւատ
պատմութիւնք։

Ը. Եւ եթէ նմանութեամբ մի-
այն եղեւ մարդ, և կերպարանօք
եւեթ էր խաչն և չարչարանք և
մահն, ապա և փրկութիւնն ինչ ոչ
գործեցաւ։ Այլ և փրկեր իսկ

ընդէ՞ր զայլոյ արարածս, զոր ինքն չէր արարեալ. որ ոչ բարւոյ գործ է՝ այլ ապիրատի, ապրդել գաղտ մտանել յայլոյ տուն և նենգել նմա:

Բայց զայն եւս հարցցուք. մարմնաւո՞ր ոք էր Յեսուն, եթէ անմարմին: Եթէ ասիցեն՝ թէ անմարմին էր, լուիցեն. զի եթէ անմարմինն եկն, և աստ՝ որպէս ասենն՝ մարմին ոչ զգեցաւ, յայտ է՝ եթէ ոչ ետ ինչ, և ոչ առ. ոչ մեռաւ, և ոչ փրկեաց. և 'ի զուր է ասելն Մարկիոնի, եթէ արեամբն Յեսուայ եմք գինք: Զի ոչ հեղաւ արիւնն Նորա, և ոչ Նոքա գնեցան, այնու զի կերպարանօքն ասեն զխաչն և զմահն, և ոչ ճշմարտութեամբ: Եւ յանդիմանեն զնոսա Հրեայք, որ ցայսօր պնդեալ են՝ թէ հարքն մեր հանին զՅիսուս 'ի խաչ: Ուստի յայտ յանդիմանն ցուցանի, եթէ ոչ կեղծեօք ել Քրիստոս 'ի խաչ, այլ ճշմարտութեամբ: Քանզի և ճշմարիտ յարութեանն մերոյ՝ կացոյց

զիւրոյ անձինն զպարտութիւն օրինակ ։

Թ. ԵՒ եթէ, որպէս ասենն, զօրէնս արդարոյն գատաւոր և միջնորդ խնդրեաց Յեսուն, անդստին իսկ յօրինացն բազմապատիկ մահապարտ գտանի՝ զի նախ քան զխաչելութիւնն իւր զբազումս յափըշտակեաց ։ Եւ ոչ միայն ինքն, այլ և զայլս բազումս ընտրեաց 'ի նոցանէն, և առաքեաց՝ զի աշակերտիցեն և ձգիցեն առ նա ։

Եւ ոչ միայն այնչափ, այլ և զօրութիւն զգեցոյց նոցա՝ կոխել զզօրս սատանին իւրեանց, և արկ սուր և բաժինս 'ի տան նորա, և վարեաց հուր յարարածս նորա. մինչև կարճել և խափանել զօրէնս նորա յաւուրցն Յովհաննու մկրտչի, և աւետարանել զիւր արքայութիւնն, արձակեալ քարոզս բազումս՝ քարոզել, և հնձօղս բազումս՝ հնձել, զոր ոչ ինքն սերմանեաց ։ Եւ այն մինչ չև մեզուցեալ ինչ ուրուք էր նմա, ոչ 'ի խաչ հանեալ և ոչ զարիւն նորա

հեղեալ, առ աւար զոտսն նորա, և խախտեաց զթագաւորութիւն նորա. և նա լռեալ կայր և ոչ ինչ մեղանչէր նմա :

Եւ զիա՞րդ ասիցեն, թէ խաչելութեամբն գնեաց զՄարկիանն. զի ահաւասնիկ զայն ամենայն ժողովս բազմաց, մինչ չև ելեալ էր ՚ի խաչ, կորզեաց յինքն :

Այլ, ասեն, զնոսա բժշկութեանց գինս տարաւ. զհիւանդս բժշկեաց, և զբորոտս սրբեաց. զմեռեալս յարոյց, զանդամալոյծս հաստատեաց, և զդևս հալածականս արար : Եւ ի՞ցէ ոք բժիշկ, յորժամ զորդի ուրուք բժշկիցէ, վարձս ոչ առնու, այլ զբժշկեալն ՚ի գլխովին գինս բժշկութեանն խնդրիցէ : Եւ գրեսցուք՝ եթէ բժշկեալքն էին ինչ նմա անկ վասն երախտեացն. իսկ զորս ոչն բժըշկեաց, ընդէ՞ր հրապուրեաց եհան ՚ի տեառնէ իւրեանց. որ ոչ բարւոյ գործ էր, այլ նենգաւորի :

Եւ զօրէնսն զիա՞րդ իշխէր զատաւոր խնդրել՝ որոյ այնչափ մեաս

յառաջագոյն քան զմահն իւր ա-
րարեալ էր 'ի տան նորա . մանա-
ւանդ զի և գիտէր իսկ՝ թէ պար-
տաւորեն զնա օրէնքն , և ոչ ար-
դարացուցանեն ։ Արդ եթէ յիս-
րայէլացւոց կերպարանս եկն 'ի
տուն նորա , սակայն պարտաւորե-
լոց էր ։ Զի գրեալ էր յօրէնսն՝
թէ ամենայն հրեայ , որ լուծցէ
զօրէնս , սպանցի . և որ ոչ թլփա-
տեսցի , և ոչ զշաբաթս պահեսցէ ,
մեռցի . և նա եղծ զօրէնսն և
խախտեաց զկրօնսն , մահապարտ
էր յօրինացն ։ Եւ թէ յայլոց ազ-
գացն 'ի կերպարանս եկն առ նո-
սա , նախ՝ զօտարազգիսն իսկ կոտո-
րել հրամայեալ էր նոցա , և ոչ
խնայել . և ապա՝ 'ի վերայ եկացն
և պանդխտաց հրաման կայր , եթէ
ոչ պահիցեն զկրօնս օրինացն , մա-
հուամբ մեռցին . համայն և այն-
պէս յօրինացն մահապարտ էր ։

Իցէ՞ ոք որ մտանիցէ գաղտ 'ի
տուն ընկերի իւրոյ զեղծել ինչ , և
'ի բուռն անկեալ՝ չլինիցի մահա-
պարտ ։ Եւ կամ իցէ՞ ոք , որ մա-

տուցեալ՝ զայլոյ զորդիս կամ զծառայս յապստամբս և ստահակս յօժարեցուցանիցէ հանել, և հանեալ 'ի վերայ՝ ոչ հանիցեն զայն ընդ կառափին ։ Եւ կամ իցէ՞ ոք, որ իբրև զդէտ մտեալ՝ զայլոյ ըղթագաւորութիւն գաղտ լրտեսիցէ, և ծանուցեալ զլրտեսն ոչ սատակիցեն վաղվաղակի ։

Նոյնպէս և Յեսուն յառաջ քան զխաչելութիւնն բազում ինչ այլազան նշանս գործեաց 'ի տան արքայոյն . և ըստ օրինացն, զոր դատաւորն խնդրեաց, բազում մահուց պարտական գտանի ։ Զի օտարոտի մի եկեալ յայլոյ տոհմ, զայնչափ մեծամեծ աղէտս գործեաց 'ի նմա . զօրէնսն և զմարգարէսն նորա արգել, և զիւր թագաւորութիւնն աւետարանեաց ։

Արդ ո՞վ էր նա՝ որ այնչափ մեծամեծս կարաց գործել, եթէ ոչ Տէրն ամենայնի, որ ասաց՝ թէ ամենայն ինչ տուաւ ինձ 'ի հօրէ իմմէ ։ Ուստի յայտ է՝ թէ ոչ իբրև զօտար ոք առ յափշտակութեամբ,

այլ 'ի հօրէ տուաւ 'ի ձեռս նորա , և իբրեւ զՏէր օրինացն դադարեցոյց զօրէնսն . և յառաջ քան 'ի խաչ ելանել եցոյց զԹագաւորութիւնն իւր ։

Ո՛ անմիտք . զի՞ ոչ իմացայք , եթէ հայր Յիսուսի է Տէրն ամենայնի , այնու զի զամենայն ետ 'ի ձեռս նորա . և նա է Տէր աշխարհի , և ոչ զորմէ դուքն կարծեցէք՝ որ չէր իսկ ։ Զի ամենայն որ արտաքոյ քան զնա ստացուած անուանի , չէ նա 'ի բնէ ստացուած ։ Եւ բազում ինչ և այլ է , որով ցուցանի՝ թէ Տէր մեր յիւրան եկն և ոչ յօտարոտիս . և ինքն և Հայրն իւր՝ են՝ մի Տէր աշխարհի ։ Եւ առաւել 'ի վերաւորէն , որ մինչ դեռ յԵրուսաղեմէ յԵրիքով իջանէր՝ վիրաւորեցաւ յաւազակաց , ցուցանի՝ թէ ոչ օտարոտի ոք էր վիրաւորին Քրիստոս , այլ մերձաւոր և դարմանիչ նորա ։ Որպէս և ինքն իսկ ասաց ցփարիսացին , թէ ուղիղ դատեցար ։ Եւ յոչխարէն և 'ի դրամէն , որ կորուսեալ էին և գտան , յայտ

է՝ եթէ յիւրսն եկն և ոչ յօտարախս։

Ժ. ԴԱՐՁԵԱԼ, զմիւս բանն Առաքելոյ, զոր ուղիղ ասացեալ է, խախտեն. թէ յորժամ խափանեսցէ զամենայն տէրութիւնս և զիշխանութիւնս. զի պարտ է նմա թագաւորել, մինչեւ դիցէ զամենայն թշնամիս նորա ՚ի ներքոյ ոտից նորա։ Եւ ասեն՝ թէ սէրն աշխարհի խափանէ զինքն և զաշխարհ իւր յաւիտեան։

Ո՛ անմիտք. եթէ յիւր ձեռս է շինելն և քակելն, և զայս աշխարհ՝ վասն զի ծերանայ և հնանայ՝ քակեսցէ, ընդէ՞ր ոչ այլ նոր և գեղեցիկ քան զայս առնիցէ։ Թէ մինչ չէրն աշխարհ՝ գիտաց խորհել և առնել բանիւ, այժմ զի լուաւ և տեղեկացաւ՝ թէ գոյ այլ աշխարհ օտարին՝ գեղեցիկ և ազնուականագոյն քան զնորային, զմէ՞ ոչ առնիցէ լաւագոյն քան զնորային, այսպէս զի և ընտանիք օտարին նորայոցն ցանկանայցեն՝ վասն գեղեցկութեանն և պայծառութեան։

Զի որպէս զառաջինն կարող եղեւ բանիւ առնել, այնպէս թէ կամի և այլ առաւելագոյն քան զայն կարող է առնել։ Եւ որ այնպէսն կարող է, ընդէ՞ր խափանիցէ զանձն՝ լինել պատուականագոյն ընդ ոտիւք այլոյ, և ոչ առնիցէ իւր աշխարհ նոր և գեղեցիկ քան զառաջինն, և թագաւորիցէ 'ի նմա յաւիտեան։

Բայց թէ արգելուցու զնա օտարին։ Եւ թէ այնչափ զօրագոյն քան զնա է՝ մինչ զի և արգելուլ կարիցէ, ապա ոչ է տէր ամենայնի՝ որպէս ասէ ինքն, այլ ծառայ այլոյ տէրութեան։

Կամ զայն ուստի՞ ցուցանիցէք՝ թէ աստուած օրինացն քակելոց է զաշխարհս։ Եթէ վասն զի գրեալ են 'ի մարգարէսն նորա՝ եթէ երկինք գալարեսցին իբրեւ զմագաղաթ, և երկիր իբրեւ զմոմ հալեսցի, այլ և զայն գրեալ է 'ի մարգարէսն՝ թէ արարից երկինս նոր և երկիր նոր։ Ուստի յայտ է ըստ մարգարէութեանն, թէ զայս քակէր՝ այլ նոր առնէր, որպէս

և դուք իսկ ձեզէն վկայեցէք ։

Բայց և միւսումն եւս պարզէք պատասխանի, թէ ո՞ իցէ որ զիշխանութիւնն և զպետութիւնս խափանիցէ ։ Եւ եթէ դուք ո՞չ գիտիցէք յԱռաքելոյ՝ զի Քրիստոս խափանէ զիշխանութիւնն, և դնէ զամենայն թշնամիս 'ի ներքոյ ոտից իւրոց ։ Եւ ոչ այն՝ զորմէ դուքն ասէք, որ չէն իսկ և ոչ արարեալ ինչ նորա, և ոչ առնէ․ այլ Տէր մեր և Հայրն իւր, որք կարող են առնել զամենայն, և հնազանդեն զամենայն թշնամութիւնս ընդ ոտիւք ։

ԺԱ․ ԵՒ դարձեալ՝ թէ ձեռնհաս ինչ ոք էր օտարին, որպէս Մարկիոնն ասէ, ազատել զհոգիսն 'ի տանջանաց անտի, ընդէ՞ր ոչ բռնութեամբ իսկ ձեռն արկ և կորզեաց զոգիս տանջանաւորացն յինքն․ այլ նախ թոյլ տայր՝ զի տանջիցին, և ապա հանէր․ և զայն ոչ համարձակութեամբ, այլ կասկածանօք և արեան գնոց գնելով ։

Այլ, ասեն, վասն ողորմութեան արար․ տեսեալ զոգիս տանջանաւորացն ննջեցելոց 'ի դժոխս, առաքեաց զորդին իւր՝ փրկել ըզնոսա։ Եթէ փրկեաց զնոսա, վերջինքն զի՞ գործեցին, որ 'ի նոյն դժոխս անկանելոց են։ Եթէ վասն ողորմութեան արար՝ զոր արարն, պահեալ իցէ զգալուստ որդւոյն իւրոյ մինչեւ 'ի վախճան աշխարհի, և ապա առաքեալ, զի 'ի վերայ ամենեցուն առնէր ողորմութիւն, և հանէր 'ի կեանս, քան փութացաւն և առաքեաց 'ի կէս դարին, և չիք հնար վերջնոցն՝ որ անկան անդր՝ թէ ելանիցեն․ քանզի այնուհետեւ զգուշացաւ նոցա տանջիչն։

Այլ յոյժ մոլորեալ են, և մոռացան զայն՝ թէ չիք ծառ չար որ առնիցէ զպտուղ բարի․ և ոչ քաղէն խաղող 'ի փշոց, և ոչ թուզ 'ի տատասկէ․ և իւրն զիւրն ընդունի։

Եւ միւսն եւս զոր ասեն՝ թէ ոչ ընդունէին դժոխք զկեանս, վասն

այնորինակ եւ 'ի խաչ, զի իջեալ ի-բրեւ զմեռեալ՝ ընկալցին զնա դը-ժոխքն :

Իսկ արդ ո՞չ ոք առաքեցի անդր կենդանի, կամ մարդիկ յանցաւորք, կամ սատանայ եւ դեւք կեն-դանուոյն. Թէ այնպէս լինէ, եւ ըղ-ձոսա ոչ ընդունէին :

Կամ Յեսուն իբրեւ զմեռեալ յո՞ր չոգաւ. մի՛ թէ 'ի գերեզմա՞ն երկրի, զոր գիրք դժոխք կոչեն. եւ ահա անդ չեն ոգիք, եւ ոչ հուր որ տանջիցէ զնոսա : Եւ եթէ ասի-ցեն, 'ի գեհենն չոգաւ իբրեւ զմե-ռեալ, չիք մուտ բանիցն. զի ոչ տայ Թոյլ Առաքեալ՝ Թէ երկուս մահս մեռաւ, այլ մի՝ զոր մար-մնովն կրեաց զխաչելն, եւ հնազանդ եղեւ մահու խաչին : Եւ ոչ դնէ՝ Թէ այլ ոք դատեաց զնա եւ արկ 'ի գեհեն, այլ Թէ Հայր ետ զնա 'ի մահ : Եւ դարձեալ, Թէ ինքն ետ զանձն իւր փրկանս փոխանակ բազ-մաց, մահուամբ մարմնոյ, եւ ոչ տանջանօք ոգւոյ :

ԺԲ. ԱՅԼ այնչափ, ասեն,

հակառակ են օրէնք արդարոյն՝ շնորհացն Յեսուայ, զի անդ երանութիւն մեծատանց տայ, և եղկութիւն աղքատաց. և աստ երանութիւն աղքատաց, և վայ մեծատանց: Անդ ասէ, մի՛ սպանանէր. և աստ ասէ, թէ որ բարկանայ ընկերի իւրում տարապարտուց, պարտաւոր է գեհենի: Անդ ասէ, մի՛ շնար. և աստ ասէ՝ թէ որ հայի ՚ի կին մարդ առ ՚ի ցանկանալոյ, անդէն շնացաւ ՚ի սրտի իւրում: Անդ ասէ, մի՛ երդնուցուս սուտ, այլ հատուսցես Տեառն զերդմունս քո. և աստ ասէ, ամենևին մի՛ երդնուցուք:

Եւ արդ զիա՞րդ իցեն օրէնքն և շնորհք միմեանց հակառակք: Զի Աբրահամ վասն զօտարս և զաղքատս ընդունելոյ՝ բարեկամ Աստուծոյ կոչեցաւ. և Քրիստոս ասէ՝ թէ աղքատն ՚ի գոգն Աբրահամու չոգաւ, և մեծատունն ՚ի տանջանս հրոյ: Քրիստոս աղքատաց երանութիւն տայ, և ողորմածաց՝ թէ ողորմութիւն գտանելոց

են․ և օրհնացն աստուած այնչափ ցուցանէ ողորմութիւն, մինչեւ ըղ-գրաստու թշնամւոյն անկանելոյ բեռամբ՝ չհրամայէ զանց առնել․ թէ և 'ի ժողովրդենէ ոք իցէ, և եթէ յօտար ազգաց․ և զուլ 'ի մօր կաթն չհրամայէ եփել, և ոչ զհաւ 'ի ձուոց կամ ի ձագուց վերայ նստեալ՝ 'ի միասին միանգամայն առնուլ։ Անդ ասէ, սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո․ և աստ ասէ, սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ, և սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո․ զի զայսց երկուց պատուիրանաց կախեալ կան օրէնք և մարգարէք․ և ասէ, ոչ եկի լուծանել զօրէնս կամ զմարգարէս, այլ լնուլ զնոսա։

Արդ զխորդ հակառակ օրհնացն իցէ, որ եկն լնուլ զօրէնս և զմարգարէս։ Եւ ասէր ցբորոտն զոր սրբեաց, թէ երթ մատո պատարագ վասն սրբութեանդ քոյ, որպէս պատուիրեաց Մովսէս յօրէնսն։ Եւ ցօրհնականն, որ եհարց

ցնա, թէ զի՞նչ ինչ տարաւ՝ զի
զկեանս յաւիտենից ժառանգեցից,
ասէ. զպատուիրանս օրինացն գի-
տես: Եւ հարցեալ կրկին՝ թէ զո՞ր
պատուիրանս, ասէ. զմի՛ շնար,
զմի՛ գողանար, զմի՛ սպանանէր:
Որով յայտ արար՝ եթէ ոչ հակա-
ռակ օրինացն ուսուցանէր, այլ
նմին միաբան:

Դարձեալ, չբարկանալն չսպա-
նանելոյն ոչ եթէ հակառակ ինչ է,
այլ կարի քաջ միաբան. զի թէ ոչ
ոք բարկանայցէ, և ոչ զգործ սպա-
նութեան մտաբերէ: Նոյնպէս և
ոչ ցանկանալն չշնալոյն ոչ եթէ
ընդդիմակաց ինչ է, այլ առաւել
հաւանագոյն. զի եթէ ոչ ցանկա-
նայցէ, և ոչ 'ի գործ շնութեան
ժամի: Եւ ամենևին չերդնուլն՝
սուտ չերդնլոյ ոչ եթէ ընդդէմ ինչ
է, այլ յոյժ ընկերակից. զի եթէ
ոչ սովորիցի ոք աւէպ երդնուլ, և
ոչ սուտ երբէք երդնու: Անդ-
քանզի յանուն կռոցն երդնուլին,
ասէ. հատուսջիր Տեառն զերդ-
մունս քո: Ասէ. յիս երդնուցուս՝

որ կենդանի եմ, և մի՛ ՚ի կուռսն՝ որ ոչ են կենդանիք։ Իսկ արդ զի կատարեալս առնիցէ Քրիստոս զիւր աշակերտեալսն, ասէ. ամենեւին մի՛ երդնուցուք, այլ եղիցի ձեր այոն այո, և ոչն ոչ. և թէ որ ինչ աւելի է քան զայն, ՚ի չարէ անտի է։ Եւ թէ որ աւելի քան զայոն և զոչ է՝ ՚ի չարէ անտի իցէ, որչափ եւս առաւել որ սուտ յահաւոր անուամբն երդնուցու։

Եւ դարձեալ՝ չբարկանալոյն և չցանկանալոյն, զոր ուսոյցն * Յեսու, այնչափ առ աստուածս ունի զօրինացն աստուած, զի զնորա ասացեալսն հաստատէ յաւետարանի. և նոքա մոլին թէ հակառակ ուսուցանէ նոցա Յեսուն։ Նոյնպէս վասն կերակրոց և ՚ի հնումն և ՚ի նորումս գտանեմք, զի յԱստուծոյ տուեալ են ՚ի դարման։ Անդ ասէ. զեն և կեր զամենայն անասուն և զթռչունս ուտելիս. և աստ ասէ՝ թէ ամենայն

* ուսուցին։

ինչ որ մտանէ ընդ բերան մարդոյ, ոչ պղծէ զնա. այլ որ ինչ ելանէ 'ի բերանոյ անտի, այն պղծէ ըզ-մարդն: Եւ յամենայնէն իմէքէ մի ինչ և միւն է. և եթէ պիղծ ինչ էին կերակուրքն՝ նախ ինքն իսկ ոչ ճաշակէր 'ի նոցանէ, և ապա այլոց հրաման տայր ճաշակել:

Իսկ եթէ ոչ ուրեք գտանեմք ա-սացեալ նորա 'ի նորումն՝ թէ զայս ինչ մի՛ ուտիցես, յայտ է՝ եթէ զխտրութիւնս կերակրոցն՝ որք ըստ օրինացն էին՝ դադարեցոյց, այնու-զի ընդ մեղաւորս և ընդ մաքսա-ւորս և ընդ փարիսացիս ուտէր և ըմպէր: Եւ զզատկէն ասէր ցաշա-կերտսն՝ թէ ցանկանալով ցանկա-ցայ ուտել զզատիկս զայս ընդ ձեզ: Մի՛ թէ և զզատկէ՞ն ասիցեն՝ թէ ձուկն էր և ոչ գառն. քանզի Քրիստոս զամենայն կերակուրս ուտէր անխտիր, որպէս յայտ է յաւետարանէն:

Իսկ թէ ասիցեն՝ թէ Քրիստոս յետ յարութեանն եկեր զձուկն և ոչ զմիս, վասն այսորիկ և մեք

զձուկն ուտեմք և ոչ զմիս, ասելն է՝ թէ սոքա և նոքա այժմիկ մի՛ կերիցեն ձուկն, այլ 'ի յարութեան անդ, որպէս և Նա յետ յարութեանն կերաւ ձուկն՝ զոր եգիտ առ ձկնորսան:

Այլ զի և ձուկն միս է՝ այն ամենեցուն յայտ է. զի ունի մարմին և արիւն, ճարպ և ոսկերք են, հարկ է՝ թէ մսեղէն է և կենդանի: Եւ է ձուկն՝ որոյ իբրև խոզի պատառակաց թամբ 'ի վերայ կողիցն կայ. և արիւն այնչափ եղանէ, որչափ յոչխարէ ոչ եղանէ. և կերակուրս ժանտս զայն ունէ, զոր և ոչ գազանք և անասունք ունեն: Եւ զձուկն իսկ առաւել պարտ է գազան կոչել, որ զիւր համազգիսն անխտիր ուտէ. և զի այնչափ սուրբ են անասունքն քան զնա՝ զի 'ի նոցանէն զոհք և ողջակէզք մատչին Աստուծոյ, և 'ի ձկանց ոչ ինչ այնպիսի:

Այլ և 'ի խորհուրդ և յօրինակ մեծի խորհրդոյն՝ որ յայտնելոց էր, ոչխար և արջառ տպաւորէին, և

ոչ ձկունք. որպէս զառն՝ որոյ ա-
րեամբ փրկեցան անդրանիկք որդ-
ւոցն Իսրայէլի յԵգիպտոս, և խոյն՝
որ սպանաւ փոխանակ Իսահակայ,
խորհուրդ էին ճշմարիտ գառինն՝
որ բառնայ զմեղս աշխարհի. և ե-
րինջն՝ զոր արտաքոյ բանակին սպա-
նանէին յողջակէզ, ըստ որոց օրէ-
նակի և Քրիստոս արտաքոյ քաղա-
քին չարչարեցաւ։ Եւ Դաւիթ ա-
սէ. հաճոյ եղիցի Տեառն իբրեւ
զորթ մատաղ, և ոչ իբրեւ զձուկն
փափուկ. զի ձուկն թէպէտ և գայ
յառաւել, 'ի գերեզմանի առաւել գայ
և ոչ 'ի կենդանութեան. ըստ այնմ
զոր Տէրն ասէ՝ թէ որպէս եղեւ
Յովնան 'ի փոր ձկանն զերիս աւուրս
և զերիս գիշերս, նոյնպէս պարտ
է որդւոյ մարդոյ մնանել 'ի սիրտ
երկրի, և լինել անդ զերիս աւուրս և
զերիս գիշերս։ Եւ այսպէս ոչ գտա-
նեմք 'ի գիրս սուրբս՝ եթէ զձուկն
արբեաց և եր 'ի կերակուր, և 'ի
մտոյ հրաժարեցոյց իբրեւ 'ի պղծոյ
և 'ի խոտանէ իմիքէ։

Այլ և յօրէնսն գրեալ է՝ եթէ

եառու ուտել ձեզ զանասունս և զթռչունս երկրի և զբանջար խոտոյ. բայց միայն մեռելոտի և արիւն մի ուտիցէք, զի շունչ անասնոյ արիւն իւր է: Եւ առաքեալքն 'ի Թղթին զոր յԵրուսաղեմէ յԱնտիոք գրեցին, զնոյն հաստատեցին՝ թէ պահել ձեզ յարենէ և ի հեղձուցելոյ և 'ի մեռելոտւոյ և 'ի պոռնկութենէ. և չասացին՝ թէ 'ի մսոյ: Նա և յօրէնսն զուտելի անասունս սուրբս կոչէ և զչուտելիսն պիղծս. իբր ոչ եթէ պիղծք ինչ բնութեամբ էին, այլ զչախորժականսն մտաց մարդկան պիղծս կոչէ. զի գիտէր, թէ է ինչ՝ զոր ախորժեն ուտել, և է ինչ՝ զոր ոչ ախորժեն ուտել. և ըստ նմին նմա օրէնս եդ:

Այլ զի չէք ինչ պիղծ 'ի կերակրոցն, զայն 'ի Տեառնէն լուիցուք. թէ չէք ինչ որ մտանիցէ յորովայն մարդոյ՝ թէ կարիցէ զմարդն պղծել. այլ որ ինչ ելանէ 'ի մարդոյ անտի, այն պղծէ զմարդն: Եւ Առաքելոյ յառաջագոյն հայեցեալ մարգարէութեամբ 'ի տարապարտ

հպարտութիւն տղմնդաւորացն ,
ասէ . կարճեն զկերակուրս , և տը-
գեղութն զամուսնութիւն՝ զոր Աս-
տուած արար 'ի միխիթարութիւն
հաւատացելոց , որ գոհութեամբ
վայելեն . զի սրբի բանիւ Աստու-
ծոյ և աղօթիւք : Իսկ ոչ եթէ ախորժ
ինչ իցէ և սրբիցի . այլ որ նոցա
ախորժն կարծէր վասն զոհելոյն , և
զայնմանէ ասէ Առաքեալ՝ թէ սըր-
բի բանիւն Աստուծոյ և աղօթիւք :
Վասն որոյ և 'ի միւսում թղթին
ասէ՝ թէ յորժամ կոչիցէ զք զձեզ
յանհաւատից և երթայցէք , զա-
մենայն ինչ զոր դնիցեն առաջի ձեր ,
կերիջիք . և մի' խղճիցէք : Ուստի
յայտ է՝ թէ մի ինչ յամենայնէ
միսն էր : Եւ դարձեալ՝ թէ որ ինչ
վաճառիցի 'ի մակեղանի , որ է 'ի
մսավաճառանոցի , կերիջիք . և մի'
խղճայցէք :

Այլ ասեն , թէ ասէ Առաքեալ՝
թէ լաւ է ոչ ուտել միս , և ոչ ըմ-
պել գինի , և ոչ որով եղբայրն քո
գայթակղեսցի . և դարձեալ թէ
ոչ կերայց միս յաւիտեան , որով

եղբայրն իմ գայթակղեցի ։

Ասասցուք. եթէ ձկամբքն գայթակղեցի եղբայրն, ապաքէն և զայն չիցէ պարտ ուտել. քանզի վասն գայթակղութեան չէ պարտ ուտել, և ոչ թէ վասն զի պիղծ ինչ կայցէ 'ի կերակրոցն ։ Եւ մանաւանդ գինւով, որով բազումքն իսկ զեղխանան. և ոչ այնչափ միսն յանցուցանէ, որչափ գինին զեղծէ զըմպելիսն, և գայթակղեցուցանէ զտեսօղսն ։ Եւ զիմ՞րդ իցէ, զի 'ի մսոյ պահեն և 'ի գինւոյ ոչ զգուշանան Մարկիոնքն, զի բանն յերկուցունց վերայ կայ. ասէ ոչ ուտել միս, և ոչ ըմպել գինի. և զնովիմբ ածեալ զպատճառսն, ասէ, թէ և ոչ՝ որով եղբայրն իմ գայթակղեցի կամ տկարանայցէ ։ Որով ցուցանէ՝ թէ վասն գայթակղելոյն եդ զայնպիսի միտս 'ի միջի, և ոչ եթէ զկերակուրսն պիղծ համարէր, որ ասէն՝ թէ է որ հաւատայ ուտել զամենայն ինչ ։ Թէ հաւատա՝ ասէ՝ եթէ բանիւ Աստուծոյ և աղօթիւք սրբին կերակուրքն, կեր և

մի՛ խորհեր։ Ապա եթէ տկարացեալ ես հաւատովք և խղճես, բանջար եւեթ կեր, և մի՛ գայթակղիր։ Եւ յորժամ ոչ հաւատաս ուտել զամենայն իբրեւ զսուրբ, մի՛ իշխեր դատել զայն որ ուտէն. որպէս և որ ուտէն՝ ոչ պարտի անգոսնել զքեզ իբրեւ զտկար, որ ոչդ հաւատաս ուտել զամենայն ինչ իբրեւ զսուրբ։ Քանզի ոչ եթէ կերակուրքն կացուցանեն զմեզ առաջի Աստուծոյ, և ոչ հանեն յերեսաց Աստուծոյ. այլ կամ հաւատքն կամ խիղճ մտացն և գայթակղութիւն։

ԺԳ. ԻՍԿ ձեր ուխտաւորքն, ուտեն, ընդէ՞ր են մսահաճք։

Մեր ուխտաւորքն ոչ վասն այնորիկ հրաժարեն 'ի կերակրոց՝ եթէ զկերակուրսն պիղծս համարիցին և 'ի հիւղեայ իբրեւ 'ի չարէ իմեքէ։ Եթէ վասն պիղծ զկերակուրսն համարելոյ ուխտաւոր էին, և ոչ ուխտաւորութիւնն նոցա յուխտաւորութիւն համարէր. Այլ կարծեն զանձինս 'ի կերա-

կրոց , զի զորութիւնն՝ զոր 'ի մտի եդին պահել՝ դիւրաւ պահիցեն ։

Ցոր սակս և հարքն մեր սուրբ եպիսկոպոսք սահմանեցին կանոնս . եթէ ոք հաւատացեալ մի ոչ ուտիցէ , և բանջար ընդ մսոյ եփեալ իցէ , և 'ի բանջարոյն ոչ կամիցի ճաշակել , նզովեալ լիցի ։ Ընդէ՞ր . Նախ՝ զի զԱստուծոյ տուեալ զկերակուրսն ոչ իշխիցէ խոտան համարել . և ապա՝ զի տարապարտ հպարտութեամբն ոչ մխասիցի, որպէս թէ այնու առաւել ինչ իցէ քան զայլ մարդիկ ։

Նա և կուսանք սրբոյ եկեղեցւոյ ոչ վասն այնորիկ պահեն զկուսութիւն , եթէ զամուսնութիւնն տուեալ յԱստուծոյ՝ պղծութիւն համարիցին , որպէս Մարկիոնն և Մանի . և մծղնեայք . զի եթէ յայն միտս ուխտաւորք էին , ապա և կուսութիւնն չէր յանգարի կուսութեան . այլ վասն առաւել սիրելոյ զԱստուած , 'ի բարւոք արարածոց Աստուծոյ հրաժարեն . զի նմանեալք հրեշտակաց Աստուծոյ,

ուր ոչ արուն է և ոչ էգ, ցուցանիցեն և յերկրի զնոյն առաքինութիւն. ըստ այնմ՝ թէ են ներքինիք, որ զանձինս իւրեանց արարին ներքինիս վասն արքայութեանն երկնից, լինել 'ի յարութեանն հաւասար հրեշտակաց ։ Եւ Առաքեալն՝ այր հաւատարիմ կոչէ ըզկուսանն. բայց հայեցեալ 'ի բնութիւնն՝ չիշխէ յայտ հրաման տալ, այլ ակնարկելով յօժարեցուցանէ. որպէս և Տէրն ակնարկէ, այլ ոչ սաստէ ։

ԺԴ. ԱՅՍ ամենայն վասն Մարկիոնաց աղանդին ասացաւ, որք զամուսնութիւն և զմսակերութիւն խոտեն. և ուխտաւորեալք հանդերձ աշխարհականօքն 'ի կուսութիւն, ստեն ուխտին ։ Զի առ չժուժալոյ ցանկութեանն՝ արկանեն միւսանգամ զնոսա ընդ ապաշխարութեամբ ։

Արդ եթէ օրինաց ոչ հաւատայցեն, որ ասէ՝ եթէ թողցէ այր զհայր և զմայր իւր, և երթիցէ զհետ կնոջ իւրոյ, և եղիցին երկո-

քին 'ի մարմին մի , Ցետուայն ընդէր ոչ հաւատայցեն՝ որ զնոյն հաւատայ , և յաւելու՝ թէ զոր Աստուած զուգեաց , մարդ մի՛ մեկնեսցէ ։ Արդ հաւատացելոց՝ որ զճշմարտութիւնն կամիցին ցուցանել՝ նախ գործ այն է , զի զնոսա՝ որպէս և էցեն՝ նոյնպէս խոստովանիցին . և ապա թէ այրընտիր լինիցին յառաքինութիւնսն , այն ընդունելի է ։ Եւ ոչ որպէս նոքա , որք մեծամեծս կոտորեն՝ թէ մեք անդստին իսկ յաւազանէն ուխտաւորիմք 'ի մնակեցութենէ և յամուսնութենէ . և ապա լուծանեն զուխտն , և գան մտանեն ընդ ապաշխարութեամբ ։

Եւ եթէ հարցանես՝ եթէ տանջանք գո՞ն բարւոյն . ասեն . ոչ գոն ։ Եւ եթէ 'ի տանջանաց կասկած չիցէ , ապաշխարութիւն առ իմ լիցէ . ո՞չ ապաքէն յայտ է՝ թէ 'ի տանջանաց ոչ երկնչին , և 'ի մեղսն անխտիր են ։ Բայց որոյ տանջանք չեն , յայտ է՝ թէ նորա և պարգևք չգոն ։

Այլ մեք, ասեն, յայն սակս փախնեաք յարդարոյն, զի ահագին սպառնալիս սպառնայ յօրէնսն իւր՝ թէ հուր վառեալ է 'ի բարկութեանն իմում, և այրեսցէ մինչեւ 'ի դժոխս ներքինս. և թէ այս ամենայն պահեալ էր 'ի գանձի իմում. և այլուր՝ թէ հրով դատի Աստուած :

Ո՛ անմիտք և մոլորեալք. թէ վասն ահագին սպառնալեացն փախչիցիք յօրինացն Աստուծոյ, յորժամ Յիսուս եւս աւելի սպառնալիս քան զայն սպառնայցէ, հուր անշէջ և որդն անմահ և տանջանս յաւիտենականս, յո՞ ունիցիք փախչել : Եւ յորժամ 'ի հնումն և 'ի նորումն զնոյն սպառնալիս և զնոյն խոստմունս բարութեանց գտանեմք, ո՞չ ապաքէն յայտ յանդիմանն ցուցանի՝ թէ մի տուիչ է հնոյն և նորոյս:

ԺԵ. ԱՅԼ և յարութեան մարմնոց չհաւատալ ուստի՞ եղէ Մարկիոնի և Մանեայ և այլոցն նոյնախոհեաց :

Ասեն. Առաքեալ ասաց՝ թէ

մարմին և արեան զարքայութիւնն Աստուծոյ ոչ ժառանգեն , և ոչ ապականութիւն զանապականութիւն . և դարձեալ՝ թէ ելանել 'ի մարմնոյս ցանկացեալ եմ և ընդ Տեառն լինել : Որով յայտ է , ասեն , թէ վասն զի 'ի հիւղեայ է մարմինս , յայն սակս չառնի արժանի յարութեանն :

Եւ թէ վասն զի 'ի հիւղեայն է մարմինն՝ չառնիցի արժանի արքայութեանն , արդ՝ և վասն զի յարգասորոյն են ոգիքն՝ մի՛ լիցին արժանի արքայութեան բարւոյն : Այլ յանդիմանէ զնոսա նոյն Առաքեալ՝ անդէն 'ի նմին տեղւոջ . որոյ իբրեւ մատամբ ցուցեալ զմարմինն , ասէ՝ թէ պարտ է ապականութեանս այսմիկ զգենուլ զանապականութիւն , և մահկանացուիս այսմիկ զգենուլ զանմահութիւն : Ուստի յայտ է՝ թէ ոչ զոգիսն կաչէ ապականացուս և մահկանացուս , այլ զմարմինսն : Եւ 'ի միւսում թղթին ասէ՝ թէ ամենեցուն մեզ յանդիման լինել կայ ա-

ռաջի ընծային Քրիստոսի, զի ընկալ-
ցի իւրաքանչիւր ոք իւրով մար-
մնով զինչ և գործեաց յառաջ, ե-
թէ բարի և եթէ չար ։ Տեսանեմք
զի մարմնով հանդերձ առնէ կրել
զբարիս կամ զչարիս, և ոչ միայն
ոգւով ։

Այլ ասեն. ասաց Առաքեալ՝
թէ ապականութիւն զանապական-
նութիւն ոչ ժառանգէ ։

Ո՛վ բանսարկու Մարկիոն. որ
զմին լսէ և զմիւսն առանձնանէ ։
Եթէ ուղիղ միտք լսէր զայն՝ թէ
ապականութիւն զանապականու-
թիւն ոչ ժառանգէ, կարէր կալ
'ի վերայ ճշմարտութեանն ։ Զի
Առաքեալ այնչափ աստուգէ զպա-
րութիւն մարմնոյ, մինչ զի և բա-
զում օրինակս 'ի մէջ բերէ ։

Նախ առաջին և բուն զՔրիս-
տոսի յարութիւնն՝ եթէ Քրիս-
տոս մեռաւ ըստ գրոց և թաղե-
ցաւ և յարեաւ յաւուր երրորդի ։
Եւ զետեղեալ անդէն զօրեղեան,
բազում հանգամանս ցուցանէ
վասն յարութեանն հաստատու-

թեան. և առատել զայն, զոր իբրև յունիկանէ Մարկիոնի և Մանեայ աղաղակէ և ասէ. եթէ մեռեալք ոչ յառնեն, զի՞նչ գործիցեն այնոքիկ որ վասն մեռելոցն մկրտեցան: Դուք, ասէ, ասէք՝ թէ մարմինք վասն զի 'ի հիւղեայն են, ոչ յառնեն. եթէ մարմինքն մահկանացուք ոչ յառնիցեն, հոգիքն կենդանիք վասն մարմնոցն մեռելոց ընդէ՞ր դատանիցեն. և կամ մարմինքն մահկանացուք ընդ ոգւոցն կենդանեաց վասն է՞ր մկրտեցին, թէ որպէս ասէքդ՝ չիցեն յառնելոց մարմինքն մահկանացուք:

Այսպէս իմանալի է բանս, և ոչ որպէս Մարկիոնն դանդաչէ՝ թէ փոխանակ երախայի մեռելոյ, պարտ է կենդանւոյն մերձաւորի խուռամ մկրտել. զի անդ նմա համարիցի: Զոր և առնեն իսկ Մարկիոնքն: Այլ յանդիմանէ զնոսա բանն առաքելական, որ ասէ՝ թէ ոք ոչ ծնցի վերստին, ոչ կարէ մտանել յարքայութիւնն Աստուծոյ.

և դարձեալ. եթէ ոք ոչ ծնցի 'ի ջրոյ և 'ի հոգւոյ, ոչ մտցէ յարքայութիւնն երկնից։ Որով յայտ է՝ թէ իւրաքանչիւր ումեք պարտ է մկրտել, և ոչ այլում ընդ այլոյ։

Եւ դարձեալ՝ 'ի սերմանեացն առակէ. յայտնի ցուցանի յարութիւն մարմնոց. թէ որպէս զսերմն, զոր սերմանես, ոչ այլ ընդ այլոյ գայ, թէպէտ և բազմապատիկ վայելչութիւն զգենու. այլ ոչ երբէք սերմանեցեր զգարի և հնձեցեր ցորեան. և ոչ սերմանեցեր կորեակ, և հնձեցեր հաճար. այլ զոր սերմանեցեր, զնոյն հնձեցեր. ըստ նմին օրինակի, ասէ, և մարմինն որ անկաւ՝ նոյն և յառնելոց է։

Դարձեալ, և մարմին և արիւնն ասել Առաքելոյն՝ թէ զարքայութիւնն Աստուծոյ ոչ ժառանգէ, և ոչ ապականութիւն զանապականութիւն ժառանգէ, ոչ յայն միտս իմանալի է, յոր Մարկիոնն առնու՝ թէ վասն զի 'ի հիւղեայն են մարմինքն, ոչ յառնեն. այլ յայլ երկուս օրինակս։

Մի՛ յայն՝ թէ մինչ դեռ 'ի մարմնոյ խորհուրդս և 'ի գործս իցէ մարդն, ընչաւոր է և մարմին և արիւն. և զի ըստ մարմնոյն եւեթ խորհի և գործէ, չէ արժանի մտանելոյ յարքայութիւն երկնից: Որպէս և 'ի միւսում թղթին գրէ Առաքեալ առ աշակերտեալսն՝ թէ որ մարմնովքն են, զմարմնոյ խորհուրդս խորհին. բայց դուք ոչ էք մարմնով, այլ հոգւով: Մի՛ թէ յորժամ զայս գրեաց առ աշակերտեալսն՝ կէսք էի՞ն 'ի մարմնի, և կէսքն չէի՞ն: Ուստի յայտ է թէ 'ի մարմնի ամենեքեան էին, այլ 'ի գործս մարմնոյ և հոգւոյ ոչ բոլորեքեան:

Դարձեալ 'ի միւս եւս միտս իմանալի է, եթէ ոչ շաղղով և արեամբ ուռուցեալ յառնեն մարմինքն, այլ նորոգեալք յարութեամբն՝ ապականացուք զանապականութիւն ժառանգեն: Որպէս և ածէ իսկ զնովին՝ թէ փող հարկանի, և մեռեալք՝ որ 'ի Քրիստոս՝ յառնեն անապականացուք. և մեք նորոգիմք:

Որով ցուցանէր՝ թէ մարմինք նո-րոգեալք յարութեամբն, ազատա-ցեալ յամենայն կարեաց՝ յաւ-նեն : Եւ ընկղմի մահ 'ի պարտու-թիւն, յորժամ ապականեալքն զանապականութիւն զգենուցուն, և մահկանացուքս զանմահութիւն, և սերմանեալք տկարութեամբ՝ զզօրութիւն, և վարեալք անար-գութեամբ՝ զփառաւորութիւն : Եւ չէք մարմին՝ որ 'ի հող մնայցէ. այլ իւրաքանչիւր ոգւոց զանձնիւր մարմին զգեցեալ, յակն քթթել՝ կայցեն առաջի ահեղ ատենին, ո-մանք 'ի կեանսն յաւիտենականս, և ոմանք 'ի պատիժս դատաս-տանի :

ԺԶ. ՄԱՐԿԻՈՆՍ այս 'ի պոն-տացւոց աշխարհէ անտի եղեալ էր, որդի եպիսկոպոսի : Եւ ապակա-նեալ զկոյս մի, գնաց փախստա-կան վասն մերժելոյ զնա յեկեղեց-ւոյ՝ իւրոյ իսկ հօրն : Եւ երթեալ 'ի Հռոմ խնդրել ապաշխարութիւն յայնմ ժամանակին, և չհաւանեալ այնմ՝ գործեցաւ ընդդէմ հաւա-

տոց ։ Եւ եղեալ երիս աւուրս, ուսուցանէ զբարւոյ եւ զարդարոյ եւ զչարէ ։ Եւ զնոր կտակարանս օտարոտի համեմատի 'ի հնոյն. եւ յայնմանէ, որ 'ի նմայն խօսէր, զկատարութիւն մարմնոյ արհամարհէ ։ Եւ մկրտութիւն ոչ մի միայն տայ, այլ եւ երիս յետ յանցանելոյ. եւ փոխանակ երախայից մեռելոց՝ այլոց սատպէ առնուլ կնիք ։ Եւ այնչափ յանդգնեալ՝ մինչեւ կանանց հրամայէ մկրտութիւն տալ, զոր ոչ ոք իշխեաց յայլոց աղանդոցն առնել. ոչ կնիք կրկին եւ երեքկին տալ, եւ ոչ զկանայս առ քահանայս ունել ։

Նա եւ նմա իսկ ուսոյի՞ իցէ քահանայութիւնն, որոյ ապականեալ զկոյս՝ տարագիր եղեւ յեկեղեցւոյ յիւրմէ հօրէ, մինչեւ ապաշխարութեան եւս հասանել ոչ եղեւ արժանի ։ Եւ յիրաւի չեղեւ արժանի, զի 'ի պատգամս Հոգւոյն սրբոյ իշխեաց ձեռն արկանել, ըղձկէան հատանել ընկենուլ իբրեւ զխոտան, եւ զկէան ընտրել առնուլ իբրեւ զպիտոյս ։ Եւ զայն ոչ գիտէ՝

Թէ յորժամ 'ի մատանց մատն մի կարկիցէ առնուցու, զամենայն մատամնոյն իսկ վկայէ՝ սակայն ինչ մատնն կարեալ: Առաւել եւս յանդիմանէ զնա կատարիչն օրինաց, որ ասէր՝ Թէ ոչ եկի լուծանել զօրէնս և զմարգարէս, այլ լնուլ զնոսա. և Առաքեալն, որ ասէ՝ Թէ Քրիստոս է խաղաղութիւնն մեր, որ արար զերկոսին 'ի մի: Որում փառք յաւիտենանս յաւիտենից. ամէն:

ՎԵՐՋ

## ՆՈՅՆ ԵԶՆԸԿԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

# ԽՐԱՏՔ

ԱՍՏՈՒԱԾԱՍԷՐՆ յիւր կամացն որպէս 'ի թշնամւոյ զգուշանայ :

Լաւ է յստակ խորհրդովն ննջել, քան պիղծ խորհրդով աղօթս մատուցանել, և վարձս ոչ առնուլ և 'ի զուր աշխատել:

Մխեա զմարմինդ նեղութեամբ, և զսիրտդ երկեղիւն Աստուծոյ, զի աներկեղ լիցիս 'ի մահաբեր նետից սատանայի :

Որ զերկեղածն սիրէ, սիրոյ արժան կանգնէ առ Աստուած, և անհաշտ թշնամութիւն առ սատանայ :

Զսէր և զերկեղ բնութիւն արա քեզ, որ խաբէութեամբ չաշխատիս:

Որչափ զրկիս և աշխատիս և նե-

ղիս, և համբերես, անապական գանձ պատրաստես քեզ յերկինս. ապա թէ տրտնջես և նեղսրտիս, 'ի զուր աշխատիս և անվարձ ելանես։

Զօրացիր չարչարանօքն Քրիստոսի, և համբերեա վասն նորա, զի վայելեսցես յանանց բարութիւնն։

Որ գարունն 'ի հանգստեան կայ, ձմեռն 'ի սովոյ և 'ի սառամանեաց սաստակի։

Որ աստ զմարմինն պարարէ, 'ի յաւիտենական հանգիստն ոչ մըտանէ։

Հնազանդեա սիրով, աղօթեա յուսով, աշխատեա հաւատով, և պայծառասցիս յերկնային հարսանիսն։

Զոր ինչ Աստուած քեզ շնորհ տայ, 'ի պէտս կարօտելոցն սպասաւորեա. զի շնորհքն աղքատացին, և դու փառաւորեսցիս։

Կրօնաւոր մարմնասէր՝ խոզի նըման է, 'ի ծովացեալ մեղացն հեղձնու։

Արտասուս լուացումն է մեղաց,

և յոգւոց հանելն ապաշխարութիւն. ապա որ զամենայն ժամանակս կրօնաւորական կարգօք անցուցանէ 'ի սուգ և 'ի տրտմութիւն, նա զորպիսի՞ զերանական զփառսն ժառանգէ։

Կեղծաւոր կրօնաւոր՝ պատրուակ է սատանայի. ընդ իւրեաւ ունելով զսատանայ՝ զպագրութիւն անզգամացն ծածկէ, և նկարակերպ պատրուակօք պատրէ զտեսօղսն։ Սոքա են գայլք գառնազգեստք՝ որոց սպառնացաւ Քրիստոս ընդ անհաւատսն դասել։

Որ զեղջայր իւր տեսանէ և տրտում կայ, յաղթեալ է 'ի կեղծաւորութենէ. որ առանձինն նստի և զուարթ կայ, գերեալ է 'ի սատանայէ։

Բերանք մեր հոտեալ են 'ի պահոց, և լեզուք մեր ընդարմացեալ 'ի սաղմոսերգութենէ. և զոր Աստուած խնդրէ՝ զայն ոչ ունիմք, զսէր և զխոնարհութիւն. շրթամբք սրբեմք զԱստուած, և 'ի զուր աշխատիմք։

Զմիս անասնոյ ոչ ուտեն, և զեղբայրն անյագաբար ուտեն. զգինի ոչ ըմպեն, և զհոգւին արեամբ շաղախեն. զամուսնացեալսն ատեն, և պիղծ խորհրդով հանապազ պոռնկին. զգեստ գառին զգենուն, և ապահովութեամբն այրին. յայնպիսեացն արժան է փախչել, և ոչ հաղորդութիւն ունել:

Չէ պարտ կրօնաւորի մանկանց կենակից լինել. զի որ 'ի նոցանէ նետաձգութիւն է, չար է քան զթիւնս իժից:

Զպայծառութիւն աչաց շքացուցանէ ծուխ, և զպարծանս կրօնաւորի ընտելութիւն մանկանց. եթէ զերկնիս բանաս, մի՛ մտաներ. եթէ հրեշտակական վարս ունիս, մի՛ հաւատար:

Մանուկ կրօնաւոր, որ ոչ է առ ոտս ծերոց, անշան որս է սատանայից:

Մանկագոյն կրօնաւորի մի՛ ասեր զծածուկսն քո, զի մահ է նորա:

Կրօնաւոր ուրախամիտ գէտ է գերղեսացի:

Մի՛ սիրեր զյագուրդ կերակրոց

կամ զըմպելեաց • ապա թէ ոչ՝ զմարմինդ քաղաք պոռնկութեան շինես և ամրոց սատանայի ։

Գինի զբազմութիւն ախտից զարթուցանէ, և զերկիւղն Աստուծոյ հալածէ ։

Մի՛ սիրեր զեղխային փափուկ կերակրովք կամ ըմպելեօք կամ պատուական հանդերձիւ կամ դատարկութեամբ, զի մի՛ զԿայենին ժառանգեսցես զպատիժն ։

Մի՛ սրտմտեցուցաներ զոք, և մի՛ տրտմիր յումեքէ ։

Մի՛ բարկանար աշակերտի մեղուցելոյ, զի հիւանդն ոչ թէ յիւր կամաց հիւանդանայ ։

Աստուածսիրութիւն է առանձինն յանդիմանել ։

Մի՛ թիւնաթափ լինիր յեղբայրն խրատու պատճառաւ ։

Զվէրն՝ կակուղ դեղն բժշկէ, և զախտս՝ բարեգործութիւնն ։

Աշխատութիւն գոհութեամբ՝ առանց պսակի ոչ լինի ։

Կրօնաւոր պճնող ասպնջական է դիւաց ։

Որ մարմնական ընչից զանկայ, պտունկութիւն է:

Եթէ վասն Աստուծոյ համբե- րես, մի՛ խեթ պահեր:

Ցորժամ աղօթես՝ ընտրեա ըզ- խորհուրդդ, և ապա սաղմոսեա:

Թէ թշնամւոյն չաղօթես որպէս քեզ, ապա լաւ է չաղօթել:

Եթէ առնուս ինչ յումեքէ, յա- ւել 'ի սովորական աղօթսն:

Դևք յինչսն ժողովլին, և հրեշ- տակք 'ի բաշխելն:

Ընչասիրութիւն ընծակցութիւն է կռապաշտութեան:

Աղօթք 'ի սուրբ սրտէ զպատա- րագի փրկութիւն գործէ:

Մի՛ խնդրեր զհամեղութիւն կե- րակրոց:

Զ Քրիստոս նա ատեանէ, որ զինչսն ատէ:

Կրօնաւորի բերդ ամուր է ան- զբաղութիւն:

Եղբայրասէր կրօնաւոր ազգա- կցութիւն ունի առ Քրիստոս:

Խաղաղասէր կրօնաւոր ջահ պայ- ծառ է եղբայրութեանն:

Որ ոխս ունի ընդ եղբօրն, դաշ-նաւոր է սատանայի . որ խեթիւ ննջէ՝ բարկացուցանէ զԱստուած :

Երկիւղածն, երբ 'ի մահիճսն ե-լանես, համարեա՝ թէ 'ի գերեզ-մանն ես իջեալ :

Թող զխորհուրդս և զբանս՝ որ անօտիս ընթանան, և թեւեալ շրջեալ ընդ երկիրն Աստուծոյ, և ած զմտաւ զօրն դատաստանին :

Որ զեղբայրն 'ի մարմնաւոր կե-րակրոյ զրկէ, չէ ցանկացօղ սեղա-նոյն Քրիստոսի :

Որ փութայ առնուլ ինչ յումե-քէ, ոչ ունի յոյս առ Քրիստոս :

Եթէ խնդրէ ոք 'ի քէն և տաս, գոհացիր զԱստուծոյ՝ զի դու ա-ռաւել շահեցար քան զնա :

Մի՛ լինիր ծաղրածու և կատակ-երգակ, զի մի՛ ժառանգեսցես զան-վախճան զլացն :

Խոնարհութեամբ և յուսով հնազանդել, և գիտութեամբ աշ-խատել՝ կատարելութիւն է :

Այս են առաքինութիւնք, և այլ ընտրութիւնք :

Են տուպքնութիւնք՝ որ ոչ են համաձայն Աստուծոյ, և այն չարին խաբէութիւն է։

Զփափկութիւն և զհանգիստ ա- տեա։

Որ պէտս ունի յեղբարցն, նմա տուր։

Վաղուան երթալոց ես 'ի հայրե- նիսն, անդ հանգիր։

Յորժամ աղօթես, ծանիր թէ ընդ ում խօսիս, կամ զինչ խնդ- րես. և զխորհուրդդ 'ի քեզ հա- ւաքեա։

Յորժամ առաքէ քեզ Աստուած փափուկ կերակուր, կամ մաքուր հաց, կամ միրգ, զՔրիստոսի մասն կարօտեալ եղբօրն տուր նախ քան զքո ճաշակելն, զի Քրիստոս քեզ սեղանակից լինի։

Յորժամ նստիս 'ի սեղանն, խո- նարհեցո զգլուխդ. մի՛ այլ ինչ տե- սաներ, բայց միայն զքեզ. և ճա- շակեա գոհութեամբ։

Մի՛ խնդրեր զհամեղութիւն կերակրոց և զյագենալն, այլ մի- այն՝ որ զվտանգն բառնայ։

Հանդերձ քո մի՛ լեցի առ 'ի ագահել, այլ միայն առ 'ի պէտս մարմնոյդ, որպէս զայն՝ որ զմեռանելն ծածկէն: Ապա թէ զաւելորդն և զանպատշաճն սիրես, զերկիս յերկնաւոր զարդարուէին:

Եթէ հիւանդ ես կամ աշխատալ, մի՛ իշխանութեամբ վարիր:

Եթէ առնեն քեզ սէր, զոհացիր զԱստուծոյ. և եթէ ոչ առնեն, մի՛ տրտնջեր. և մի՛ տրտմեցուցաներ զանձն ուրուք. այլ նեղեա զքեզ սակաւ մի լռութեամբ. զի որ պատերազմի, ժուժկալութեան պէտք են:

Զմտաւ ած զօր դատաստանին, զոր պատրաստեալ է Աստուած:

Այս կեանքս պատերազմ է:

Որ լաւն է, և զուարթ երեւի:

Զայն խնդրեսցուք, զոր Քրիստոս խոստացաւ մեզ՝ թէ ուր եսն եմ, անդ և պաշտօնեայն իմ եղիցի:

Ծերութիւն և հիւանդութիւն պատերազմ է ժամանակեայ. զի մարմնոյ զօրութիւն պակասեալ է, վտանգն բազմանցեալ, և հանդիպան

սանկաւ, և կամ ընաւ իսկ ոչ. և սատանայ բորբոքէ զնոց ցասմանն, և տալ տայ զկարգն, հայհոյել զառաջնորդն, տրտնջել զեղբարցն. սաստ պէտք են սիրոյ և գթութեան, երկայնամիտ լինել, և ըղձմարտիրոսական առնուլ պսակ:

Որ բարկանայ եղբօրն, և չէ վասն Աստուծոյ, հրեշտակ անողորմ հանդիպի նմա:

Որ 'ի սաղմոսելն ծիծաղի, կամ մարմնական խօսք բերէ 'ի մէջ, արտաքոյ լիցի սրբութեանցն՝ մինչ և առողջացի:

Լաւագոյն է զձեռն համբառնալ առ Աստուած, յորժամ աղօթեսցէ. բայց առաւել կարեւոր է, որ 'ի պէտս եղբարցն սպասաւորեսցէ:

Զձեռս յորժամ յաղօթս համբառնաս՝ հանդէպ երեսացդ կալ, և զգուշացիր յոտար խորհրդոց:

Եթէ հաւատացեալ ես յեղբայրն, հնազանդեա նմա. ապա թէ ոչ, 'ի սովորականէն մի՛ ելանէր:

Պարտ է կրօնաւորին արիամբ ջանալ հակառակ կալ ընդդէմ մտածական ցանկութեանց . և այնպէս պատրաստ լինել Աստուծոյ :

Քրիստոս ասաց . ես եմ ճանապարհ և ճշմարտութիւն և կեանք . և որ կամի գալ առ իս , ուրասցի զանձն իւր , և առցէ զխաչ , և եկեսցէ զկնի իմ : Եւ որ ոչ ուրանայ զանձն իւր , ոչ կարէ բառնալ զխաչն Քրիստոսի , և չէ 'ի ճշմարտութենէն . և որ ոչ է 'ի ճշմարտութենէն , չկարէ ժառանգել զկեանսն յաւիտենից , այլ 'ի տառաերի կայ և 'ի խաւարի շղթի :

Եւ որ զիւր կամսն պաշտէ , զաշխարհական գործ ոչ կարէ մճարել , թող թէ զհոգևորն . թէպէտ և մեծական վաստակօք անցուցանէ զիւր զկեանսն , չկարէ հասանել կրօնաւորական կարգի : Իսկ հնազանդն՝ թէպէտ և պղերգ և ծոյլ կրօնաւոր է , ծառայութեամբ 'ի տան Աստուծոյ է :

Անգործ մեղու՝ լաւ է քան զժիր պիծակ :

Որ զինչն ուրացեալ է, և 'ի լուծ պատուիրանին մտեալ՝ բառնալով զխաչն Քրիստոսի, չէ պարտ ընտրողութիւն առնել հրամանաց առաջնորդին՝ այլ անսալ երկիւղիւ. զի և Պետրոս չօգտեցաւ ինչ ընտրութեամբն: Եւ եթէ թերի ես յառաջնորդն, մի՛ կար ընդ նմա. զի կորուսանես զոգիդ քո: Երբեմն տրտնջես, երբեմն նզովես, երբեմն դիմաբանես, առ այլս չարախօսես, զսէր և զհնազանդութիւն բառնաս յեղբարցն, զամենեսեան յամպարշտութիւն ուսուցանես. այնպիսւոյն միաբանութիւնն դատապարտութիւն է:

ՏԳԷՏ և անընտրող առաջնորդ՝ 'ի բժշկելն խոցէ, և յուղղելն խորտակէ. 'ի սիրոյ տեղ՝ ատելութիւն ցուցանէ, և յատելութեան՝ զսէր. և խառնափնդորելով զեղբարսն անվաստակ հանէ:

Որ սուտն եղեալ է և զբոլոր շինուածն յինքն հաստատեալ, եթէ խորտակի՝ զամենեսեան 'ի վայր կործանէ: Այսպէս և առաջնորդն,

Թէ ոչ ըստ՝ կամացն Աստուծոյ վարի, զամենայն եղբայրութիւնն սատանայի մատնէ. և փոխանակ առաջնորդութեանն՝ կորստեան պատճառ լինի: Մեծ հերձուած և անբժշկելի չարիք է այնպիսի առաջնորդութիւնն. զի մարդիկ յօրինակն առաւել հային, քան 'ի ճշմարտութիւնն:

Որ զմի ոք 'ի փոքրկանց գայթագղեցուցանէ, չէ արժանի զերեզմանի. իսկ որ բազմաց կորստեան պատճառ լինի, զինչ զի՞նչ ասես. ո՞չ ապաքէն գործակից եղեւ սատանայի, և ընդ նմա տանջելոց է 'ի գեհենին:

Հոգեւոր առաջնորդ՝ աստուածային հուր է, զապականարար ախտն այրէ, և զգիճութիւն ցամաքեցուցանէ, և կրօնաւորական հանդիսիւ փորձէ որպէս զոսկի 'ի բովս, և անապատ սրբութեամբ զեղբարսն Աստուծոյ ընծայէ. և ինքն ըստ հաւատարիմ ծառային թագաւորէ 'ի վերայ տասն քաղաքաց:

Առաջնորդ ագահ, որ է կռա-

պաշտ, աւազակապետ է։ Աւազակք բազումք կան յաշխարհի, և չեն ամենեքեան սպանողք. իսկ նա յամենայն աւուր սպանութիւն գործէ։ Ոչ զմարմինն միայն սպանանէ որպէս զաւազակն, այլ սատանայի գործակից լինի, և զհոգին կորուսանէ՝ որ նմա հաւատացաւ։ Նա զամենայն չարիս գիրաւ գործէ, և զբարին ոչ երբէք։

Եթէ ամենայն եղբարցն հիւանդութիւնն քեզ ոչ ցաւէ, մի՛ լինիր առաջնորդ։

Եթէ զանարժանն ըստ ախտոյիցն ոչ յանդիմանես, մի՛ լինիր վարդապետ։

Զվարդապետեան քաղցասիրս սուրբ վայրքն առնեն։

Քաղցր է մեղր, բայց ախտաւորաց մարմնոյ վնաս առնէ. օգտակար է խրատ և յանդիմանութիւն, բայց որ զգէմն յարբեցմունս է հաստատեալ՝ նմա անօգուտ է։

## ԿԱՏԱՐԵՑԱՆ ԽՐԱՏՔՆ

# ՑԱՆԿ

